# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

վարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչնե-

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարի աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 | ՍԵՊՏԵՄԲԵՐ 1978
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քննարկեց «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի ներքո արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման գործում աշխատավորների տնտեսագիտական կրթության դերի ուժեղացման ուղղությամբ Բաշկիրիայի կուսակցական կազմակերպության աշխատանքի մասին» հարցը:**

Ընդունված որոշման մեջ նշվում է, որ Բաշկիրիայի կուսակցական կազմակերպությունները, կենսագործելով կուսակցության XXV համագումարի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի ցուցումները, բարելավել են աշխատավորների տնտեսագիտական կրթությունը: Երկու տարվա ընթացքում ուսուցման տարբեր ձևերում բանվորների, կոլտնտեսականների, մասնագետների ավելի քան կեսն ուսումնասիրել են կուսակցության տնտեսական թեորիան և ստրատեգիան, ՍՄԿԿ XXV համագումարի, Կենտկոմի պլենումների փաստաթղթերը, ՍՍՀՄ Սահմանադրությունը, էկոնոմիկայի և կառավարման հարցերը, առաջավոր արտադրական փորձը:

Հանրապետության աշխատավորների տնտեսագիտական կրթության կազմակերպման ասպարեզում ստեղծագործաբար կիրառվում է Մոսկվայի, Լենինգրադի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, ինչպես և Սվերդլովսկի, Ռոստովի, Չելյաբինսկի ու Իվանովոյի մարզերի փորձը: Կուսակցական կոմիտեներին կոնկրետ օգնություն են ցույց տալիս ՍՍՀՄ նավթամշակման ու նավթաքիմիկան արդյունաբերության, ճանապարհային հաղորդակցության, գունավոր մետալուրգիայի մինիստրությունները:

Տնտեսագիտական ուսուցումը կարևոր դեր է խաղում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման համար մղվող պայքարում, նպաստում է մրցության լայն ծավալմանը, ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակում առաջադրված խնդիրների իրականացմանը: Հիմնական ցուցանիշներով հաջողությամբ կատարված են հնգամյակի 2,5 տարվա առաջադրանքները: Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 17,6 տոկոսով: Պլանից ավելի տրվել է 350 միլիոն ռուբլու արտադրանք, ավելացել է որականիշով ապրանքների թողարկումը: Աճել են գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու գնումները: Էկոնոմիկան ուսումնասիրող աշխատողները լավագույն արդյունքների են հասնում աշխատանքում, ակտիվորեն մասնակցում են արտադրության կառավարմանը, գիտատեխնիկական ստեղծագործությանը, հասարակական կյանքին:

Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտկոմը շեշտում է, որ կուսակցական կազմակերպությունները դեռևս լրիվ չափով չեն օգտագործում տնտեսագիտական կրթության հնարավորությունները տնտեսական և դաստիարակչական աշխատանքի բարելավման համար: Բանվորների, կոլտնտեսականների և մասնագետների, հատկապես երիտասարդների, նշանակալի մասը չունի անհրաժեշտ տնտեսագիտական պատրաստություն: Ոչ քիչ թվով ղեկավար աշխատողներ

թույլ են զբաղվում տնտեսագիտական աշխատանքով, սիստեմատիկաբար չեն համալրում իրենց տնտեսագիտական և մասնագիտական գիտելիքները, մի բան, որ իջեցնում է կոլեկտիվների գործունեության արդյունքները: Շատ ձեռնարկություններ ու միավորումներ չեն կատարում նոմենկլատուրայի և արտադրանքի ինքնարժեքի իջեցման գծով արտադրության պլանները: Կոլտնտեսություններում և սովխոզներում դանդաղ են բարձրանում բերքատվությունը, անասնաբուծության մթերատվությունը:

Դպրոցներում և սեմինարներում պարապմունքները հաճախ անցնում են ցածր մակարդակով, կտրված արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման հրատապ պրոբլեմներից: Թույլ են հաշվի առնվում կոլեկտիվների կոնկրետ խնդիրները, տարբեր կատեգորիաների աշխատավորների, ժողովրդական տնտեսության ճյուղերի աշխատանքի առանձնահատկությունները:

Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական շատ կոմիտեներ, տնտեսական մարմիններ հարկ եղած ուշադրությունը չեն հատկացնում կադրերի տնտեսագիտական կրթությանը, քիչ են հոգում պրոպագանդիստների աշխատանքի համար անհրաժեշտ պայմանների ստեղծման մասին, չեն ապահովում նրանց վերլուծական նյութերով, պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի վերաբերյալ տվյալներով: Ունկընդիրների առաջարկները հաճախ քննարկվում են ձևականորեն: Մասնագետներին ղեկավար աշխատանքի առաջ քաշելիս, բանվորներին և կոլտնտեսականներին մասնագիտական կարգ շնորհելիս ոչ միշտ է հաշվի առնվում տնտեսագիտական պատրաստության մակարդակը:

Նշելով կոմունիստական շինարարության գործում աշխատավորների տնտեսագիտական կրթության աճող նշանակությունը, ՍՄԿԿ Կենտկոմը ՍՄԿԿ Բաշկիրիայի մարզկոմին, քաղկոմներին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին պարտավորեցրեց վերացնել տնտեսագիտական կրթության ասպարեզում եղած թերությունները, բարձրացնել նրա դերը կուսակցության XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1977 թ.) և հուլիսյան (1978 թ.) պլենումների որոշումների կենսագործման, էկոնոմիկայի համակողմանի վերելքի, արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության, կապիտալ շինարարության արդյունավետության, ողջ աշխատանքի որակի համար մղվող պայքարում:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին առաջարկված է ուժեղացնել կադրերի տնտեսագիտական պատրաստության ղեկավարումը, մշակել և իրագործել աշխատավորների, հատկապես երիտասարդության տնտեսագիտական կրթության և դաստիարակության հետագա բարելավմանն ուղղված միջոցառումներ: Բարձրացնել արհմիութենական և կոմերիտական կոմիտեների, մինիստրությունների ու գերատեսչությունների, տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը տնտեսագիտական ուսման կազմակերպման և որակի, տնտեսագիտական կրթության խորհուրդների աշխատանքի համար: Անշեղորեն ղեկավարվել ընկ. Լ. Ի. Բրեժնևի ցուցումով այն մասին, որ կուսակցության՝ արդյունավետության ու որակի կուրսը ո՛չ միայն ընթացիկ հնգամյակի վճռական խնդիրն է, այլև առաջիկա շատ տարիների մեր տնտեսական ու սոցիալական զարգացման որոշիչ գործոնը, սովետական մարդկանց մի ամբողջ սերնդի դաստիարակության ծրագիրը:

Տնտեսագիտական կրթությունը պետք է նպաստի սովետական յուրաքանչյուր մարդու մոտ բարձր գաղափարայնության, երկրի տիրոջ զգացման, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ձևավորմանը, պլանային կարգապահության ամրապնդմանը, արտադրության կառավարման կատարելագործմանը: Տնտեսագիտական կրթությունը, ինչպես և կոմունիստական դաստիարակության ողջ համակարգը, կոչված է ծառայելու պատմական խնդրի լուծմանը՝ զարգացած սոցիալիզմի հնարավորությունների լիակատար իրականացմանը:



Արդյունավետության ու որակի ակտիվ մարտիկ լինելու համար անհրաժեշտ է համառորեն ու խորապես տիրապետել տնտեսագիտական գիտելիքներին, բարձրացնել պրոֆեսիոնալ վարպետությունը: Տնտեսագիտական ուսման մեջ, արդյունավետության ու որակի համար մղվող պայքարում օրինակ պետք է ցույց տան կոմունիստները, արտադրության բոլոր օղակների ղեկավարները:

ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կոմիտեներից, տնտեսական մարմիններից պահանջեց հասնել կադրերի տնտեսագիտական ուսուցման տեսական ու մեթոդական մակարդակի բարձրացմանը, մարքսիզմ-լենինիզմի կլասիկների ստեղծագործությունների, կուսակցության որոշումների, ընկ. Լ. Ի. Բրեժնևի աշխատությունների խոր ուսումնասիրմանը, առավել լրիվ ու վառ բացահայտել սոցիալիզմի առավելությունները, սովետական մարդկանց սահմանադրական իրավունքներն ու պարտականությունները, ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական խնդիրները:

Խնդիր է դրված ուժեղացնել տնտեսագիտական կրթության գործնական նպատակամղվածությունը, հատուկ ուշադրություն դարձնելով տնտեսական հաշվարկի, հիմնական ֆոնդերի, նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, ինքնարժեքի իջեցման հարցերի ուսումնասիրմանը, տնտեսության ինտենսիվ զարգացման այդ լծակների տիրապետմանը:

Ունկնդիրների մոտ զարգացնել կոնկրետ տնտեսագիտական մտածողություն, սոցիալիստական սեփականության նկատմամբ հոգատար վերաբերմունք, թերությունների հանդեպ անհանդուրժողականություն, ստացած գիտելիքները յուրաքանչյուր բանվորական տեղում աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի որակի բարձրացման համար մղվող պայքարում կիրառելու կարողություն: Ստեղծագործաբար ուսումնասիրել ՍՄԿԿ Կենտկոմի հավանությանն արժանացած արտադրության նորարարների, աշխատանքային կոլեկտիվների աշխատանքի փորձը: Տնտեսագիտական ուսուցումը օրգանապես շաղկապել կյանքի հետ, տասներորդ հնգամյակի ավարտական փուլում աշխատանքային կոլեկտիվների խնդիրների հետ:

ՍՍՀՄ գիտության և տեխնիկայի պետական կոմիտեին, աշխպետկոմիտեին հանձնարարված է ՀԱՄԿԽ-ի հետ միասին արագացնել առաջավոր արտադրական փորձը պլանաչափորեն հայտնաբերելու, ուսումնասիրելու և ներդնելու վերաբերյալ համակարգի ստեղծման մեթոդիկաների մշակումը:

Կուսակցական կոմիտեները կոչված են ավելի մեծ ուշադրություն հատկացնելու տնտեսագիտական գիտելիքների պրոպագանդիստների ընտրությանը, ուսուցմանն ու դաստիարակությանը, ամրապնդելու նրանց կազմը որակյալ մասնագետների, տնտեսական ծառայությունների աշխատողների, արտադրության ղեկավարների հաշվին: Կազմակերպել պրոպագանդիստական կադրերի ռեզերվի ուսուցումը շրջանային ու քաղաքային դպրոցներում, մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում, հասարակական մասնագիտությունների ֆակուլտետներում, որակավորման բարձրացման ինստիտուտներում:

Մինիստրություններին ու գերատեսչություններին, տնտեսական ղեկավարներին՝ բարելավել կադրերի տնտեսագիտական ուսուցման կազմակերպումը և ուժեղացնել հսկողությունը, բարենպաստ պայմաններ ապահովել պրոպագանդիստների ստեղծագործական աշխատանքի համար: Ստեղծել տնտեսագիտական գիտելիքների կաբինետներ, սարքավորել դրանք տեխնիկական միջոցներով ու զննական պիտույքներով, տեղեկատու նյութերով: Յուրաքանչյուր կոլեկտիվում կարգավորել տնտեսական գործունեությունը կատարելագործելու ուղղությամբ ունկնդիրների առաջարկությունների, քննադատական դիտողությունների վերլուծությունն ու կենսագործումը:

ՍՍՀՄ լուսավորության մինիստրությանը, ՍՍՀՄ պրոֆտեխկրթության կոմիտեին, ՍՍՀՄ բարձրագույն կրթության մինիստրությանն առաջարկված է բարելավել սովորողների, երիտասարդ բանվորների ու մասնագետների

տնտեսագիտական պատրաստությունը, ՀԱՄԿԻՍ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի հետ միասին ապահովել երիտասարդության տնտեսագիտական կրթության ու դաստիարակության հաջորդականությունն ու անընդհատությունը:

Նախատեսվում է պատրաստել կուսակցության տնտեսական քաղաքականության, ագրարային տեսության ու քաղաքականության, գիտատեխնիկական առաջընթացի պրոբլեմների, տնտեսավարման սոցիալիստական մեթոդների կատարելագործման վերաբերյալ ուսումնական նոր դասընթացներ:

ՍՍՀՄ հրատպետկոմիտեին, քաղհրատին, «Պրավդա» և «Պլակատ» հրատարակչություններին հանձնարարված է ընդլայնել ուսումնական, մեթոդական ու զննական ձեռնարկների, կուսակցության տնտեսական քաղաքականության հրատապ հարցերի, արտադրության առաջավորների փորձի վերաբերյալ գրքերի ու բրոշյուրների հրատարակումը: «Էկոնոմիչեսկայա գազետայի» խմբագրությանը՝ ուժեղացնել մեթոդական օգնությունը, ընդհանրացնել և տարածել տնտեսագիտական կրթության լավագույն փորձը:

ՍՍՀՄ պետկինոյին հանձնարարված է տնտեսագիտական կրթության սիստեմի համար կազմակերպել ուսումնական ֆիլմերի արտադրություն: Ավելացնել սոցիալիստական մրցության ծավալման, տնտեսավարման, աշխատանքի ու արտադրության կազմակերպման, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման առաջավոր փորձի վերաբերյալ փաստագրական և գիտամասսայական կինոնկարների թողարկումը, բարելավել դրանց բովանդակությունը:

Թերթերի ու ամսագրերի խմբագրություններին, ՍՍՀՄ հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների պետական կոմիտեին, «Գիտելիք» համամիութենական ընկերությանը հանձնարարված է ավելի մեծ ուշադրություն հատկացնել աշխատավորների տնտեսագիտական կրթության ու դաստիարակության հարցերին, վառ ու խոր բացահայտել կուսակցության տնտեսական ստրատեգիան, տնտեսագիտական ուսուցման կազմակերպման փորձը, նրա դերը հնգամյակի կատարման, բարձր արդյունավետության ու որակի համար մղվող համաժողովրդական պայքարում:

---

# ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿՈՎ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ

*ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ կազմակերպություններում անցկացվում են հաշվետու-ընտրական ժողովներ: Դրանք չափազանց կարևոր իրադարձություն են ո՛չ միայն կուսակցական կազմակերպությունների, այլև արտադրական կոլեկտիվների, ողջ կուսակցության կյանքում: Կոմունիստները հանրագումարի են բերում հաշվետու ժամանակաշրջանում կուսկազմակերպությունների, նրանց կոմիտեների, բյուրոների ու քարտուղարների ծավալած գործունեության արդյունքները, համակողմանի վերլուծում արտադրության նկատմամբ կուսակցական ղեկավարության, քաղաքական-գաղափարական և կուսակցական-կազմակերպական աշխատանքի հարցերը, որոշում իրենց հետագա անելիքները:*

*Հաշվետու-ընտրական ժողովների անցկացումը քաղաքական այնպիսի նշանակալից կամպանիա է, որը բարերար ազդեցություն է թողնում սկզբնական կուսկազմակերպությունների, հիմնարկ-ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների, ուսումնական հաստատությունների և ընդհանրապես աշխատավորական բոլոր մեծ ու փոքր կոլեկտիվների ողջ գործունեության վրա, նպաստում նրանց հաջողությունների ամրապնդմանը, կոմունիստների, բոլոր աշխատավորների ստեղծագործական ու քաղաքական ակտիվության բարձրացմանը:*

*Համակողմանի նախապատրաստված ու քաղաքական բարձր մակարդակով անցկացված հաշվետու-ընտրական ժողովն օգնում է պարզելու կուսկազմակերպության, նրա կոմիտեի կամ բյուրոյի վրիպումները, արտադրական կոլեկտիվի թերություններն ու թերացումները, ընդհանրացնելու ամբողջ ուսանելին ու լավը, որ կուտակվել է հաշվետու ժամանակաշրջանում:*

*Հաշվետու-ընտրական ժողովների կամպանիան արդյունավետ կլինի այն դեպքում, երբ դրա նախապատրաստման ու անցկացման ընթացքում լիովին հաշվի առնվեն տվյալ ժամանակաշրջանի առանձնահատկություններն ու դրանցից բխող խնդիրները: Ընթացիկ տարվա հաշվետու-ընտրական ժողովների յուրահատկությունն այն է, որ դրանց անմիջապես հաջորդելու են կուսակցության քաղաքային ու շրջանային կազմակերպությունների կոնֆերանսները: Իսկ մինչև այդ ժողովների անցկացումը կուսկազմակերպությունները քննարկում են գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները: Այս կարևոր ու հույժ պատասխանատու կամպանիայի անցկացման օրերին տեղի կունենա հայ ժողովրդի համար բախտորոշ նշանակություն ունեցող մի խոշոր իրադարձության՝ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակի հանդիսությունը:*

*Հետևաբար, կուսակցական հաշվետու-ընտրական ժողովները միաժամանակ պետք է նպաստեն այդ միջոցառումների կազմակերպված, քաղաքական-գաղափարական բարձր մակարդակով անցկացմանը, նոր լիցք հաղորդեն կոմունիստներին, արտադրական ձեռնարկություններում ու հանրային դաշտերում*

նյութական բարիքներ արարող մարդկանց համակած աշխատանքային ու քաղաքական խանդավառությանը, օգնեն տասներորդ հնգամյակի երրորդ՝ հարվածային տարվա խնդիրների անթերի լուծմանը, մեր երկրի տնտեսական ու սոցիալ-կուլտուրական զարգացման վերաբերյալ կուսակցության XXV համագումարի հոյակապ կանխագծումների իրականացմանը։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները, հատկապես վերջին տարիներին, անցնում են կազմակերպական, քաղաքական-գաղափարական բարձր մակարդակով, կոմունիստների բարձր ակտիվության պայմաններում։ Դա, անշուշտ, էապես նպաստել է կուսկազմակերպությունների մարտունակության աճին, ժողովրդատնտեսական կարևոր խնդիրների լուծմանը, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում նրանց դերի առավել բարձրացմանը, էկոնոմիկայի բոլոր ճյուղերում լավագույն արդյունքների ապահովմանը։ Այս ամենի համոզիչ վկայությունը, անտարակույս, այն է, որ մեր հանրապետությունը վերջին երկու տարում արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Միութենական փոխանցիկ դրոշներ նվաճեցին նաև առաջավոր շատ ձեռնարկություններ, տնտեսություններ ու հիմնարկություններ։ Մեր հաջողությունները միաժամանակ վկայում են, որ կուսկազմակերպությունները, ղեկավարվելով կուսակցության որոշումներով և հետևողականորեն իրականացնելով հաշվետու-ընտրական ժողովներում մշակված միջոցառումները, կարողացել են մոբիլիզացնել աշխատավորների ստեղծագործական ուժերը, նրանց ջանքերն ուղղել հանրային արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացմանը։

Կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների գլխավոր խնդիրներից մեկը էկոնոմիկայի հարցերի համակողմանի քննարկումն է։ Դա չի նշանակում, սակայն, թե կուսակցական կոմիտեն կամ բյուրոն իր հաշվետվությամբ պետք է ժողովականներին իրազեկ պահի արտադրական հաջողություններն ու թերություններն արտացոլող թվերին, հրապարակի պետական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման արդյունքները։ Ինչ խոսք, դա ևս անհրաժեշտ է։ Խնդիրն այն է, որ հաշվետվություններում տրվի արտադրական հաջողությունների ու թերությունների խոր վերլուծությունը, պարզաբանվի, թե կուսկազմակերպությունները, նրանց կոմիտեներն ու բյուրոները ինչպես են իրականացրել արտադրության ղեկավարման, ադմինիստրացիայի նկատմամբ վերահսկողության իրենց ֆունկցիաները, կոմունիստներից, ղեկավար կադրերից յուրաքանչյուրն ինչպիսի ներդրում է արել պլանների ու պարտավորությունների կատարման գործում, ինչպես է ղեկավարել իրեն վստահված տեղամասի գործերը։

Ըստ արժանվույն գնահատելով հանրապետության կուսակցական կազմակերպությունների, աշխատավորության անձնվեր աշխատանքը տասներորդ հնգամյակի երկրորդ տարվա պլանային առաջադրանքների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը նրանց ուշադրությունը հրավիրում է գոյություն ունեցող թերությունների ու վրիպումների շուտափույթ վերացման անհրաժեշտության վրա։ Այդպիսիք, ցավոք, դեռևս քիչ չեն։ Ամենուր չէ, որ նպատակային աշխատանք է տարվում հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի ու արտադրանքի որակի բարձրացման համար, ոչ բոլոր աշխատանքային կոլեկտիվներում է համակողմանի պայքար ծավալվում պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները բոլոր ցուցանիշներով կատարելու նպատակով։ Արդյունաբերական մի շարք ձեռնարկությունների, կառույցների, կոլեկտիվ ու պետական տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպությունները թույլ են ներգործում արտադրության վրա, խորամուխ չեն լինում տնտեսական խնդիրների մեջ, հաշտվում են պետական պլանների ձախողումների, անտնտեսավարության ու ցածրորակ արտադրանքի թողարկման փաստերի հետ։

Կուսակցության շրջանային ու քաղաքային կոմիտեների անհետաձգելի



խնդիրն է՝ ուշադրությունը սևեռել հատկապես պլանային առաջադրանքները սիստեմատիկաբար թերակատարող ձեռնարկությունների, կառույցների, կոլեկտիվ ու պետական տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստման ու անցկացման վրա։ Շատ ցանկալի է, որպեսզի այդ ժողովներին մասնակցեն նաև հանրապետական ղեկավար մարմինների, կուսակցության քաղկոմ-շրջկոմների, քաղաքային ու շրջանային սովետների պատասխանատու աշխատողները, օգնեն կոմունիստներին՝ ՍՄԿԿ XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1977 թ.) և հուլիսյան (1978 թ.) պլենումների, Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի և ՀԿԿ Կենտկոմի վերջին պլենումների որոշումների լույսի ներքո վերհանելու պլանները թերակատարելու և ետ մնալու պատճառները, նշելու արտադրության ռեզերվներն ու հնարավորություններն արդյունավետ օգտագործելու ուղիները, որոշելու արդյունավետության ու որակի հնգամյակի խնդիրները լուծելու միջոցները։ Այդ կազմակերպությունների ժողովներում շեշտը պետք է դնել արտադրության նկատմամբ կուսակցական ղեկավարության ձևերի ու եղանակների կատարելագործման, նրանց մարտունակության առավել բարձրացման վրա, այն հաշվով, որ արտադրությանն առնչվող ոչ մի փոքր ու մեծ խնդիր դուրս չմնա կուսկազմակերպության տեսադաշտից, կոմունիստները բարձր ակտիվությամբ զբաղվեն էկոնոմիկայի բոլոր ճյուղերի վերելքի հարցերով։

Շինարարությանն առնչվող սկզբնական կուսկազմակերպությունների պարտքն է հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստների և բոլոր աշխատավորների ուշադրությունը սևեռել ժողովրդատնտեսական կարևոր կառույցները ժամանակին շահագործման հանձնելու, շինարարության որակն արմատապես բարելավելու վրա։

Զարգացման որակական նոր փուլ է թևակոխել գյուղատնտեսությունը։ ՍՄԿԿ XXV համագումարի կանխագծումները, «Միջտնտեսային կոոպերացման ու ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու կենտրոնացման հետագա զարգացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումը լայն հեռանկարներ են բացել գյուղատնտեսությունը արդյունաբերական հիմքի վրա տեղափոխելու համար։ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումը, քննարկելով գյուղատնտեսության հետագա զարգացման հարցը, գլխավոր խնդիրը համարեց էկոնոմիկայի այդ սեկտորի բոլոր ճյուղերի համակողմանի, դինամիկ զարգացումը և դրանց արդյունավետության զգալի բարձրացումը, պարենամթերքի և գյուղատնտեսական հումքի հուսալի մատակարարումը երկրին, այն հաշվով, որ ապահովվի ժողովրդի կենսամակարդակի հետագա աճը։ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումը նոր, վճռական ազդակ կհանդիսանա կուսակցության XXV համագումարի մեծ կանխագծումների իրականացման, հանրապետության գյուղատնտեսության հետագա առաջընթացի համար։

Գյուղի կուսակցական կազմակերպությունները, նախապատրաստելով ու անցկացնելով հաշվետու-ընտրական ժողովները, պարտավոր են ողջ ուշադրությունը բևեռել գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի և Կենտկոմի պլենումների առաջադրած խնդիրներին, իրենց գործունեությունը վերլուծել ու գնահատել դրանց լույսի ներքո, կազմակերպական ու քաղաքական-դաստիարակչական ողջ աշխատանքը նպատակամղել այդ խնդիրների լուծմանը։

Հարկավոր է հաշվետու զեկուցումներում համակողմանի ցույց տալ, թե կուսկազմակերպությունն ինչպես է վերակառուցել իր գործունեությունը կուսակցության առաջադրած նոր խնդիրներին համապատասխան, բացահայտել այդ գործում տեղ գտած բոլոր այն թերությունները, որոնք խոչընդոտում են գյուղատնտեսության արագ վերելքը։

Լուրջ խնդիրներ են ծառացած տրանսպորտի, սպասարկման ոլորտի ձեռնարկությունների առջև։ Չնայած որ վերջին ժամանակներս այդ բնագավառում կատարվել են որոշակի դրական տեղաշարժեր, այնուամենայնիվ, դեռևս կան

չլուծված շատ հարցեր. առանձին տեղերում ցածր է սպասարկման կուլտուրան, տրանսպորտը գործում է խափանումներով, առևտրի ցանցում նկատվում են չարաշահումներ։ Հաշվետու-ընտրական ժողովներում մեծ տեղ պետք է հատկացնել այդ հարցերի արծարծմանը, ցույց տալ, թե կուսկազմակերպություններն ինչպես են զբաղվում դրանց լուծմամբ՝ առանձնահատուկ ուշադրություն նվիրելով հատկապես կադրերի պատրաստմանն ու նրանց շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի բարելավմանը։ Առևտրի և հասարակական սննդի ձեռնարկությունների կուսակցական կազմակերպություններն իրենց գործունեությունը պետք է վերլուծեն «Առևտրի զարգացման հետագա միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջներից ելնելով։

Լուրջ անելիքներ ունեն մինիստրությունների, գերատեսչությունների, տեղական սովետների սկզբնական կուսկազմակերպությունների կոմունիստները։ Կուսակցության ու կառավարության դիրեկտիվների կատարման, սովետական օրենքների պահպանման շահերը պահանջում են հետևողականորեն իրականացնել ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ այդ կուսկազմակերպությունների վերահսկողության իրավունքը, կատարելագործել ապարատի աշխատանքը, կադրերին դաստիարակել հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության ոգով։ Ուսումնասիրությունները, սակայն, ցույց են տալիս, որ ոչ բոլոր մինիստրությունների ու գերատեսչությունների, սովետների ու տնտեսական հիմնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններն են լիովին օգտագործում ապարատի աշխատանքի կատարելագործման վրա ներազդեցության իրենց բոլոր հնարավորությունները։ Կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները կոչված են կոմունիստների ուժերը նպատակամղելու ապարատի աշխատանքի բարելավմանը, նրա կառուցվածքի կատարելագործմանը, պետական պլանային կարգապահության ամրապնդմանը, բյուրոկրատիզմի և քաշքշուկի դրսևորումների դեմ պայքարի ուժեղացմանը։ Ապարատի աշխատանքի ոճի կատարելագործման ու հստակության ապահովման, կուսակցության ու կառավարության առաջադրած խնդիրների օպերատիվ լուծման, աշխատավորության պահանջների ու կարիքների բավարարման հանդեպ հոգատար վերաբերմունքի, պլանային առաջադրանքների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում ձեռնարկություններին գործնական օգնություն ցույց տալու և մյուս հրատապ հարցերը պետք է համակողմանի քննարկվեն նշված կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում։

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում, ՀԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումի որոշման ոգով, անհրաժեշտ է առանձնահատուկ խորությամբ վերլուծել կոմունիստների, աշխատավորության շրջանում տարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքի վիճակը, այդ ասպարեզում կուտակված դրական փորձը, մշակել գործնական միջոցառումներ՝ գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության հարցերի կոմպլեքսային լուծման վերաբերյալ կուսակցության XXV համագումարի պահանջի կատարման առումով։ Հարկ է առանձնահատուկ ուշադրություն նվիրել սոցիալիստական սեփականության պահպանությանը, հասարակական կյանքի և օրինականության խախտումների դեմ պայքարի հետագա ուժեղացմանը։

Մասսաների շրջանում տարվող կազմակերպական ու գաղափարական աշխատանքի մակարդակը մեծ չափով պայմանավորված է նրանով, թե ինչպես է ամեն մի կոմունիստ մասնակցում իր կազմակերպության գործունեությանը, ինչպես է կատարում ՍՄԿԿ Կանոնադրության պահանջները, ինչպիսի սկզբունքայնություն է հանդես բերում թերությունների նկատմամբ։ Հետևաբար, հաշվետու-ընտրական ժողովներում անհրաժեշտ է համակողմանի վերլուծել այդ խնդիրներին առնչվող գործերի վիճակը, բարձր պահանջկոտություն հանդես բերել ո՛չ միայն ղեկավար կադրերի, այլև անխտիր բոլոր կոմունիստների նկատմամբ, հասնել այն բանին, որպեսզի նրանցից յուրաքանչյուրը մշտապես



զգա իր բարձր պատասխանատվությունը կոլեկտիվի, ողջ կուսակցության գործի համար։ Հաշվետու-ընտրական ժողովներում ամենայն սրությամբ պետք է գործնական խոսակցություն ծավալել կուսակցական ու պետական կարգապահության հետագա ամրապնդման անհրաժեշտության շուրջ։ Հարկ է չմոռանալ, որ առաջադրված տնտեսական ու սոցիալ-քաղաքական մեծ մասշտաբի խնդիրների հաջող իրագործումը սերտորեն շաղկապվում է աշխատանքային յուրաքանչյուր տեղամասում կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման հետ։

Սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մեջ վճռական տեղ ունի կուսակցության շարքերի աճի և նրա հետագա ամրապնդման խնդիրը։ Այս ասպարեզում գործերի հետագա բարելավման համար էական դեր խաղաց Կիրգիզիայի կուսակցական կազմակերպության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումը։ Հանրապետության սկզբնական կուսկազմակերպությունները, քաղկոմ-շրջկոմները, ղեկավարվելով այդ որոշմամբ և ՍՄԿԿ XXV համագումարի ցուցումներով, զգալիորեն բարելավել են կուսակցության շարքերի որակական կազմը, երիտասարդ կոմունիստների շրջանում տարվող աշխատանքը։

Սակայն, ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, այս գործում ևս բավական թերություններ ու վրիպումներ կան։ Առանձին շրջաններում դեռևս դանդաղ է կարգավորվում կուսակցության շարքերի որակական կազմը։ Չնայած ընդունելության ընդհանուր ցուցանիշների որոշակի բարելավմանը, Ախուրյանի, Աշտարակի, Մեղրու, Սիսիանի և մի շարք այլ գյուղական շրջաններում, մեխանիզատորական կադրերի ընդհանուր աճի պայմաններում, վերջին տարիներին կրճատվել է մեխանիզատոր-կոմունիստների թիվը։ Շահումյանի, Իջևանի, Թալինի և այլ շրջաններում դեռևս անբավարար ուշադրություն է նվիրվում կուսակցության մեջ կանանց ընդունելության հարցերին։ Մեզ չի կարող չմտահոգել այն փաստը, երբ 1976 թ. ՍՄԿԿ անդամության թեկնածուների երկու տոկոսը չի ընդունվել կուսակցության շարքերը որպես անդամ՝ քաղաքականապես անպատրաստ լինելու, թեկնածուական ժամկետում իրեն չարդարացնելու պատճառով։ Անհրաժեշտ է հաշվետու զեկուցումների պատրաստման և ժողովների անցկացման ժամանակ խորամուխ լինել այն բանում, թե տվյալ կուսկազմակերպությունում ՍՄԿԿ շարքերի ընդունելության գործի դրվածքը, կիրառվող պրակտիկան որքանով է համապատասխանում ՍՄԿԿ XXV համագումարի և Կիրգիզիայի կուսակցական կազմակերպության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջներին, ինչպես են իրականացվում այդ նպատակով մշակված միջոցառումները։

Հաշվետու-ընտրական ժողովի բարձր մակարդակի չափանիշներից մեկը նրա քննադատական ու ինքնաքննադատական ոգին է, թերությունների ու թերացումների անաչառ, համակողմանի բացահայտումը։ Տամբովի մարզի կուսկազմակերպությունում քննադատության ու ինքնաքննադատության ծավալման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումից հետո մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունների ժողովներում (առավել ևս՝ հաշվետու-ընտրական) լավ, անկաշկանդ մթնոլորտ է ստեղծվել քննադատությունն ու ինքնաքննադատությունը լայնորեն ծավալելու համար։ Հատկանշական է, որ կոմունիստները, ելնելով գործի շահերից, ավելի անկաշկանդ, սկզբունքային դիրքերից են արտահայտում իրենց նկատառումները, խելացի դիտողություններով օգնում կուսկազմակերպությունների գործունեության բարելավմանը։

Հետևաբար, հաշվետու-ընտրական ժողովը բարձր մակարդակով անցկացնելու համար, անհրաժեշտ է ամենից առաջ կոլեկտիվում ստեղծել սկզբունքայնության ու ակտիվության այնպիսի առողջ մթնոլորտ, որ կոմունիստները կարողանան անկաշկանդ խոսել գործերի վիճակի մասին, լայնորեն ծավալել

քննադատությունն ու ինքնաքննադատությունը, անել խելացի, գործնական
առաջարկություններ։ Իսկ դրա համար պետք է առաջին հերթին հոգ տանել
հաշվետու զեկուցումների բարձր մակարդակի ապահովման մասին, ձգտել, որ
դրանք համակողմանի ու օբյեկտիվ կերպով տան կուսկոմիտեի ու բյուրոյի գոր-
ծունեության ամբողջական պատկերը, տոգորված լինեն քննադատության և
ինքնաքննադատության ոգով։ Իսկ դրանով, ինչպես ցույց է տալիս փորձը, մեծ
չափով պայմանավորված է ելույթների բնույթը։ Զեկուցումից պետք է պարզո-
րոշ երևա, թե ինչպես են լուծվում սոցիալ-տնտեսական և քաղաքական խնդիր-
ները աշխատավորական կոլեկտիվում, ինչպիսի թերություններ կան և որոնք
են դրանց պատճառները, ինչի վրա պետք է կենտրոնացնի հետագայում կուս-
կազմակերպությունն իր հիմնական ուշադրությունը։
Այլ խոսքով, անհրաժեշտ է հաշվետու-ընտրական ժողովներում ստեղծել
քննադատության և ինքնաքննադատության ծավալման պատշաճ մթնոլորտ,
արմատապես բարելավել քննադատական դիտողություններին ու առաջարկու-
թյուններին ընթացք տալու գործը, կարգ ու կանոն սահմանել դրանում և ամեն
կերպ ամրապնդել կոմունիստների հավատն ընդունված որոշումների հանդեպ։
Կոմունիստը պետք է զգա, որ իր քննադատական խոսքը, իր ճիշտ դիտողու-
թյունն ու խելացի առաջարկությունն արձագանք է ստանում, տեղական ու հան-
րապետական մարմիններն ընթացք են տալիս դրանց։ Այս ամենը, անտարա-
կույս, նոր լիցք կհաղորդի քննադատության և ինքնաքննադատության հետագա
ծավալմանն ու զարգացմանը, որը և մեր կուսակցության պահանջն է, կուս-
կազմակերպությունների գլխավոր խնդիրներից մեկը։
Կոլեկտիվում քաղաքական ղեկավարի դերը յուրաքանչյուր սկզբնական
կուսկազմակերպություն առավել հաջող է կատարում այն դեպքում, երբ ա-
ռանձնահատուկ հոգատարություն է ցուցաբերում արհմիութենական, կոմերի-
տական և հասարակական մյուս կազմակերպությունների գործունեության բա-
րելավման նկատմամբ, իր բազմակողմանի օգնությամբ նպաստում նրանց
ակտիվության բարձրացմանն ու նախաձեռնության զարգացմանը։ Ուստի, շատ
կարևոր է հաշվետու-ընտրական ժողովներում ընդհանրացնել հասարակական
կազմակերպությունների նկատմամբ կուսակցական ղեկավարության պրակ-
տիկան, պարզել այդ գործում եղած թերացումները, կոմունիստների ուշադրու-
թյունը սևեռել դրանց ցույց տրվող համակողմանի օգնության անհրաժեշտու-
թյան վրա։
Հայտնի է, որ հաշվետու-ընտրական ժողովների անբավարար նախապատ-
րաստման, այդ գործում դրսևորվող հապճեպության ու ձևական մոտեցման
պատճառով դրանք անցնում են դժգույն, կազմակերպական-քաղաքական ցածր
մակարդակով և, բնականաբար, խոր հետք չեն թողնում կուսկազմակերպու-
թյան, կոմունիստների կյանքում։ Այս իրողությունը հաստատում է նաև անցած
հաշվետու-ընտրական կամպանիան հանրապետության սկզբնական կուսկազ-
մակերպություններում։ Ահա մի բնորոշ օրինակ։ Իջևանի № 17 թունելային
ջոկատի սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում
կուսբյուրոյի հաշվետվությունը տևել է... ընդամենը 10 րոպե։ Հասկանալի է,
այստեղ խոսք անգամ չէր կարող լինել կոլեկտիվի, կուսկազմակերպության
գործերի վիճակի ո՛չ միայն խոր, այլև մակերեսային վերլուծության, քննադա-
տության ու ինքնաքննադատության մասին։ Կարող է թվալ, թե կոլեկտիվն ու
կուսկազմակերպությունը փոքրաթիվ են, և, հետևաբար, ասելիք չի եղել։ Ո՛չ,
բնավ. այստեղ կոլեկտիվը բաղկացած է 350 մարդուց, իսկ կուսկազմակերպու-
թյունում հաշվվում է 35 կոմունիստ։ Ինչպես տեսնում ենք, գործ ունենք միջին
մեծության կուսկազմակերպության հետ, որը չէր կարող չունենալ ուշադրու-
թյան արժանի գործեր ու հոգսեր։
Ցավոք, այս օրինակը եզակի չէ։ Նախորդ հաշվետու-ընտրական ժողովնե-



րը նման պայմաններում են անցել նաև Սևանի շրջանի Լճաշենի և Երևանի Ջա-
րենցի անվան միջնակարգ դպրոցների, Արարատի շրջանի Նոր կյանքի, Անիի
շրջանի Սարակապի կոլտնտեսային, Չարենցավանի հաստոցաշինական գոր-
ծարանի, Հրազդանի կենցաղսպասարկման կոմբինատի, Աբովյանի անվան
մանկավարժական ինստիտուտի բանասիրական ֆակուլտետի և այլ սկզբնա-
կան կուսկազմակերպություններում։
Քաղկոմ-շրջկոմները պետք է կոնկրետ միջոցներ ձեռնարկեն նախկինում
տեղ գտած այս կարգի սխալները կանխելու համար։ Հարկ է նշել, որ քաղկոմ-
շրջկոմները, հիմնական ուշադրությունը նվիրելով խոշոր կազմակերպություն-
ներին, հաճախ աչքաթող են անում սակավանդամ կուսկազմակերպություննե-
րին (իսկ դրանք կազմում են կազմակերպությունների ընդհանուր թվի մոտ 40
տոկոսը), որի հետևանքով հաշվետու-ընտրական ժողովներն անցնում են գա-
ղափարական-քաղաքական և կազմակերպական ցածր մակարդակով, չեն տա-
լիս սպասվելիք արդյունքները։ Քաղկոմ-շրջկոմները պետք է ուժեղացնեն այդ
կազմակերպություններին ցույց տրվող օգնությունը, հսկողություն սահմանեն
նրանց հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստման ու անցկացման
վրա։
Հաշվետու-ընտրական կամպանիան կուսակցության շրջանային ու քաղա-
քային կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների կապի ամրա-
պնդման լավագույն միջոց է։ Հարկավոր է շարունակել այն ավանդույթը, երբ
սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներին մասնակցում են քաղ-
կոմ-շրջկոմների անդամներն ու անդամության թեկնածուները, վերստուգիչ
հանձնաժողովների անդամները։ Գործի շահերը պահանջում են, որ նրանք ո՛չ
միայն մասնակցեն ու իրենց ելույթներում բնութագրեն տվյալ կուսկազմակեր-
պության կատարած աշխատանքը, այլև ժողովականներին իրազեկ պահեն կու-
սակցական կոմիտեի գործունեությանը, նրա նախատեսած ձեռնարկումներին։
Ի դեպ, այս ասպարեզում բավականաչափ փորձ է կուտակվել։ Անցած հաշվե-
տու-ընտրական կամպանիայի ժամանակ ավելի քան 1.400 սկզբնական կուս-
կազմակերպությունների ժողովներում ՀԿԿ Կենտկոմի գործունեության մասին
հաղորդումներով հանդես եկան Կենտկոմի 177 անդամներ, անդամության
թեկնածուներ, վերստուգիչ հանձնաժողովի անդամներ, ՀԿԿ Կենտկոմի ապա-
րատի 80 աշխատողներ։ Հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստ-
մանն ու անցկացմանը լայնորեն ներգրավվում են նաև մինիստրությունների ու
գերատեսչությունների բազմաթիվ պատասխանատու աշխատողներ։
Կուսակցության քաղկոմ-շրջկոմները պետք է ամենօրյա հսկողություն
սահմանեն ժողովների ընթացքի նկատմամբ, խստա բացառեն գրաֆիկի խախ-
տումը։ Ամեն օր անցած ժողովների արդյունքների համակողմանի ամփոփումը
հնարավորություն կընձեռի գործնական միջոցներ ձեռնարկելու եղած սխալ-
ները հաջորդ ժողովներում կանխելու համար։ Դրա համար հարկ է նաև բյու-
րոների նիստերում, ապարատների խորհրդակցություններում հաղորդումներ
լսել ժողովների ընթացքի մասին, կարևորել կոմունիստների կողմից արված
քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, ժամանակին
ամբավորել ու համապատասխան ընթացք տալ դրանց։ Պետք է ձգտել, որ ոչ
մի առաջարկություն կամ դիտողություն անուշադրության չմատնվի, գործնա-
կան լուծում ստանա։
Առաջնահերթ խնդիր է հաշվետու-ընտրական կամպանիայի լուսաբանումը
մամուլում, ռադիոյով և հեռուստատեսությամբ։ Չնայած մի անգամ չէ, որ
խոսվում է այս մասին, այնուամենայնիվ, այդ գործում վիճակը չի կարելի գո-
հացուցիչ համարել։ Մամուլը, հատկապես տեղական թերթերը, շատ մակե-
րեսային ձևով են լուսաբանում ժողովների ընթացքը։ Տպագրվող հոդվածները
ինֆորմացիոն բնույթ են կրում, չեն տալիս կազմակերպության գործունեու-

թյան խոր վերլուծությունը։ Շատ հաճախ հիմնականում լուսաբանվում են աշխատավորական կոլեկտիվների տնտեսական գործունեության այս կամ այն ուղղությունները, իսկ կազմակերպական-կուսակցական, գաղափարական-քաղաքական աշխատանքի հարցերը մնում են ստվերում։

Բարձր մակարդակով անցկացված հաշվետու-ընտրական ժողովները և ընտրությունների նկատմամբ սկզբունքային մոտեցումը մեծապես նպաստում են կուսկազմակերպությունների ղեկավար մարմինների, քարտուղարների որակական կազմի հետագա բարելավմանը։ Գաղտնիք չէ, որ կուսկազմակերպության գործունեության հաջողությունը պայմանավորված է կուսկոմիտեի, բյուրոյի, քարտուղարի խելացի և արդյունավետ աշխատանքով։ Վերջին տարիներին այդ նպատակով ՀԿԿ Կենտկոմի, քաղկոմ-շրջկոմների ձեռնարկած միջոցների շնորհիվ զգալի չափով բարելավվել է ընտրովի կուսակցական ակտիվի որակական կազմը։

Հաշվետու-ընտրական ժողովը սկզբնական կուսկազմակերպության բարձրագույն օրգանն է։ Այստեղ բազմակողմանիորեն հանրագումարի են բերվում հաշվետու-ժամանակաշրջանում կոմունիստների ծավալած գործունեության հիմնական արդյունքները, վճռվում կուսկազմակերպության համար կենսական նշանակություն ունեցող արմատական շատ հարցեր, որոշվում կուսբյուրոյի ու կուսկոմիտեի, կոմունիստների հիմնական անելիքները։ Կուսակցության քաղկոմ-շրջկոմները պետք է հետևեն, որ հաշվետու-ընտրական ժողովների մասնակիցներն այդ խնդիրներն արծարծելիս ճիշտ կողմնորոշվեն, ընդունեն ներգործուն որոշումներ կուսկազմակերպության, նրա կոմիտեի կամ բյուրոյի աշխատանքի բարելավման վերաբերյալ, կոմիտեի կամ բյուրոյի կազմում ընտրեն ակտիվ, կուսակցական աշխատանքը սիրող ու հասկացող կոմունիստների։

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներին՝ գաղափարական և կազմակերպական բարձր մակարդակ— այս նշանաբանով պետք է անցնի ամեն մի ժողով։

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ԱՆԽԱԽՏ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. Ա. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ մեծ ուշադրություն նվիրեց սոցիալիստական երկրների բարեկամության և համագործակցության հետագա ամրապնդմանը։ Համագումարը նշեց, որ ամբողջությամբ վերցրած սոցիալիստական երկրների կուսակցությունների մեծամասնության հետ ՍՄԿԿ հարաբերությունների համար բնորոշ են լիակատար միասնությունն ու բեղմնավոր համագործակցությունը։ Սոցիալիստական երկրների միասնությունն ու համախմբվածությունը հենվում են եղբայրական կուսակցությունների ընդհանուր նպատակների, փոխադարձ շահերի, համատեղ աշխատանքի և ինտերնացիոնալիստական բեղմնավոր գործունեության վրա։ Համաշխարհային սոցիալիզմի զարգացման հիմնական՝ միասնության և համախմբվածության տենդենցը, դրսևորվում է բոլոր բնագավառներում և իր կոնկրետ մարմնավորումը գտնում սոցիալիստական երկրների բազմակողմանի սերտ համագործակցության և բարեկամական, անշահախնդիր փոխօգնության մեջ։

Եղբայրական երկրների «սերտ համագործակցության հիմքերի հիմքը, նրա կենդանի ոգին և ուղղություն տվող, կազմակերպող ուժը, իհարկե, սոցիալիզմի երկրների կոմունիստական կուսակցությունների մարտական անխախտ դաշինքն է, նրանց աշխարհայացքի միասնությունը, նպատակների միասնությունը, կամքի միասնությունը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 10)։

Սոցիալիստական համագործակցության երկրների սերտ կապերը, միասնությունը և համախմբվածությունը վառ կերպով արտահայտվում են նրանց տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության, տնտեսական ինտեգրացիայի կուրսի իրականացման բնագավառում։ Այդ համագործակցությունն իրականացվում է 1971 թվականին ՍՍՀՄ-ի և ՏՓԽ անդամ մյուս երկրների ընդունած սոցիալիստական տնտեսական ինտեգրացման երկարաժամկետ կոմպլեքսային ծրագրի հիման վրա։

Ինտեգրացման կոմպլեքսային ծրագիրը հիրավի պատմական, տնտեսական և քաղաքական մեծ նշանակություն ունեցող աննախադեպ մի փաստաթուղթ է, որը, ելնելով սոցիալիստական երկրների տնտեսական կապերի և համագործակցության կուտակված արժեքավոր փորձից, որակական նոր աստիճանի է բարձրացնում այդ համագործակցությունը։ Այն դարձել է այդ երկրների տնտեսական և գիտատեխնիկական կապերի գլխավոր բովանդակությունը, հիմնական մայրուղին։

Այդ ծրագիրը, ինչպես նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, սոցիալիստական երկրների համագործակցությունը հասցնում է նոր, շատ ավելի բարձր աստիճանի, քան պարզապես առևտրի զարգացումը։ Այն նշանակում է, օրինակ,

բնական ռեսուրսների համատեղ յուրացում, արդյունաբերական խոշոր կոմպլեքսների շինարարություն, միջպետական կազմակերպությունների լայն ցանցի ստեղծում, համագործակցության երկրների ձեռնարկությունների և արդյունաբերության ամբողջ ճյուղերի պլանավորված կոոպերացում և այլն։

ՏՓԽ-ի ամենամյա նստաշրջանները ցույց են տալիս, որ եղբայրական երկրների համագործակցության և տնտեսական ինտեգրացիայի զարգացման կոմպլեքսային ծրագիրը հաջողությամբ իրականացվում է։ 1976 թվականի ամռանը ՏՓԽ-ի 30-րդ նստաշրջանում ընդունվեց կարևոր որոշում՝ երկարաժամկետ նպատակային ծրագրերի մասին, որի հիմնական խնդիրն է ընդհանուր ջանքերով ապահովել էներգիայի, վառելիքի, հումքի հիմնական տեսակների արագ աճող պահանջմունքները, ավելի լրիվ բավարարել պարենամթերքի և ժողովրդական սպառման արդյունաբերական ապրանքների պահանջը, բարձրացնել մեքենաշինության մակարդակը, արագացնել տրանսպորտի զարգացումը։

«Մենք վերցրել ենք հումքի, վառելիքի և էներգետիկայի, պարենի, տրանսպորտի պրոբլեմների համատեղ լուծման կուրս,— ասում է Լ. Ի. Բրեժնևը։— Գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների բազայի վրա մենք խորացնում ենք մասնագիտացումն ու կոոպերացումը հատկապես մեքենաշինության մեջ։ Մենք այդ խնդիրները կլուծենք հուսալիորեն, խնայողաբար, տևականորեն։ Կլուծենք եղբայրական յուրաքանչյուր երկրի և ամբողջ համագործակցության շահերի ու կարիքների ըմբռնմամբ» (Մեծ Հոկտեմբերը և մարդկության պրոգրեսը, 1977, էջ 20)։

Առաջընթաց մեծ քայլ է արվել ՏՓԽ երկրների գիտատեխնիկական կապերի և համագործակցության բնագավառում, համատեղ ուժերով լուծվում են ընդհանուր հետաքրքրություն ներկայացնող շատ պրոբլեմներ, որովհետև դրա համար կան անհրաժեշտ բազա, որակյալ կադրեր։ ՏՓԽ երկրների երկկողմ և բազմակողմ համագործակցությանը 1976 թվականին մասնակցում էին մոտ 2.200 գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական կազմակերպություններ և բուհեր, որոնցից 1.600-ը իրենց ջանքերը միավորել են բազմակողմ հիմքի վրա 13 հիմնական ուղղություններով կարևորագույն պրոբլեմներ մշակելու համար, գործում էին 54 գիտական կոորդինացիոն կենտրոններ։ Միայն 1971—1975 թվականներին ավարտվեցին ավելի քան 5 հազար տեսական և կիրառական աշխատանքներ։ Ինտեգրացման կոմպլեքսային ծրագրի կատարման ընթացքը հանգեցրել է այն բանին, որ արդեն այժմ զգալիորեն խորացել է երկրների տնտեսական փոխգործողությունը, նրանց էկոնոմիկաներն ավելի մեծ չափով են փոխլրացնում միմյանց, և այդ մեծ օգուտ է բերում նրանցից յուրաքանչյուրին։

Արագ տեմպերով է աճում միջպետական առևտուրը, որի տարեկան գումարը 1977 թվականին կազմեց 91 միլիարդ ռուբլի։

Եղբայրական երկրների տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության ու փոխօգնության զարգացման, ինտեգրացման կոմպլեքսային ծրագրի հաջող իրականացման գործում վճռական դեր ունի տնտեսական փոխօգնության խորհուրդը։

ՏՓԽ-ի գործունեությունը, ինչպես ասել է Լ. Ի. Բրեժնևը «երկրների մի մեծ խմբի իրավահավասար համագործակցության, նրանց ազգային և ինտերնացիոնալ շահերի ներդաշնակ զուգակցման, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների գործնական իրականացման եզակի փորձ է» (Լենինյան կուրսով, հ. 5, էջ 119)։

ՏՓԽ-ի մեջ մտնող երկրները բազմապատիկ մեծացրել են իրենց տնտեսական պոտենցիալը և աչքի ընկնող տեղ են գրավում արդյունաբերական տեսակետից զարգացած պետությունների շարքում։ Աշխարհում եղած այդպիսի պետությունների առաջին տասնյակի մեջ մտնում են չորս սոցիալիստական երկրներ (ՍՍՀՄ, ԳԴՀ, ՉՍՍՀ, ԼԺՀ)։

Սոցիալիստական համագործակցությունը դարձել է այդ երկրների ժողովուրդների ամենահզոր, համախմբված, միասնական միությունը։ Պետություն-



ների ուրիշ ոչ մի միջազգային միավորում այդ համագործակցության հետ չի կարող համեմատվել ոչ տնտեսական աճի տեմպերով, ոչ էլ առավել ևս սոցիալական զարգացման խնդիրների լուծման մասշտաբներով ու արդյունքներով։ Հիրավի, սոցիալիստական երկրների համագործակցությունը դարձել է աշխարհի ամենադինամիկ տնտեսական ուժը, համաշխարհային քաղաքականության առաջատար գործոնը։

Սոցիալիստական համագործակցության երկրները նշանակալի դեր են խաղում համաշխարհային էկոնոմիկայում։ ՏՓԽ երկրներում ապրում է երկրագնդի բնակչության միայն տասը տոկոսը, մինչդեռ նրանք տալիս են համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեկ երրորդը, նրանց բաժին է ընկնում համաշխարհային ազգային եկամտի մեկ քառորդը։ 1948—1976 թվականների ընթացքում ՏՓԽ երկրների ազգային եկամուտն ավելացել է 9,5, իսկ զարգացած կապիտալիստական երկրներինը՝ միայն 3,3 անգամ։ 1971—1975 թթ. եղբայրական երկրների արդյունաբերությունը չորս անգամ ավելի արագ է զարգացել, քան զարգացած կապիտալիստական երկրներինը։ Աճի բարձր ու կայուն տեմպերը, գիտատեխնիկական արագ առաջընթացը, աշխատավորների բարեկեցության և կուլտուրայի անշեղ վերելքը, այդ երկրների տնտեսական ու կուլտուրական զարգացման մակարդակների աստիճանական մերձեցումն ու հավասարեցումը վառ կերպով ցույց են տալիս սոցիալիզմի, նոր տիպի միջազգային հարաբերությունների մեծ և անվիճելի առավելությունները, եղբայրական երկրների համագործակցության ու փոխօգնության, միասնության և համախմբվածության շոշափելի արդյունքները։

ՏՓԽ-ն, շուրջ 30 տարիների նրա բեղմնավոր գործունեությունը, ձեռք բերած նվաճումները միջպետական խոշոր և բարդ պրոբլեմներն իրավահավասարության, սուվերենության և փոխադարձ շահավետության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով հաջողությամբ լուծելու հիանալի օրինակ են։ Իր լայն կապերով ՏՓԽ-ն դարձել է միջազգային հեղինակավոր կազմակերպություն։ Դրանով պետք է բացատրել նրա գործունեության նկատմամբ աճող հետաքրքրությունը, նրա հետ կոնտակտ, համագործակցություն հաստատելու շատ երկրների ձգտումը։ Հատուկ համաձայնագրերի հիման վրա զարգանում է ՏՓԽ երկրների համագործակցությունը Ֆինլանդիայի, Մեքսիկայի, Լաոսի, Անգոլայի և այլ երկրների հետ։ ՏՓԽ-ն զանազան կապեր ունի տնտեսական և գիտատեխնիկական բնույթի ավելի քան 60 միջազգային կազմակերպությունների հետ։

Սոցիալիստական համագործակցության երկրների միասնության նոր ապացույց էր ՏՓԽ-ի 32-րդ նստաշրջանը, որը տեղի ունեցավ 1978 թվականի հունիսի վերջին։ Նստաշրջանն արձանագրեց, որ եղբայրական երկրները զգալի աշխատանք են կատարել համագործակցության հետագա խորացման, կատարելագործման և սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի զարգացման կոմպլեքսային ծրագրի իրականացման ասպարեզում։ 1976—1977 թվականներին եղբայրական երկրներում ազգային եկամուտն ավելացավ 12 տոկոսով, արդյունաբերական արտադրանքի թողարկումը՝ 12,4, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները՝ ավելի քան 8 տոկոսով։ Նստաշրջանը հավանություն տվեց էներգիայի, վառելիքի և հումքի, գյուղատնտեսության, սննդարդյունաբերության և մեքենաշինության բնագավառում համագործակցության երկարաժամկետ նպատակային ծրագրերին, որոնք նախատեսված են մինչև 1990 թ. ընկած ժամանակաշրջանը և մի նոր քայլ են երկրների համագործակցության զարգացման և խորացման ճանապարհին։ ՏՓԽ-ի 32-րդ նստաշրջանում միահամուռ ՏՓԽ-ի անդամ ընդունվեց Վիետնամի Սոցիալիստական Հանրապետությունը։

ՏՓԽ երկրների միասնությունը և համախմբվածությունը պարզորոշ դրսևորվում է նաև նրանց քաղաքական համագործակցության, արտաքին քաղաքական գործունեության կոորդինացման ասպարեզում։

Եղբայրական երկրների քաղաքական և ռազմական համագործակցության առանցքը Վարշավայի պայմանագրի կազմակերպությունն է, որը հուսալիորեն

ծառայում է խաղաղության և սոցիալիզմի շահերին։ Մի շարք միջոցառումների կոլեկտիվ մշակման ու կատարելագործման շնորհիվ վերջին տարիներս ավելի կատարելագործվեց Վարշավայի պայմանագրի ռազմական կազմակերպությունը։ Այդ կազմակերպության շրջանակներում պարբերաբար հրավիրվում են քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցություններ կոմունիստական կուսակցությունների և կառավարությունների ղեկավարների մասնակցությամբ, քննարկվում են համաշխարհային քաղաքականության ամենից ավելի հրատապ պրոբլեմները, մշակվում է եղբայրական երկրների միասնական, կոորդինացված գիծ եվրոպական և համաշխարհային քաղաքականության հարցերում։ Այդպիսի կոորդինացումը սոցիալիստական պետությունների հաջողությունների կարևորագույն պայմանն է միջազգային ասպարեզում։

Այժմ ամենքին հայտնի է այն նախաձեռնությունների նշանակությունը, որոնցով վերջին տարիներս հանդես եկավ քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեն։ Դրանցից շատերը դրվեցին միջազգային խոշոր համաժողովների որոշումների հիմքում կամ էլ արտացոլվեցին միջպետական մի շարք կարևոր երկկողմ ակտերում։ Միասնության, համերաշխության, փոխադարձ աջակցության շնորհիվ սոցիալիզմի երկրներին հաջողվել է անցած հնգամյակում լուծել խոշորագույն խնդիրներ, իրագործել այն, ինչի համար նրանք պայքարում էին երկար ժամանակ։ Իմպերիալիստական ագրեսիայի դեմ, ազատության և անկախության համար Վիետնամի ժողովրդի մղած հերոսական կռիվն ավարտվեց պատմական հաղթանակով՝ երկրի միավորումով և սոցիալիստական հանրապետության հռչակումով։ ՎՍՀ-ն դարձավ ամբողջ Հարավ-Արևելյան Ասիայի խաղաղության և առաջադիմության կարևոր գործոն։ Լաոսում հայրենասիրական ուժերի հաղթանակի շնորհիվ սոցիալիստական երկրների ընտանիքը համալրվում է ևս մի նոր անդամով։ Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին և դրանից հետո եվրոպական ժողովուրդների ազատագրական պայքարի կարևորագույն արդյունքների վավերացումը, Կուբայի միջազգային դրության ու հեղինակության ամրապնդումը և այլն, այս ամենի շնորհիվ, ինչպես ասված է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ «Վերջին տարիներս է՛լ ավելի ամրապնդվեց սոցիալիստական երկրների եղբայրական ժողովուրդների համաշխարհային համագործակցությունը՝ նոր տիպի միջազգային դաշինքը»։

Սովետական Միության և սոցիալիստական համագործակցության մյուս պետությունների հարաճուն հզորության, խաղաղասեր ուժերի պայքարի շնորհիվ հաջողվեց դրական շրջադարձի հասնել միջազգային հարաբերությունների զարգացման մեջ, անցում կատարել «սառը պատերազմից» դեպի լարվածության թուլացում, դեպի միջազգային հարաբերություններում տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատում։ Է՛լ ավելի բարենպաստ միջազգային պայմաններ ապահովվեցին սոցիալիստական և կոմունիստական խաղաղ շինարարության, ժողովուրդների սոցիալական առաջընթացի համար։

Սոցիալիստական պետությունները վճռականապես դեմ են աշխարհը հակադիր ռազմական բլոկների բաժանելուն, սպառազինությունների մրցավազքին։ Սակայն, քանի դեռ պահպանվում է ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկը և միլիտարիստական շրջանները սպառազինությունների մրցավազք են կատարում, համագործակցության երկրները կամրապնդեն իրենց ռազմաքաղաքական դաշինքը։

«Մենք կարող ենք մաքուր խղճով ասել. մեր դաշինքը, մեր բարեկամությունը, մեր աշխատակցությունն ընդհանուր նպատակներով ու շահերով, ընկերական համերաշխության և փոխօգնության կապերով համախմբված սուվերեն, իրավահավասար պետությունների դաշինքն է, բարեկամություն ու համագործակցություն» (Լ. Ի. Բրեժնև, Մեծ Հոկտեմբերը և մարդկության պրոգրեսը, էջ 19—20)։

Եղբայրական երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների բացառիկ ինտենսիվ գործունեությունը, առավելագույն ջանքերն ուղղված



են այն բանին, որ էապես նվազեցվի, իսկ այնուհետև նաև վերացվի միջուկային պատերազմի սպառնալիքը, որպեսզի կրճատվի սպառազինությունների մրցավազքը, մեղմացվի ու հաղթահարվի երկու համաշխարհային սիստեմների ռազմական դիմակայումը։

Աստիճանաբար ընդլայնվում, խորանում և զարգանում են ՏՓԽ երկրների կուլտուրական կապերը և համագործակցությունը, նրանց մերձեցումը կուլտուրայի և հոգևոր կյանքի բնագավառում։ Տարեցտարի այդ կապերի ու համագործակցության ձևերն ավելի ու ավելի բազմազան են դառնում։ Դրանք նոր տիպի միջազգային կուլտուրական կապեր ու հարաբերություններ են, որոնք բնութագրվում են ազգային կուլտուրաների գաղափարական ընդհանրությամբ, նրանց միասնական սոցիալիստական բովանդակությամբ, ինտերնացիոնալիստական ոգով։ Ավելի ինտենսիվ է դառնում նյութական և հոգևոր հարստությունների փոխանակումը ժողովուրդների միջև, աճում է յուրաքանչյուր երկրի ավանդը ինտերնացիոնալ կուլտուրայի ձևավորման գործում։ Երկրների կուլտուրական մերձեցումը նրանց բազմակողմանի մերձեցման և միասնության ամրապնդման բաղկացուցիչ մասն է։

Շարունակում է ընդլայնվել և խորանալ եղբայրական երկրների կուսակցությունների գաղափարական համագործակցությունը, ամրապնդվել նրանց գաղափարական միասնությունը։ Համագործակցությունն այդ բնագավառում այժմ կրում է ավելի սիստեմատիկ և պլանաչափ բնույթ։ Դրա վկայությունն են այն հանդիպումները, որ կանոնավոր կերպով ունենում են եղբայրական երկրների կուսակցությունների գաղափարական և միջազգային գործունեությամբ զբաղվող ղեկավար աշխատողները։

Գաղափարական համագործակցության և միասնության հարցերին մեծ ուշադրություն հատկացրեց եղբայրական կուսակցությունների Կենտկոմների քարտուղարների այս տարվա փետրվարին Բուդապեշտում կայացած խորհրդակցությունը։ Միմյանց իրազեկ պահելով իրենց կուսակցությունների գաղափարաքաղաքական աշխատանքների մասին, խորհրդակցության մասնակիցները կարծիքներ փոխանակեցին այդ ոլորտում փոխգործողության և միջազգային հրատապ հարցերի շուրջ, նշեցին ինֆորմացիայի ու պրոպագանդայի, հասարակական գիտությունների, կրթության, կուլտուրայի բնագավառներում եղբայրական երկրների երկկողմ և բազմակողմ համագործակցության արդյունավետ բնույթը և վճռեցին այսուհետ ևս զարգացնել այն։

Հին աշխարհի հետադեմ ուժերը չեն ուզում հաշտվել ստեղծված իրավիճակի հետ, փորձեր են անում թուլացնելու սոցիալիստական երկրների համագործակցությունը և դաշինքը, խախտելու նրանց միասնությունը, աղմկում են այսպես կոչված «այլախոհների», սոցիալիզմի երկրներում «մարդու իրավունքների խախտման» մասին և այլն։

Իմպերիալիստական երկրների որոշ ղեկավար գործիչներ ու ջատագովներ կեղծավորաբար խոսում են մարդու իրավունքների մասին։ Եվ այդ այն դեպքում, երբ ամբողջ աշխարհին են հայտնի կապիտալիստական երկրներում մարդու ամենատարրական իրավունքների ոտնահարման փաստերը։ Կապիտալիստական երկրների ոչ մի ներկայացուցիչ,— ասել է Ֆիդել Կաստրոն,— բարոյական իրավունք չունի խոսելու մարդու իրավունքների մասին... Մարդու իրավունքների մասին խոսելու համար պարզապես հարկավոր է դադարել կապիտալիստ լինելուց։

Անժխտելի է, որ միայն ռեալ սոցիալիզմն է ապահովում տնտեսական աճի կայուն և արագ տեմպեր, աշխատանքով լրիվ ապահովվածություն, աշխատավորների բարեկեցության վերելք, մարդու վստահությունն ապագայի հանդեպ, նրան տալիս մեծ իրավունքներ ու ազատություն, որոնք լիովին երաշխավորված են և կենսագործվում են։

ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը կրկին համոզիչ ցույց տվեց, որ մարդու ազատության, իրավունքների, դեմոկրատիայի և սոցիալական արդարության հասկացությունների իսկական բովանդակությամբ են օժտվում միայն սոցիալիզմի պայմաններում։

Դեմոկրատիայի հասկացությունների և մարդու իրավունքների՝ բուրժուական և ռևիզիոնիստական պրոպագանդայի խեղաթյուրված և գռեհկացված մեկնաբանությանը կոմունիստական կուսակցությունը, սովետական պետությունը հակադրում են սոցիալիստական հասարակության քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների ամենալիակատար և ռեալ կոմպլեքսը։

Ուռճացնելով տարբեր երկրների ազգային, պատմական առանձնահատկությունները, զարգացման մակարդակների միջև եղած տարբերությունները, հակակոմունիզմի ջատագովները ժխտում են սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունները, անտեսում այդ բնագավառում կուտակված փորձը, ձգտում են սոցիալիստական երկրների փորձը հակադրել իրար, խախտել նրանց համագործակցությունը և միասնությունը։

Զո՛ւր հույսեր, ապարդյո՛ւն ջանքեր։ Իհարկե, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրներից յուրաքանչյուրը յուրովի է լուծում սոցիալիստական շինարարության պրոբլեմները։ Դեռ ժամանակին Վ. Ի. Լենինը նկատել է, որ սոցիալիզմի ուղին ընտրող յուրաքանչյուր ազգ յուրահատկություն կմտցնի դեմոկրատիայի ձևի, պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն տարատեսակության մեջ, հասարակական կյանքի զանազան կողմերի սոցիալիստական վերափոխումների այս կամ այն տեմպի մեջ։ Սակայն, միևնույն ժամանակ նա շեշտում էր, որ «այդ առանձնահատկությունները կարող են վերաբերվել միայն ոչ ամենագլխավորին» (հ. 30, էջ 117)։

Համաշխարհային սոցիալիզմի փորձը հաստատում է, որ մարքս-լենինյան կուրսից նահանջելը, պրոլետարական ինտերնացիոնալիզմից հեռանալն անխուսափելիորեն ծնում են ձախողումներ և ծանր փորձություններ, ինչպես այդ տեղի ունեցավ Չինաստանում։ «Քաջ հայտնի է,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— թե Չինաստանում ինչպիսի ծանր հետևանքների հասցրին սոցիալիզմի տնտեսական օրենքներն անտեսելու փորձերը, սոցիալիստական երկրների հետ բարեկամությունից և համերաշխությունից հեռանալը, համաշխարհային ասպարեզում ռեակցիայի ուժերին միանալը։ Չին ժողովրդի սոցիալիստական նվաճումները մեծ վտանգի ենթարկվեցին» (Մեծ Հոկտեմբերը և մարդկության պրոգրեսը, էջ 19)։

Սոցիալիզմի աշխարհը տակավին երիտասարդ, աճող սոցիալական օրգանիզմ է, ժողովուրդների սոցիալ-պատմական նոր միջազգային հանրություն, որտեղ դեռ ամեն ինչ չէ, որ կայունացել է, այստեղ շատ բան իր վրա կրում է նախորդ պատմական դարաշրջանների կնիքը, նրա զարգացումն ընթանում է հնի ու նորի պայքարի, ներքին հակասությունների լուծման, օբյեկտիվ և սուբյեկտիվ բնույթի շատ դժվարությունների հաղթահարման ճանապարհով։

Եղբայրական ժողովուրդների բազմակողմանի համագործակցության ու փոխօգնության զարգացումը, նոր աշխարհի կառուցման կոլեկտիվ փորձը նրանց հնարավորություն են ընձեռում ժամանակին հաղթահարելու ծագող հակասությունները, դժվարությունները և վստահորեն առաջ մղելու սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործը։ Իրենց պատմական հաջողությունների, նոր տիպի միջազգային հարաբերությունների, բազմակողմանի մերձեցման և միասնության ամրապնդման շնորհիվ սոցիալիստական համագործակցության երկրները հետզհետե ավելի ու ավելի խոր և ուժեղ ազդեցություն են թողնում համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա՝ հօգուտ ողջ առաջադեմ մարդկության։

Սոցիալիստական պետությունների հիանալի ընտանիքն այժմ ապրում է հարուստ, լիարյուն կյանքով, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի օրենքներով ու նորմերով, և եղբայրական կուսակցություններն ամեն ինչ անում են, որպեսզի այսուհետ ևս այդպես լինի, որ հաղթանակած սոցիալիզմի օրինակն ավելի ու ավելի պայծառորեն շողա, որ նրա մեծ առավելություններն առավել վառ դրսևորվեն սոցիալիզմի համաշխարհային սիստեմի շրջանակներում։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՀԻՄՔԸ

**Ա. Մ. ԲԱՂՄԱՆՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ և նրա սոցիալական հիմքի հետ կապված հարցերը կարևորագույն տեղ են գրավում մարքսիստական-լենինյան տեսության, կոմունիստական կուսակցության ստրատեգիայի ու տակտիկայի, նրա քաղաքականության և պրակտիկ գործունեության մեջ։ Եվ դա միանգամայն տրամաբանական է, քանի որ պրոլետարական հեղափոխության, սոցիալիզմի ու կոմունիզմի հաջողությունը պայմանավորված է բանվոր դասակարգի, նրա հետ դաշնակցած կոլտնտեսական և մտավորական աշխատավորության միասնությամբ և պրոլետարական պետության ուժով ու ամրությամբ, պետություն, որը ծնվել և հենվում է այդ հասարակական մեծ ուժի վրա։

ՍՍՀՄ նոր Սահմանադրության 19-րդ հոդվածում նշված է, որ «ՍՍՀՄ սոցիալական հիմքն է կազմում բանվորների, գյուղացիների և մտավորականության անխախտ դաշինքը»։ Իսկ Սահմանադրությունը խտացումն է այն ամենի, ինչ արդեն տվել է կյանքը, լենինյան կուսակցության, առաջին սոցիալիստական պետության, սովետական հերոս ժողովրդի հեղափոխական-վերակերտիչ գործունեության 60-ամյա փորձն ընդհանրապես, վերջին 40 տարիներինը՝ մասնավորապես։ Հիմնական օրենքում տրված վերոհիշյալ սահմանումն արտացոլում է աշխատավորական դասակարգերի ու սոցիալական խմբերի դաշինքի բարձրագույն աստիճանը, որը բնորոշ է հասուն սոցիալիզմին։ Մեր երկրի զարգացման նախորդ փուլերում աշխատավորների դաշինքն ունեցել է այլ ձև ու բովանդակություն։ Դրանում ներկայացված են եղել ոչ այդքան ստվար զանգվածներ։ Պատմականորեն դաշինքի առաջին ձևը, որի վրա հենվել է Մեծ Հոկտեմբերի բարիկադներում ծնված պրոլետարիատի դիկտատուրայի պետությունն իր գոյության առաջին տարում և որը Վ. Ի. Լենինի ցուցումով խորհրդանշվել է նրա գերբի վրա մուրճ ու մանգաղի տեսքով, եղել է բանվոր դասակարգի և չքավորագույն գյուղացիության դաշինքը։ Դրանում առաջատար դերը պատկանել է բանվոր դասակարգին, իսկ ղեկավար և ցեմենտող ուժը եղել է կոմունիստական կուսակցությունը։ Այլ կերպ էլ լինել չէր կարող, քանի որ բանվոր դասակարգը հասարակության ամենահեղափոխական, համախմբված ու կազմակերպված, ներկա ու ապագա ունեցող ուժն էր։ Թեև տվյալ պահին նա մյուս դասակարգերի համեմատությամբ ամենափոքրաթիվն էր, բայց իր խաղացած դերով, նշանակությամբ ու ազդեցությամբ հասարակության առաջընթաց զարգացման գլխավոր ուժն էր։ Իսկ նրա ամենամերձավոր ու բնական դաշնակիցը գյուղական բնակչության ամենաստվար հատվածը կազմող չքավորագույն գյուղացիությունն էր։ Քաղաքի ու գյուղի մյուս աշխատավորական խավերը, հիմնականում միջակ գյուղացիները, տատանվում էին բուրժուազիայի և պրոլետարիատի միջև։

Հոկտեմբերյան հեղափոխությունն արմատապես փոխեց սոցիալական զարգացման ընթացքը։ Այն հիմնադրեց սոցիալական նոր սկզբունքներով հասարակության կառուցման վերաբերյալ մարքս-լենինյան գաղափարների մարմնավորման սկիզբը, բացեց նոր տիպի քաղաքակրթության ուղին։ Հեղափոխությունից, բնականաբար, ամենից ավելի շահեցին աշխատավորական լայն զանգվածները, այդ թվում և գյուղացիները։ Կարճ ժամանակում բարձրացավ գյուղական չքավորության մեծ մասի մակարդակը, հասնելով միջակների մակարդակին։ Այդ ամենի շնորհիվ պրոլետարական հեղափոխությունը թևակոխեց իր զարգացման նոր փուլը, և սովետական պետության սոցիալական հիմքի ընդլայնումը դարձավ օբյեկտիվ անհրաժեշտություն։ 1918 թվականի վերջերին Վ. Ի. Լենինն առաջադրեց միջակ գյուղացիության հետ բանվոր դասակարգի ամուր դաշինքի հարցը, որը վերջնականապես ձևակերպվեց ՌԿ(բ)Կ VIII համագումարում (1919 թ. մարտ)։ Այդ դաշինքը, որ անհամեմատ ավելի լայն էր, կուսակցությունն իրականացնում էր՝ հենվելով չքավորության վրա և անզիջում պայքարելով կուլակության դեմ։

Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը Վ. Ի. Լենինը համարում էր պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը. «...դաշինք ընդդեմ կապիտալի, դաշինք կապիտալի լիակատար տապալման, բուրժուազիայի դիմադրության, նրա կողմից ռեստավրացիայի փորձերի լիակատար ճնշման նպատակով, դաշինք սոցիալիզմի վերջնական ստեղծման և ամրացման նպատակով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 465)։

Աշխատավոր դասակարգերի դաշինքը միշտ էլ եղել է կուսակցության քաղաքականության ու պրակտիկ գործունեության կիզակետը։ Այն եղել է սովետական ժողովրդի բոլոր ու ամեն տեսակ հաղթանակների գլխավոր հասարակական ուժը, թեև զարգացման տարբեր փուլերում ունեցել է ոչ միևնույն ձև ու բովանդակություն։

Քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի տարիներին բանվորագյուղացիական դաշինքն ընդունեց ռազմաքաղաքական բնույթ, իսկ նէպին անցնելուց հետո փոխադրվեց նոր տնտեսական հիմքի վրա։ Հենվելով դրա վրա՝ սովետական պետությունը կարողացավ իրագործել երկրի սոցիալիստական ինդուստրացումը և գյուղատնտեսության կոլեկտիվացումը, լուծել կապիտալիզմից սոցիալիզմին անցման ժամանակաշրջանի այդ բարդ պրոբլեմները, հաղթահարել նոր հասարակարգի կառուցման ճանապարհի անասելի դժվարությունները։ Սոցիալիզմը, որի անխուսափելիությունը գիտականորեն կանխագուշակել էին Մարքսն ու Էնգելսը, իսկ նրա կառուցման պլանը կանխագծել էր մեծ Լենինը, Սովետական Միությունում ռեալ իրականություն դարձավ։

Սոցիալիզմի հաղթանակն առավել ընդլայնեց սովետական պետության սոցիալական հիմքը, քանի որ ողջ կոլտնտեսային գյուղացիությունը դարձավ բանվոր դասակարգի դաշնակիցը, նրա դասակարգային բարեկամը։ Այդ դաշինքը, ժողովուրդների սերտ բարեկամությունը, սովետական կենարար հայրենասիրությունը, բոլոր աշխատավորների կուռ միասնությունն ու համախմբվածությունը կուսակցության շուրջը և այլ գործոններ հանդիսացան երկրորդ համաշխարհային պատերազմում իմպերիալիզմի ռեակցիոն ուժերի ջախջախման, հետպատերազմյան ժամանակաշրջանում ժողովրդական տնտեսության արագ վերականգնման և հետագա զարգացման գլխավոր գործոնները։

Սոցիալիզմի հիմքերի կառուցմամբ էապես փոխվեցին սոցիալական պայմանները ՍՍՀՄ-ում։ Շահագործող դասակարգերը և շահագործում ծնող բոլոր պատճառները վերացվեցին, բանվոր դասակարգը դադարեց պրոլետարիատ լինելուց, դարձավ համաժողովրդական սեփականության կրողը, գյուղացիությունը բազմաշերտ ու մանր արտադրողների դասակարգից վերածվեց սոցիալիստական դասակարգի։ Մտավորականության բացարձակ մեծամասնությունը համախմբվեց սոցիալիզմի դրոշի ներքո։ Հասարակության տարբեր դասակարգերի և սոցիալական խմբերի միջև հաստատվեց բարոյաքաղաքական միասնություն, որի ղեկավար և առաջատար ուժը շարունակեց մնալ բանվոր դա-



սակարգը։ Կուսակցության ծրագիրը դարձավ ողջ սովետական ժողովրդի ծրագիրը։

***

Սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակով երկիրը թևակոխեց զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանը։ Զարգացած սոցիալիզմը հասարակության տնտեսական, քաղաքական, կուլտուրական ու գաղափարական հասունության նոր, ավելի բարձր աստիճանն է։ Դա մի հասարակարգ է, որը զարգանում է սեփական հիմքի վրա, մշտապես աճում են նրա արտադրաուժերը, ժողովրդի բարեկեցությունը, սոցիալիստական արտադրահարաբերություններն աստիճանաբար վերաճում են կոմունիստականի։ Դա հայրենասեր և ինտերնացիոնալիստ աշխատավորների բարձր կազմակերպվածության, գաղափարայնության ու գիտակցականության, իսկական դեմոկրատիայի հասարակություն է։ Զարգացման այդ նոր փուլում ավելի մեծ առաջընթաց է կատարվում մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացման ոլորտում, առավել անառիկ է դառնում սովետական ժողովրդի ներքին միասնությունը, սերտ բնույթ ընդունում բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի աճող մերձեցումը, իսկ պրոլետարիատի դիկտատուրան վերաճում է համաժողովրդական պետության, և այդ կապակցությամբ էապես ընդլայնվում է նրա սոցիալական հիմքը։

Պրոլետարիատի դիկտատուրան անհրաժեշտ էր զարգացման նախկին փուլերի համար։ Իր հաստատման ճանապարհին սոցիալիզմը հարկադրված էր հաղթահարելու հին աշխարհի ռեակցիոն ուժերի կատաղի դիմադրությունը. Ուստի և այդ հասարակարգի ստեղծման համար բանվոր դասակարգին անհրաժեշտ է այնպիսի իշխանություն, որն ունակ է ճնշելու շահագործողների դիմադրությունը, ամրապնդելու հեղափոխության հաղթանակը, ժամանակին կանխելու բուրժուազիայի իշխանության վերականգնման փորձերը, ապահովելու սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը իմպերիալիզմի ռեակցիոն ուժերի ագրեսիվ գործողություններից։

Կ. Մարքսի և Վ. Ի. Լենինի հիմնարար դրույթները և պատմական փորձը հաստատում են այն եզրահանգման ճշտությունը, որ պրոլետարիատի դիկտատուրան կապիտալիզմից դեպի սոցիալիզմ տանող անցողիկ ժամանակաշրջանի պետություն է։ Դրա համար էլ միանգամայն բնական է, որ երբ սովետական երկիրը թևակոխեց հասուն սոցիալիզմի ժամանակաշրջանը, անհետացան այն պայմանները, որոնք հարուցում էին պրոլետարիատի դիկտատուրայի անհրաժեշտությունը՝ նրա ներքին խնդիրների լուծման առումով։

Լ. Ի. Բրեժնևը գրում է, որ «Սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի սերտացման, քաղաքի ու գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական վերացման, բոլոր աշխատավորների՝ բանվոր դասակարգի գաղափարաքաղաքական դիրքերն անցնելու շնորհիվ մեզ մոտ աննախադեպ մերձեցել են բնակչության բոլոր խավերի ռեալ շահերն ու նպատակները, սոցիալական իդեալներն ու հոգեբանությունը։ Դրա հիման վրա էական փոփոխություններ են տեղի ունեցել նաև հասարակության քաղաքական սիստեմում։ Դրանց էությունը պրոլետարիատի դիկտատուրայի վերաճումն է համաժողովրդական սոցիալիստական պետության» (Լ. Ի. Բրեժնև, Պատմական բնագիծ կոմունիզմի ճանապարհին, էջ 9)։

Արտահայտելով ողջ սովետական ժողովրդի շահերն ու կամքը, համաժողովրդական սոցիալիստական պետությունը կոչված է կազմակերպելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, սոցիալիստական արտադրահարաբերությունների վերափոխումը կոմունիստականի, նոր մարդու դաստիարակումը, իրագործելու վերահսկողություն աշխատանքի և սպառման չափի նկատմամբ, ապահովելու ժողովրդի բարեկեցության վերելքը, պահպանելու սովետական քաղաքացիների իրավունքներն ու ազատությունները, սոցիալիստական իրավակարգը և սոցիալիստական սեփականությունը, ժողովրդական մասսաներին դաստիարակելու գիտակցական կարգապահության և աշխատան-

րի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, հուսալիորեն ապահովելու երկրի պաշտպանությունն ու անվտանգությունը, զարգացնելու եղբայրական համագործակցություն սոցիալիստական երկրների հետ, պաշտպանելու ընդհանուր խաղաղության գործը և նորմալ հարաբերություններ հաստատելու բոլոր երկրների հետ: Համաժողովրդական պետության պայմաններում երկրի կառավարման ողջ համակարգն իրականացվում է աշխատավորների կողմից՝ հանձին նրանց կազմակերպությունների, սովետների, արհմիությունների, կոոպերատիվ ու կուլտուր-լուսավորական հիմնարկությունների, կոմունիստական երիտասարդական միությունների: Բայց քանի որ բանվոր դասակարգը սովետական հասարակության ամենաառաջավոր, կազմակերպված ուժն է, իր ղեկավար դերն իրագործում է նաև համաժողովրդական պետության ժամանակաշրջանում:

Թեև պրոլետարիատի դիկտատուրայի և համաժողովրդական պետության միջև չկա ինչ-որ անջրպետ և վերջինս առաջինի զարգացման օրինաչափ արդասիքն ու աստիճանն է, բայց նրանց սոցիալական հիմքերը նույնը չեն: Համաժողովրդական պետության սոցիալական հիմքն ավելի լայն է, քանի որ բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքին միանում է մի նոր, ոչ պակաս բազմամարդ խավ՝ ժողովրդական մտավորականությունը:

Զարգացած սոցիալիզմի փուլում դասակարգերն ու սոցիալական խավերն իրենց ընդհանուր բնույթով, քանակով, կուլտուր-կրթական մակարդակով, մերձեցման աստիճանով զգալիորեն տարբերվում են երեսնական թվականների վերջերից, երբ սոցիալիզմը հաղթանակել էր հիմնականում: Եթե չորս տասնամյակ առաջ բանվոր դասակարգը կազմում էր զբաղված բնակչության մեկ երրորդը, ապա ներկայումս՝ երկու երրորդը և իր շարքերում ունի ավելի քան 70 միլիոն մարդ:

Մշտապես աճում են բանվորների հասարակական ակտիվությունն ու քաղաքական հասունությունը, նրանց մասնակցությունը պետության կառավարմանը: Բանվորների բաժինը բոլոր աստիճանների սովետների դեպուտատների մեջ վերջին 40 տարում ավելացել է 5 անգամ: Զգալիորեն բարձրացել է նրանց կուլտուր-կրթական մակարդակը: 1936 թվականի 8 տոկոսի փոխարեն այժմ բանվորների ավելի քան 73 տոկոսն ունի բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն:

Էականորեն փոխվել է նաև կոլտնտեսային գյուղացիությունը: Գիտատեխնիկական հեղափոխությունը գյուղատնտեսական աշխատանքին հաղորդում է նոր բնույթ: Տեխնիկական գիտելիքների մակարդակով և հոգեբանությամբ կոլտնտեսային աշխատավորներն ավելի ու ավելի են մոտենում բանվորներին: Իրենց սոցիալական դրությամբ, կրթական մակարդակով և ապրելակերպով նրանք քիչ են տարբերվում բանվոր դասակարգից, քաղաքային բնակչությունից: Թեև գյուղատնտեսության մեքենայացման շնորհիվ զգալիորեն նվազել է գյուղացիության թիվը, բայց նրա տեսակարար կշիռն ու դերը բարձրացել են: Գյուղն այնքան է առաջադիմել, որ մեխանիզատորը դարձել է հողագործության կենտրոնական դեմքը, մարդիկ, որոնք իրենց մասնագիտությամբ չեն տարբերվում արդյունաբերական ձեռնարկությունների բանվորներից:

Ներկայումս կոլտնտեսականների ավելի քան 56 տոկոսն ունի բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն: Գյուղացիների բացարձակ մեծամասնության համար բնորոշ են կոլեկտիվիստական հոգեբանությունը և կոմունիզմին նվիրվածությունը: Քաղաքի ու գյուղի միջև եղած էական տարբերությունների աստիճանական վերացումով, սոցիալիստական սեփականության երկու ձևերի շոշափելի մերձեցմամբ, ագրոարդյունաբերական հազարավոր միավորումների ու ձեռնարկությունների ստեղծումով (այժմ ՍՍՀՄ-ում դրանց թիվը հասնում է շուրջ 7.000-ի) գյուղատնտեսական աշխատանքը դառնում է ինդուստրիալ աշխատանքի տարբերակը:

Սոցիալիզմի կառուցման, ամրապնդման ու զարգացման տարիներին բազմամարդ դարձավ սովետական մտավորականությունը, որը մեծ չափով համալրվեց բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության միջավայրից և



ձեռք բերեց նոր կերպար: Գիտության ու տեխնիկայի աննախընթաց զարգացման շնորհիվ մեծապես աճեց մտավորականության դերն ու նշանակությունը: «Սովետական աշխատավորների ամենաարագ աճող ջոկատն է այդ: Անցած չորս տասնամյակում բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետների թիվն ավելացել է արդյունաբերության մեջ 34, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 47 անգամ» (Նույն տեղը, էջ 8):

Քանակական աճին զուգընթաց զգալիորեն աճեց նաև մտավորականության ստեղծագործական ու քաղաքական ակտիվությունը կոմունիզմի կառուցման բոլոր ասպարեզներում: Մտավոր աշխատանքի մարդիկ գիտակցաբար իրենց գործունեությունը միաձուլեցին բանվոր դասակարգի նպատակների ու նվաճումների հետ: Սոցիալիստական մտավորականությունն իր հայրենիքը փառաբանեց գիտության ու տեխնիկայի, գրականության և արվեստի ակնառու նվաճումներով: Սոցիալիզմի հաջողություններին ու նվաճումներին զուգընթաց սկսեց իրականություն դառնալ Վ. Ի. Լենինի հիմնարար ցուցումը պրոլետարիատի և գիտության ներկայացուցիչների միջև համագործակցության մասին, որ այդպիսի «...միության առաջ չի կարող դիմանալ և ոչ մի մութ ուժ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 512):

Պատմական այդ մեծ տեղաշարժերով է հիմնավորվում բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքի զարգացման նոր աստիճանը, ամբողջովին ու լիովին սոցիալիզմի դիրքերում կանգնած ժողովրդական մտավորականության հետ այդ դասակարգերի քաղաքական և գաղափարական կուռ միասնությունը: Թեև մեծ են նրանց միջև եղած էական տարբերությունների վերացման ասպարեզում եղած հաջողությունները, բայց դեռ երկար ժամանակ ու շատ ջանքեր կպահանջվեն այդ տարբերությունների իսպառ վերացման համար: Քանի դեռ հասարակությունը չի թևակոխել լիակատար կոմունիզմի ժամանակաշրջանը, պետք է անդուլ հոգածություն ցուցաբերել տարբեր դասակարգերի ու սոցիալական խավերի ռեալ շահերի ու նպատակների միասնության խորացման և կատարելագործման նկատմամբ: Միայն ապագայում, երբ կկառուցվի լիակատար կոմունիստական հասարակարգ և այլևս չեն լինի տարբեր սոցիալական խմբեր ու դասակարգեր, կվերանան բանվոր, գյուղացի, մտավորական արտահայտությունները և նրա «...մեջ կմնան միայն արտադրողներ, աշխատողներ...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 308), այն ժամանակ իրեն լիովին կսպառի այդ դաշինքը՝ որպես պատմական կատեգորիա և քաղաքական ու սոցիալական հասկացություն: Բանվորների, գյուղացիների և մտավորականության, ֆիզիկական և մտավոր աշխատանքի բոլոր մարդկանց միջև ՍՍՀՄ-ում ստեղծված անխախտ դաշինքը այդպիսի միատարր կոմունիստական հասարակության կառուցման վճռական պայմանն է, կարևորագույն աղբյուրն ու երաշխիքը:

***

Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության դաշինքի ծագումն ու ամրապնդումը սովետական երկրում օրգանապես կապված են ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ժողովուրդների բարեկամության և համագործակցության ամրապնդման պրոցեսի հետ: Կոմունիստական կուսակցության լենինյան ազգային ծրագրի հետևողական կենսագործումն ապահովեց ՍՍՀՄ բոլոր ազգերի և ժողովուրդների տնտեսական ու հոգևոր կյանքի մեծ վերելքը, նրանց կապերի համակողմանի ամրապնդումն ու մերձեցումը:

Հասարակության սոցիալական կառուցվածքի և ազգային հարաբերությունների համակարգում տեղի ունեցած առաջադիմական փոփոխությունների հանրագումարը հանդիսացան մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ծագումն ու ձևավորումը: Այն հանդես է գալիս թե՛ որպես սոցիալական և թե որպես ինտերնացիոնալ հանրություն՝ մարմնավորելով սոցիալիստական հասարակության բոլոր դասակարգերի ու խմբերի, ազգերի ու ժողովուրդների ամբողջությունը:

Սովետական ժողովրդի նման անխախտ միասնությունը հետզհետե ավելի ու ավելի է խորանում, տանում դեպի միատարր կոմունիստական հասարակության վերաբերյալ մարդկության լավագույն երազանքի իրականացում:

Մենք ապրում ենք սոցիալիստական հասարակության առաջընթաց զարգացման այն փուլում, երբ նրա կոլեկտիվների ու առանձին անհատների միջև հարաբերությունների կարգավորման հիմնական ուժը դառնում է հումանիզմի ու դաստիարակության մեթոդը:

Աշխատավորների բարեկեցության և կուլտուրական աննախընթաց վերելքի, նրանց մերձեցման, իսկ ապագայում՝ լիակատար հավասարության ստեղծման գործում մեծ դեր է կատարում գիտատեխնիկական հեղափոխությունը: Մինչդեռ կապիտալի աշխարհում «Տեխնիկական առաջընթացը ձեռնարկությունների դարպասներից դուրս է շպրտում բանվորների այնպիսի զանգվածներ, որ դա սպառնում է ցնցել ամբողջ սոցիալ-քաղաքական սիստեմը» (Լ. Ի. Բրեժնև, Մեծ Հոկտեմբերը և մարդկության պրոգրեսը, էջ 23):

Գիտատեխնիկական հեղափոխությունը մերձեցնում և նույնիսկ շոշափելիորեն նույնացնում է բանվորի, մտավորականի, կոլտնտեսային գյուղացու աշխատանքը: Նրա ազդեցությամբ արտադրության մեջ աճում է նոր տիպի աշխատող, որի գործունեության մեջ ավելի հարմոնիկ են զուգակցվում ֆիզիկական ու մտավոր աշխատանքը: Արտադրության նորարարները, ռացիոնալիզատորները և առաջավոր բանվորներն այնպիսի ստեղծագործական ավանդ են մուծում տեխնիկայի զարգացման մեջ, ինչպես խոշոր մասնագետները: Ճիշտ նույն ձևով էլ կոլտնտեսային աշխատավորներից շատ-շատերը կատարում են այնպիսի աշխատանք, ինչպես գյուղատնտեսները, զոոտեխնիկները և մեխանիզատորները: Այդ ամենը հանգեցնում է մարդկանց միջև սոցիալական կապերի ամբողջ համակարգի վերափոխումներին: Այդ համակարգում ամենաբնորոշը կոլեկտիվիզմն է, հակառակ հասարակության անդամներին ջլատող ինդիվիդուալիզմի, որը հատուկ է շահագործողական կարգերին:

Սոցիալիստական հասարակության բոլոր խավերի ու օղակների կյանքն ու գործունեությունը ինքնըստինքյան թափանցված են կոլեկտիվիզմով: Մարդիկ մտածում ու գործում են հասարակության, կոլեկտիվի չափանիշներով: Եվ այդ մեծ նվաճումը նույնպես չէր կարող չարտացոլվել ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ, ուր շեշտված են աշխատանքային կոլեկտիվների կարևորագույն դերն ու նշանակությունը մարդկային գործունեության բոլոր ոլորտներում: Աշխատանքային կոլեկտիվները դարձել են իրենց բնագավառների տնտեսական ու սոցիալական զարգացման պլանավորման հիմնական սուբյեկտները, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման ոլորտում տարվող աշխատանքների նախաձեռնողներն ու պատասխանատվության կրողները, մարդկանց դաստիարակության, անհատի համակողմանի ու հարմոնիկ զարգացման կարևորագույն օղակները:

Մինչդեռ բուրժուական աշխարհի որոշիչ գիծը եղել և մնում է հասարակության պառակտումը հակոտնյա դասակարգերի ու բևեռների: Մի բևեռում ցոփ կյանք, մյուսում՝ թշվառություն ու տանջամահություն: Կապիտալը վամպիրի նման ծծում է աշխատավորների արյունը, մաշում նրանց նյարդերը, սիրտն ու հոգին: Միլիոնավոր մարդիկ մատնված են կարիքի, թշվառության, գործազրկության, երկյուղում են վաղվա օրվա նկատմամբ, զրկված են կուլտուրայի բարիքներից, նույնիսկ տարրական կրթությունից: Այնտեղ անտագոնիզմը թափանցում է հասարակության բոլոր ժամանակահատվածներն ու կողմերը: Մի դասակարգ ճնշում է մյուսին, մի ազգ՝ մյուսին: Շահագործողները և շահագործվողները հակադիր սոցիալական հանրություններ են: Այնտեղ կառավարման ղեկը մոնոպոլիստական խմբերի գլուխ կանգնած մի բուռ միլիոնատերերի ու միլիարդատերերի ձեռքին է: Օրենսդիր մարմինների ընտրությունների ժամանակ փոխվում են միայն անձնավորությունները, բայց հասարակարգի էությունը մնում է նույնը:

Այդպիսի անարդար կարգերի դեմ մղվող պայքարի ընթացքում է, որ ծագել և զարգացել են նոր տիպի սոցիալական հարաբերություններ՝ միասնության



ու համերաշխության հարաբերություններ: Սոցիալիզմի օրոք հասարակության և անհատի միջև հարաբերությունները հիմնված են իսկական հումանիզմի վրա: ՍՍՀՄ Սահմանադրության մեջ նշված է, որ կոմունիստական կուսակցության կողմից ղեկավարվող համաժողովրդական պետությունն իր գործունեության առանցքն է դարձնում Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական կուսակցության մանիֆեստի այն հայտնի դրույթը, թե «յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է»: Սոցիալիստական հասարակության կյանքի օրենքն է «բոլորի հոգատարությունը յուրաքանչյուրի բարօրության նկատմամբ և յուրաքանչյուրի հոգատարությունը բոլորի բարօրության նկատմամբ»: Նրա նպատակն է մարդկանց համար ռեալ հնարավորություններ ստեղծել իրենց ստեղծագործական ուժերի, ընդունակությունների և ձիրքերի գործադրման համար: Այդ ասպարեզում մեծ դեր է կատարել ու կատարում է սոցիալիստական գործարար մրցությունը, մանավանդ նյութական արտադրության մեջ: Այն աշխատավորների ակտիվության, ինքնուրույնության ծավալման ու մտահղացումների իրականացման, նրանց կոմունիստական դաստիարակության փորձված մեթոդն է: «Սոցիալիզմը,— գրում է Վ. Ի. Լենինը,— ո՛չ միայն չի մարում մրցությունը, այլ, ընդհակառակը, առաջին հնարավորություն ստեղծում իրոք լայնորեն կիրառելու այն, իրոք մասսայական չափով, իրոք աշխատավորների մեծամասնությունը ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզը, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուր են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով» (Երկեր, հ. 26, էջ 493—494):

Սոցիալիստական մրցությունը և սովետական բոլոր տասը հնգամյակներն էլ անխզելիորեն կապված են եղել միմյանց: Աշխատավորների միջև ծավալված մրցությունը հանդիսացել է սոցիալիստական հասարակության շարժիչ ուժերից և ժողովրդական տնտեսության պլանների կատարման ու գերակատարման, մարդկանց նյութական բարեկեցության մակարդակի անշեղ բարձրացման աղբյուրներից մեկը:

Միայն վերջին տասը տարիներին սովետական քաղաքացիների ռեալ եկամուտներն աճել են 1,6 անգամ, կրկնապատկվել է ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը, բարելավվել են 110 միլիոն մարդու բնակարանային պայմանները: Մեզ մոտ լայն մասշտաբով իրականացվում են սոցիալական արդարության և հավասարության վեհ սկզբունքները շնորհիվ այն բանի, որ կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը հետևողականորեն պահպանում են քաղաքացիների իրավունքներն ու շահերը, նրանց արժանապատվությունը: Մեր երկրում կատարվող բոլոր վերափոխությունների նպատակն է յուրաքանչյուր մարդու համար կյանքի իսկական մարդկային պայմանների ստեղծումը: Մյուս կողմից էլ հասարակության և անհատի միջև հարաբերությունների զարգացման իմաստն այն է, որպեսզի սովետական մարդիկ իրենց ուժերն ու ընդունակություններն ի սպաս դնեն հասարակության բարօրությանը: Հասարակությունն իր անդամներին վերապահելով և երաշխավորելով լայն իրավունքներ ու ազատություններ, միաժամանակ նրանցից պահանջում է հասարակական ու պետական պարտականությունների բարեխիղճ կատարում: Լավ հասկանալով այդ, հասարակության անդամներն անընդմեջ բարձրացնում են իրենց աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը, ժամանակին կատարում պետության, կոլեկտիվի հանդեպ ունեցած պարտավորությունները:

Սովետական հասարակության համակողմանի սոցիալական առաջընթացը, որը տեղի է ունենում բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության դաշինքի ու ժողովուրդների բարեկամության հետևողական ամրապնդման բազայի վրա, հանդիսանում է սոցիալիզմին հատուկ օբյեկտիվ օրենքների գործողության և դրանց վրա կառուցված կոմունիստական կուսակցության նպատակասլաց քաղաքականության արդյունք:

Կոմունիստական կուսակցությունը և համաժողովրդական սոցիալիստական

պետությունը բոլոր հնարավոր պայմաններն են ստեղծել, որպեսզի «...մասսայի յուրաքանչյուր ներկայացուցիչ, յուրաքանչյուր քաղաքացի... կարողանա մասնակցել թե՛ պետության օրենքների քննությանը, թե՛ իր ներկայացուցիչների ընտրությանը և թե՛ պետական օրենքների իրագործմանը կյանքում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 250)։

Լենինյան այդ հիմնարար ցուցումն ընդգրկում է սովետական դեմոկրատիայի իմաստը, մարդկանց իրավունքների և պարտականությունների վերաբերյալ իրականացվող եռմիասնական խնդիրը։ Մեր կուսակցությունը սահմանում է, որ այդ խնդրի հետևողական կենսագործումը մարդկանց ստեղծագործական ունակությունների ծավալման գլխավոր գրավականներից մեկն է։ Զարգացած սոցիալիզմի ժամանակ դեմոկրատիան ևս ընդունել է համաժողովրդական բնույթ։ Այն միշտ էլ սկզբունքորեն տարբերվել և տարբերվում է բուրժուականից։ Սոցիալիստական դեմոկրատիան հռչակում է ո՛չ միայն քաղաքական, այլև սոցիալ-տնտեսական իրավունքներ, դրանք ո՛չ միայն հռչակում է, այլև հուսալիորեն երաշխավորում, դրանց իրականացման համար ստեղծում նյութական պայմաններ։

Կապիտալի աշխարհում դեմոկրատիայի ատրիբուտներից գերազանցապես, իսկ շատ դեպքերում բացառապես օգտվում են հարուստ խավերը։ Բուրժուական երկրների օրենսդիր օրգաններում կամ չկան հասարակության բացարձակ մեծամասնությունը կազմող աշխատավոր դասակարգերի ներկայացուցիչներ, կամ եթե կան, ապա նրանք չունեն ռեալ իշխանություն, հետևաբար և վճռական դեր չեն խաղում երկրի քաղաքական կյանքում։ Կապիտալի աշխարհում չկա և չի կարող լինել իսկական ազատություն ու դեմոկրատիա, ո՛չ էլ նյութական ու հոգևոր հարստությունից օգտվելու տարրական հնարավորություններ ու ռեալ իրավունքներ, քանի որ այդ աշխարհը հիմնված է սոցիալական անհավասարության, դասակարգային և ազգային ճնշման, մարդկային արժանապատվության և պատվի ոտնահարման վրա։ Նման աշխարհի կործանման և կոմունիստական հասարակության հաղթանակի վճռական ուժը Վ. Ի. Լենինը համարում էր աշխատավոր դասակարգերի դաշինքը։ Նա գրում էր, որ կապիտալիզմը անասելի ցավեր է պատճառել մարդկությանը, իսկ իր անխուսափելի կործանման ընթացքում դեռ կարող է է՛լ ավելի «...աներևակայելի տանջանքներ պատճառել, սակայն նրան անկումից փրկել չի կարող և ոչ մի ուժ։ Նոր հասարակությունը, որը հիմնված կլինի բանվորների ու գյուղացիների դաշինքի վրա, անխուսափելի է։ Վաղ թե ուշ... նա կգա, և նրա համար, այդ հասարակության համար մենք օգնում ենք բանվորների ու գյուղացիների դաշինքի ձևեր մշակելու... Մենք այդ խնդիրը կլուծենք և բանվորների ու գյուղացիների դաշինքն այնքան ամուր կդարձնենք, որ աշխարհի երեսին ոչ մի ուժ այն չի քանդի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 203)։

Լենինի մարգարեությունն իրականություն դարձավ ՍՍՀՄ-ում և սոցիալիստական համագործակցության մյուս երկրներում։ Սովետական Միության 60-ամյա հարուստ փորձը վկայում է, որ աշխատավոր մարդիկ ոչ մի տեղ և ոչ մի ժամանակ չեն հասնի հավասարության հիմունքներով կառուցված հասարակության, եթե նրանք պայքարեն անջատ-անջատ։ Այդ մեծ նպատակը նրանք երազանքից կարող են իրականություն դարձնել միայն ու միայն ընդհանուր ջանքերով, համատեղ պայքարելով ու համատեղ աշխատանքով։

---

# ԳՏՀ-Ն ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

Մ. Գ. ՍԱՆԹՐՈՍՅԱՆ

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ որակական թռիչք է նշանավորում գիտության և նյութական արտադրության ոլորտներում, իսկ դրանով պայմանավորված տեղաշարժերը նոր պահանջներ են ներկայացնում տնտեսության կառավարմանը, որքանով որ ԳՏՀ-ն ամենից առաջ դրսևորվում է որպես տեխնոլոգիական պրոցեսների կառավարման հեղափոխություն։

Ելնելով այդ օբյեկտիվորեն դրսևորվող տեղաշարժերից, ՍՄԿԿ XXV համագումարն արդի փուլում կուսակցության տնտեսական քաղաքականության վճռական խնդիրներից մեկը համարեց տնտեսության կառավարման հետագա կատարելագործումը, շեշտելով, որ «Գիտության և տեխնիկայի ասպարեզում կատարվող հեղաշրջումը պահանջում է տնտեսական գործունեության ոճի և մեթոդների արմատական փոփոխություններ...» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 72)։

Հասարակական արտադրության կառավարման գիտական մակարդակի և դրա հիման վրա նրա արդյունավետության բարձրացման կարևորագույն նախապայմաններից մեկն արդի փուլում այն է, թե հասարակական արտադրության զարգացման գործում որքանով է ճիշտ գնահատվում գիտության դերը։ Հայտնի է, որ գիտատեխնիկական հեղափոխության ծավալման շնորհիվ այն անընդհատ բարձրանում է։ Գիտությունն առավել մեծ մասշտաբով է դառնում արտադրական, արտադրության առաջընթացը որոշող գործոն, իսկ արտադրությունը՝ գիտության նվաճումների անմիջական տեխնոլոգիական կիրառման ոլորտ։ Ինչպես կանխատեսել էր Կ. Մարքսը՝ «...խոշոր չափերով զարգանում է գիտության գիտակցական տեխնիկական կիրառումը...» (Կ. Մարքս Կապիտալ, հ. 1, էջ 796)։

Հասարակական պրակտիկան վկայում է, որ գիտության նվաճումների տեխնոլոգիական կիրառման ժամկետները վերջին 200 տարում կրճատվել են ավելի քան քառասուն, իսկ 100 տարում՝ 10 անգամ։ Այսպես, լուսանկարչական ապարատի հայտնագործումից մինչև կիրառումը տևել է 102 տարի, էլեկտրաշարժիչինը՝ 65, իսկ, ասենք, հեռուստացույցինը՝ ընդամենը 12 տարի։ Անհամեմատ զարգացել են նաև հայտնագործությունների տեմպերը։ Վերջին քառորդ դարում գիտությունը բնության և մարդու մասին իմացել է ավելին, քան մարդկությանը հաջողվել էր իմանալ դրան նախորդած իր ամբողջ գոյության ընթացքում։ Եթե անցյալ դարում խոշոր հայտնագործությունները կատարվում էին տասնամյակների ընթացքում, ապա այժմ միայն ֆիզիկան ամեն տարի մի խոշոր հայտնագործություն է անում։ Հայտնի է, որ գիտական խոշոր հայտնագործություններն այժմ ո՛չ միայն կարող են փոխել գիտության զարգացման ուղղությունները, այլև նպաստել հասարակական առաջընթացին, փոխել արտա-

գրության ու դրա տեխնոլոգիայի զարգացման կոնյունկտուրան։ Հետևաբար, էկոնոմիկայի կառավարման կատարելագործման պրոցեսում անհրաժեշտ է ճիշտ կանխատեսել գիտության զարգացման միտումները նրա մոդիֆիկացիային համապատասխան։ Դա իր հերթին պահանջում է կատարված և սպասվող նորագույն նվաճումների տեխնոլոգիական կիրառման, ունիֆիկացման, տիպականացման, ինֆորմացիայի և հետադարձ կապի նորագույն ուղիների կանխատեսում ու մշակում։

Գիտատեխնիկական հեղափոխության պահանջով հետզհետե ավելի լայնորեն են ինտեգրացվում գիտության կիրառման ոլորտներն արտադրության հետ, ավելանում են գիտաարտադրական միավորումները, որոնք ունեն գիտահետազոտական, կոնստրուկտորական, նախագծային-տեխնոլոգիական և փորձարարական-արտադրական ու սերիական արտադրության բաժիններ։ Հետևաբար, առաջանում և ձևավորվում են կոմբինացված արտադրական խոշոր ձեռնարկություններ, որոնք ունեն գիտություն-տեխնիկա-արտադրություն լրիվ ցիկլը։ Միաժամանակ ձևավորվում են նոր տեխնիկայի արմատավորման հատուկ մասնագիտացված կազմակերպություններ, որոնք ունեն կոնստրուկտորական-տեխնոլոգիական, փորձնական-փորձարարական, մոնտաժային-կարգաբերման ստորաբաժիններ, գիտական տեխնիկական փորձագետներ և կոնսուլտանտներ։

Իսկ գիտակոնստրուկտորական և տեխնոլոգիական ֆունկցիայի ինտեգրացման արդյունավետությունն ակնհայտ է։ Այսպես, օրինակ, 1976 թվականին երկրի բոլոր ձեռնարկությունների 7,1 տոկոսը կազմող արտադրական և գիտաարտադրական միավորումները տվել են իրացված արտադրանքի 40,5 տոկոսը (տե՛ս Народное хозяйство СССР за 60 лет, М., «Статистика», 1977, стр. 170)։ Հասկանալի է, որ արտադրության կազմակերպման այդ ձևն ունի զարգանալու միտում։ Դրա վկայությունն է այն փաստը, որ եթե 1970 թ. երկրում կար 608 այդպիսի միավորում, ապա 1976 թ. դրանց թիվը հասավ 3312-ի։ Եվ պատահական չէ, որ իններորդ հնգամյակում արդյունաբերական արտադրական ֆոնդերի 51 տոկոս աճի պայմաններում արտադրական ձեռնարկությունների թիվը կրճատվել է 2,1 հազարով (տե՛ս նույն տեղը, էջ 170 և Народное хозяйство СССР в 1975 г., М., 1976, стр. 219)։

Հասարակական արտադրության օբյեկտիվ միտումին և գիտատեխնիկական հեղափոխության պահանջներին համապատասխան անհրաժեշտ է կատարելագործել գիտության և արտադրության միացյալ կառավարումը, որը գիտատեխնիկական առաջընթացի արագացման որոշիչ պայմաններից է, իսկ վերջինիս հիման վրա միայն, ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում, «...կարող են լուծվել սոցիալական հեղափոխության վերջնական խնդիրները, կարող է կառուցվել կոմունիստական հասարակարգ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 70)։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար պահանջվում է կատարված տեղաշարժերին համապատասխան կատարելագործել գիտության և տեխնիկայի զարգացման պլանավորումն ու ֆինանսավորումը, դրանց նվաճումների ներդրումը արտադրության մեջ, մյուս կողմից՝ գիտության և արտադրության ինտեգրացիայի համապատասխան ինտեգրացնել այդ երկու բնագավառների պլանավորումը և մշակել կառավարման միասնական սիստեմ։

Նման խնդրի լուծման բարենպաստ պայմաններ ստեղծվեցին պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի կիրառման շնորհիվ, երբ ընդլայնվեցին միութենական մասշտաբով միասնական ճյուղային քաղաքականության իրականացման հնարավորությունները։ Դա թույլ է տալիս գիտահետազոտական գործունեությունը ծառայեցնել ժողովրդատնտեսական կարևորագույն նշանակություն ունեցող պրոբլեմների լուծմանը և արագացնել ձեռք բերված նվաճումների արագ ներդրումը, դրանով իսկ բարձրացնել գիտական ուժերի և նյութական-ռեսուրսների օգտագործման արդյունավետությունն ու կատարված ծախսերի հատույցը։



Հասարակական արտադրության մեջ ԳՏՀ-ի հարուցած տեղաշարժերի հետ մեկտեղ ընդլայնվում է արտադրության դիֆերենցիացիան։ Մյուս կողմից, նրա զարգացման պահանջին համապատասխան, խորանում են փոխադարձ միջճյուղային կապերն ու ինտեգրացիան։ Այժմ մեր երկրի էկոնոմիկան իրենից ներկայացնում է մի վիթխարի տնտեսական օրգանիզմ՝ 1347 մլրդ ռուբլու (1973 թ. համադրելի գներով) հիմնական և 870 մլրդ ռուբլու արտադրական հիմնական ֆոնդերով, 899,8 մլրդ ռուբլու (փաստացի գործող գներով) համախառն հասարակական արտադրանքով և 380 մլրդ ռուբլու ազգային եկամուտով (տե՛ս Народное хозяйство СССР за 60 лет, стр. 80)։ Դա մի էկոնոմիկա է, որն օրական արտադրում է մոտ 3,2 մլրդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 1,5 մլն տոննա նավթ, 937 մլն խմ գազ, ավելի քան 2 մլն տոննա քարածուխ, 300 հազար տոննա չուգուն, 417 հազար տոննա պողպատ, մոտ 5675 ավտոմեքենա, 1553 տրակտոր, 29,2 մլն քմ. գործվածք, ավելի քան 2 մլն զույգ կոշիկ և այլն (տես նույն տեղը, էջ 31)։

Զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի բնորոշ կողմերից մեկը նրա ինտենսիվ զարգացումն է։ Այդ է վկայում այն փաստը, որ 1971—1975 թթ. ինչպես և 1976 թ. ազգային եկամտի աճի 80 տոկոսն ապահովվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ (տե՛ս նույն տեղը, էջ 78)։

Արտադրության տեխնիկական բազիսում կատարվող դրական տեղաշարժերին նպաստում է նոր տեխնիկայի ներդրման նպատակով կատարվող հատկացումների աճը, որը միայն իններորդ հնգամյակում ավելացել է 2,5 մլրդ ռուբլով և 1976 թ. հասել 7,9 մլրդ ռուբլու։ 1950—1955 թթ. մշակվել և ներդրվել էր 4,3 հազար նոր տիպի մեքենա, սարքավորում և գործիք, իսկ իններորդ հնգամյակում՝ 20 հազար, լրիվ մեքենայացված հոսքային գծերի թիվը 1965 թ. եղած 43 հազարից 1975 թ. հասել է 114 հազարի (տե՛ս նույն տեղը, էջ 148, 150)։

Ժողովրդական տնտեսության մասշտաբների մեծացմանը, ճյուղավորմանը և կատարելագործմանը համապատասխան բարդանում են կառավարման խնդիրները։ Դրանք արդյունավետ լուծելու ուղիներից մեկը այդ ֆունկցիայի իրականացման պրոցեսում նորագույն տեխնիկայի կիրառումն է։ Ելնելով այս պահանջից, կուսակցությունը վերջին տարիներին մեծ ուշադրություն է հատկացնում կառավարման ավտոմատացման միջոցների արտադրության և դրանց կիրառման ոլորտների ընդլայնմանը։ Այսպես, ութերորդ հնգամյակում ստեղծվել էր 414 ավտոմատ կառավարման սիստեմ, իսկ հետագա հինգ տարում՝ 2364-ը։ Ըստ որում, արդեն գործող 3073 սիստեմներից հազարից ավելին արտադրական խոշոր ձեռնարկություններում են, մոտ 919-ը՝ տեխնոլոգիական պրոցեսներում, 761-ը՝ տերիտորիալ կազմակերպություններում, միայն 195-ը՝ մինիստրություններում և գերատեսչություններում, 141-ը՝ ինֆորմացիայի վերամշակման պրոցեսում (տե՛ս նույն տեղը, էջ 149)։ Արդեն ստեղծվում են համապետական նշանակություն ունեցող կառավարման ավտոմատ սիստեմներ։

Ավտոմատ կառավարման սիստեմում կիրառվող «բանականացված տեխնիկան» օգնում է պահեստավորել ինֆորմացիան, կատարել այս կամ այն արտադրանքի թողարկման համար անհրաժեշտ կոմպոնենտների ընտրություն, ապահովել արտադրական պլանների համաձայնեցումը, պահանջարկի և առաջարկի հաշվեկշիռը՝ դրանց տարբերակներից ընտրելով օպտիմալը, մոդելավորել արտադրության, ժողովրդական տնտեսության ճյուղերը և ամբողջ ժողովրդական տնտեսությունը, պարզել նաև արտադրության տեղաբաշխման օպտիմալ տարբերակը՝ հաշվի առնելով էկոլոգիական, աշխատանքի միջազգային բաժանման, սոցիալ-դեմոգրաֆիական պրոբլեմները և այլն։

Կուսակցությունն առաջնային խնդիր է համարում էկոնոմիկայի պլանավորման գիտական մակարդակի բարձրացումը։ Այդ նպատակով, հատկապես վերջին մեկուկես տասնամյակում, քիչ աշխատանք չի կատարվել. բարելավվել են կառավարման ճյուղային սկզբունքը, կազմակերպական կառուցվածքը, պլանների տնտեսական ու սոցիալական ասպեկտների զուգակցումը, ստեղծվում

ման չափանիշ դարձնելով հենց այդ պարտավորությունների անթերի կատարումը։

Տնտեսական փոխադարձ պայմանագրային պարտավորությունների մշակման և անթերի կատարման գործում նյութական խթանները օգտագործելու միջոցով արտադրական կոլեկտիվների ակտիվության ու նախաձեռնության բարձրացումն առավել մեծ նշանակություն է ձեռք բերում այժմ՝ արտադրության համակենտրոնացման, մասնագիտացման և կոոպերացման շրջանում։

ԳՏՀ-ի ծավալման շնորհիվ տնտեսական, սոցիալ-քաղաքական և այլ գործոնների ազդեցությամբ առաջացող առանձնահատուկ պրոբլեմների լուծման համար պահանջվում է շատ մինիստրությունների և գերատեսչությունների ուժերի միավորում, հարկ է լինում մշակել համապարփակ ծրագրեր։ Նշանակում է՝ պլանավորման կատարելագործման ուղիներից մեկն էլ ծրագրային մոտեցումն է, ճյուղային և գերատեսչական կապերի կոորդինացումը այս կամ այն խոշոր, ժողովրդատնտեսական վճռական նշանակություն ունեցող պրոբլեմը լուծելու համար։

Կառավարման կատարելագործման խնդիրների մեջ պլանավորման գիտական մակարդակի բարձրացման համար հեռանկարային, ծրագրային, նպատակային, սիստեմային և կոմպլեքսային մոտեցումը բխում է սոցիալիստական էկոնոմիկայի էությունից, նրա պլանային զարգացման օրենքի պահանջից։ Այդպիսի մոտեցում եղել է սոցիալիզմի կառուցման բոլոր փուլերում, սակայն այժմ, զարգացած սոցիալիզմի և գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, նման մոտեցումը վճռական է ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերի արագացման, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման համար։

Կառավարման կատարելագործման միջոցներից մեկն էլ տնտեսական խթանների և լծակների (տնտհաշվարկ, շահույթ, գին, պարգև, վարկ և այլ տնտեսական կատեգորիաներ) առավել հմուտ օգտագործումն է։ «Այլ խոսքով,— ասված է ՍՄԿԿ XXV համագումարին Կենտկոմի տված հաշվետվության մեջ,— կատարելագործման կարիք ունի ցուցանիշների ամբողջ սիստեմը, որոնք ընկած են մինիստրությունների, միավորումների և ձեռնարկությունների գործունեության գնահատման, նախ և առաջ՝ նրանց աշխատանքի արդյունավետության ու որակի հիմքում» (Նույն տեղը, էջ 89)։ Հիմնական խնդիրն է տնտեսական խթանները ծառայեցնել եղած ռեզերվների լրիվ օգտագործմանը, արտադրության արդյունավետությունը, աշխատանքի արտադրողականությունը, արդյունքի որակը բարձրացնելու, նոր տեխնիկան ու տեխնոլոգիան ներդնելու, կապիտալ հատկացումները, աշխատանքային ու նյութական ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու, ձեռնարկությունների շահութաբերությունը բարձրացնելու նպատակին։ Այս խնդիրների լուծման պրոցեսում գլխավորը, անշուշտ, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումն է։ Հետևաբար, որակական ցուցանիշի՝ որպես մյուս բոլոր ցուցանիշների հանրագումարային արդյունքի, բարձրացմանը պետք է ծառայեցնել բարոյական և նյութական խթանները։

Վերջապես, կարևոր խնդիր է կառավարման կազմակերպական կառուցվածքի և մեթոդների կատարելագործումը՝ սոցիալիստական հասարակության կառավարման գլխավոր սկզբունքի՝ դեմոկրատական ցենտրալիզմի հետևողական կիրառմամբ։ Կառավարման խնդիրների բարդացմանը զուգընթաց այդ ֆունկցիայի դեմոկրատացումը նոր հասարակարգի օրինաչափություններից է։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում այն դրսևորվում է առավել բազմակողմանի։ Անձնական, կոլեկտիվ և հասարակական շահերի ներդաշնակումը և դրանց զուգակցման տնտեսական հիմքի ստեղծումը օբյեկտիվ նախադրյալ են աշխատավորական լայն զանգվածներին կառավարման ֆունկցիային մասնակից դարձնելու համար։ Հաշվի առնելով այս հանգամանքը, կուսակցությունը երկմիասնական խնդիր է դնում՝ զարգացնել ցենտրալիզմը, արգելք հարուցելով գերատեսչական և տեղայնական միտումներին, մյուս կողմից՝ զարգացնել դե-



մոկրատական հիմունքները, արտադրական կոլեկտիվների նախաձեռնությունը, ապահովել օպերատիվություն ու ճկունություն՝ որոշումներ կայացնելիս։

Գիտատեխնիկական հեղափոխության ծավալման շնորհիվ այս օրինաչափությունը դրսևորվում է առավել արագ և բազմակողմանի։ Միաժամանակ արտադրության նյութատեխնիկական բազիսի կատարելագործման շնորհիվ կենդանի աշխատուժն աստիճանաբար դադարում է արտադրության բազիս լինելուց, իր տեղը զիջում է տեխնիկային, դրան համապատասխան փոխվում է աշխատանքի բնույթը։ Հետևաբար, մարդու կառավարման ֆունկցիայի կիրառման հնարավորությունը մեծանում է և՛ ծավալային (քանակական), և՛ որակական (զարգացածության) տեսակետից։ Եթե նկատի ունենանք, որ հասարակական արտադրությունը ևս արագորեն աճում է, այսինքն մեծանում է կառավարման օբյեկտը, ապա պարզ կլինի, որ այդ ֆունկցիայի իրականացման դեմոկրատացումը բխում է օրինաչափորեն ստեղծված օբյեկտիվ և սուբյեկտիվ նախադրյալներից։ Նկատի ունենալով այս տենդենցը, Վ. Ի. Լենինը տակավին կուսակցության XI համագումարում նշել է. «...մենք կարող ենք կառավարել միայն այն ժամանակ, երբ ճիշտ ենք արտահայտում այն, ինչ որ գիտակցում է ժողովուրդը» (Երկեր, հ. 33, էջ 360—361)։ Մի այլ առիթով նա շեշտում է, որ կառավարել պետք է սովորել մասսաներից, քանի որ մարդիկ մարմնավորում են մեծ ու փոքր մտահղացումներ։ Աշխատավորական լայն զանգվածների ակտիվ մասնակցությամբ հասարակության կառավարումը հնարավոր է միայն սոցիալիզմի պայմաններում, որովհետև նրա հիմքը արտադրության միջոցների նկատմամբ համաժողովրդական սեփականությունն է։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ «...միմիայն սոցիալիզմից է սկսվելու արագ, իրական, իսկապես մասսայական, բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական ու անձնական կյանքի բոլոր ասպարեզներում» (Նույն տեղը, հ. 25, էջ 615)։

Լենինյան կուրսին հավատարիմ, կոմունիստական կուսակցությունը հետևողականորեն վարում է կառավարումը դեմոկրատացնելու քաղաքականություն։ Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ նոր Սահմանադրության համաժողովրդական քննարկման արդյունքների մասին իր զեկուցման մեջ այդ կապակցությամբ նշում է, թե մեր պետական ու հասարակական զարգացման դիալեկտիկայի էությունն այն է, «...որ սոցիալիստական պետության զարգացման ու կատարելագործման համեմատ միլիոնավոր քաղաքացիներ ավելի ու ավելի ակտիվորեն են մասնակցում իշխանության, ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքին, արտադրության ու բաշխման կառավարմանը, սոցիալական ու կուլտուրական քաղաքականությանը, արդարադատության իրականացմանը»։

Երկրի կառավարման գործում ամեն մի կարևորագույն հարց լուծելիս կուսակցությունն ու կառավարությունը խորհրդակցում են ժողովրդի հետ՝ նրա քննարկմանը ներկայացնելով այս կամ այն ծրագրի, որոշման նախագիծը՝ լինի դա ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային պլան, թե որևէ նոր օրենքի նախագիծ։ Եվ ժողովուրդը, սովետական մարդիկ բարձր ակտիվությամբ մասնակցում են քննարկմանը, ասում իրենց խոսքը, որովհետև այն լսվում է, հաշվի առնվում և իրագործվում։ Դրա փայլուն վկայությունն էր ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկումը, որին մասնակցեց 140 մլն մարդ՝ անելով 400 հազար առաջարկություն, որոնց հիման վրա սահմանադրական հանձնաժողովը փոփոխություններ մտցրեց 110 հոդվածներում և ավելացրեց մեկ հոդված։ Սա իրավամբ հաստատում է, որ Սահմանադրությունը կերտեց ինքը՝ սովետական ժողովուրդը։ Դրանում արտահայտվեց սովետական մարդու հիմնական բնորոշ գիծը՝ սոցիալական ակտիվությունը։ ՍՍՀՄ նոր Սահմանադրությունն առավել մեծ հնարավորություններ է ընձեռում կառավարման դեմոկրատացման համար։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում, որի բնորոշ կողմերից մեկը իսկական դեմոկրատիան է, «ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն պետական և հասարակական գործերի կառավարմանը, համապետական և տեղական նշանակություն ունեցող օրենքների և

որոշումների քննարկմանն ու ընդունմանը մասնակցելու իրավունք» (ՍՍՀՄ Սահմանադրություն (Հիմնական օրենք) էջ 7)։

Սրանք ռեալ իրավունքներ են՝ սոցիալիստական հասարակության օբյեկտիվ նախադրյալներով հիմնավորված, նրա զարգացման օրինաչափություններով պայմանավորված։ Դա հաստատվում է սովետական իրականությամբ, աշխատավորական զանգվածների քաղաքական ու ստեղծագործական ակտիվության աճով, որն ամենից առաջ արտահայտվում է երկրի կառավարմանը մասնակցելու ձևով։ Իշխանության մարմիններում ընտրված 2,2 միլիոն դեպուտատներ, նրանց օժանդակող հասարակական հիմունքներով գործող մշտական հանձնաժողովներում ընդգրկված ավելի քան 25 միլիոն ակտիվիստներ անցնում են քաղաքական կոփվածության և պետական կառավարման դպրոց։ Ձեռնարկությունների կոլեկտիվների արտադրական, ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովներում, ժողովրդական վերահսկողության հասարակական հիմունքներով գործող օղակներում ընդգրկված միլիոնավոր աշխատավորներ, երիտասարդական և հասարակական այլ կազմակերպություններ, տեխնիկական ու ստեղծագործական միությունների ու ընկերությունների անդամներ, գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ կատարում են երկրի կառավարման և կազմակերպման ֆունկցիաներ։

Այս օրինաչափություններից բխող պահանջները կատարելու համար հոգ է տարվում աշխատավորների հասարակական, մասնավորապես, տնտեսագիտական գիտելիքների մակարդակն անընդհատ բարձրացնելու մասին։ Ինչպես այդ ուղիով, այնպես էլ օբյեկտիվ գործոնների ազդեցությամբ նրանք ստանում են այն անհրաժեշտ գիտելիքները, որոնք հնարավորություն են ընձեռում ակտիվորեն մասնակցելու արտադրության կառավարմանը։ Իսկ որքան մասսաներն արդյունավետ են մասնակցում կառավարմանը, այնքան բազմակողմանի են դրսևորվում սոցիալիզմի առավելությունները, արագանում է տնտեսական և սոցիալական առաջընթացը։

«Սովետական մարդկանց կողմից կոմունիզմի կառուցման ավելի ու ավելի բարդ ու պատասխանատու խնդիրների լուծման համեմատ,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ իններորդ գումարման Գերագույն սովետի յոթերորդ նստաշրջանում,— կոմունիստական կուսակցության դերն ավելի ու ավելի կմեծանա։ Եվ դա տանում է դեպի ոչ թե սոցիալիստական դեմոկրատիայի սահմանափակում, այլ դեպի նրա ավելի ու ավելի խոր զարգացում՝ մեր կուսակցության ծրագրին լրիվ համապատասխան»։

---

# ՄԻՇՏ ՊԱՅՔԱՐԻ ԱՎԱՆԳԱՐԴՈՒՄ

Գ. Ա. ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՀ կենտվիճվարչության պետ

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխության շնորհիվ, մարդկության պատմության մեջ առաջին անգամ, վերացան մարդու շահագործումը մարդու կողմից, սոցիալական և ազգային ճնշումը։ Հեղափոխության կարևոր նվաճումներից մեկը կանանց ազատագրումն էր։ Այն առաջին անգամ վերացրեց և կանանց ճնշումը, նրանց ազատեց ամեն տեսակի ստրկությունից ու նվաստացումից։ Սոցիալիստական հասարակարգի հաստատումով ռեալ հնարավորություններ ստեղծվեցին՝ կյանքում մարմնավորելու հասարակական և հոգևոր ազատագրման վերաբերյալ կանանց վաղեմի երազանքը։ Միկընդմիշտ վերացվեցին նրանց իրավունքի նախկին սահմանափակումները։

Մեծ Հոկտեմբերը կանանց դարձրեց հասարակության լիիրավ անդամներ՝ ներգրավելով հասարակական արտադրության ոլորտը։ Եվ դա կարևոր նշանակություն ունեցավ, որովհետև, ինչպես շեշտել է Վ. Ի. Լենինը, կնոջ լիակատար ազատության և տղամարդուն իրականում հավասարվելու համար հարկավոր է, որպեսզի տնտեսությունը լինի հանրային և կինը մասնակցի ընդհանուր արտադրողական աշխատանքին։

Սովետական իշխանության առաջին իսկ օրերից, օրենսդրական առաջին ակտով՝ բանվորագյուղացիական կառավարության կազմավորման վերաբերյալ դեկրետով, վավերացվեց կնոջ և տղամարդու իրավունքների հավասարությունը։ Իր ելույթներից մեկում Վ. Ի. Լենինը մատնանշել է կանանց հարցի լուծման հիմնական եղանակները. «Չի կարող սոցիալիստական հեղաշրջում լինել, եթե աշխատավոր կանանց հսկայական մասը նրան զգալի մասնակցություն ցույց չտա» (Երկեր, հ. 28, էջ 218)։

Կենսագործելով սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը՝ կուսակցությունը սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման, մեծ մասշտաբներով կուլտուրական հեղափոխության իրականացման կուրս վերցրեց։ Արդյունաբերության և գյուղատնտեսության վերելքի շնորհիվ մեծացավ զարգացող տնտեսության բանվորական ուժի պահանջը։ Այդ ժամանակաշրջանում վերացավ անգործությունը. կանայք, ըստ էության, հանդիսացան այն խոշոր ռեզերվը, որի շնորհիվ էկոնոմիկան կարողացավ նոր կենսաբեր ուժեր ստանալ արագ զարգացման համար։

Սակայն սովետական իշխանության առաջին տարիներին բանվորուհիների ու գեղջկուհիների ճնշող մեծամասնության անգրագիտությունը խանգարում էր նրանց մասնակցությանը հասարակական-քաղաքական և պետական գործունեությանը։ Հաղթահարելով վիթխարի դժվարություններ՝ կուսակցությունը համառորեն և հաստատակամորեն վերացրեց անգրագիտությունը, կանանց ակտիվորեն հաղորդակից դարձրեց հասարակական-քաղաքական գործունեությանը, պետական կառավարմանը։ Անգրագիտության վերացման հետ միասին խնդիր դրվեց օգնելու աշխատավորուհիներին, որպեսզի նրանք ձեռք բերեն նոր մասնագիտություններ և բարձրացնեն իրենց մասնագիտական որակավորումը։

Տակավին առաջին հնգամյակի տարիներին երկրում կանանց հանրակրթական և մասնագիտական մակարդակի բարձրացման հաջողություններն ակնհայտ էին։ 1925/26—1931/32 ուսումնական տարիներին բանֆակներում սովորող կանանց թիվը 6,8 հազարից հասավ մինչև 117,7 հազարի, տեխնիկումներում՝ 71,5 հազարից 272,3 հազարի, բուհերում և բարձրագույն տեխնիկական ուսումնական հաստատություններում՝ 51 հազարից 148 հազարի։ 1928 թ. բոլոր միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների 37,6 տոկոսը կանայք էին, իսկ 1938 թ. այն արդեն հասավ 51,6 տոկոսի։ Հայրենական պատերազմի սկզբին մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ աշխատում էին 44 հազար կին ինժեներներ։ Գիտության բոլոր բնագավառների մասնագետների 36 տոկոսը կանայք էին։

Կանայք խոշոր ավանդ են ներդրել սոցիալիստական շինարարության, նոր կյանքի ստեղծման բոլոր բնագավառներում։ Դա արտահայտվեց այն բարձր հեղինակությամբ, որ նվաճեցին նրանք ժողովրդի մոտ իրենց անձնուրաց աշխատանքով, հասարակական ասպարեզում իրենց ծավալած ազնիվ գործունեությամբ։

Ֆաշիստական Գերմանիայի ոխտադրուժ հարձակումն ը—ատեց սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքը։ Երկիրը վերածվեց միասնական մարտական ճամբարի։ Հիտլերյան ագրեսիայի ծանր տարիներին սովետական կանայք իրենց հերոսական, անձնուրաց աշխատանքով և մարտական սխրագործություններով պաշտպանեցին սոցիալիստական հայրենիքը, հսկայական ներդրում արին նրա ազատության ու անկախության համար մղվող պայքարում։ Արժեքավորելով սովետական կանանց ծառայությունները՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևն ասել է. «Մեր խոնարհ ողջույնը սովետական կանանց, որոնք ապշեցուցիչ արիություն հանդես բերեցին պատերազմի դժնդակ տարիներին։ Դեռ երբեք այնպիսի ուժով, ինչպես պատերազմի օրերին, չէին դրսևորվել մեր սովետական կանանց հոգու վեհությունը և կամքի տոկունությունը, հայրենիքի հանդեպ նրանց նվիրվածությունը, հավատարմությունը, սերը, նրանց անսահման համառությունն աշխատանքում և հերոսությունը ռազմաճակատում» (Լենինյան կուրսով, հ. 1, էջ 182—183)։

Ժողովուրդը միշտ կհիշի սովետական կին-հայրենասերի, աշխատավորուհու, մարտիկի, զինվորի մոր և կնոջ կրած անհավատալի տառապանքները թիկունքում և ռազմաճակատում։

Վերջին երեք տասնամյակում, հասուն սոցիալիզմի կառուցման և աստիճանաբար կոմունիստական հասարակության նրա վերաճման համար մղվող պայքարում սովետական ժողովրդի ձեռք բերած հաղթանակների մեջ կանայք ևս մեծ ավանդ են ներդրել։ Հետպատերազմյան տարիներին նշանակալի չափով ավելացավ արդյունաբերության, գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում զբաղված կանանց թիվը։ Ընդ որում, այդ աճն ապահովվեց սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը զուգընթաց։ Գիտատեխնիկական հեղափոխությունը խոր փոփոխություններ մտցրեց ո՛չ միայն արդյունաբերության, այլև գյուղատնտեսական արտադրության ոլորտում զբաղված կանանց աշխատանքում։

Սոցիալիզմի օրինաչափություններից մեկն այն է, որ լայն ասպարեզ է բացվում կանանց առաջքաշման, նրանց ուժերի ճիշտ օգտագործման համար։ Հատկապես վերջին տասնամյակներին նկատելիորեն ընդլայնվեց կանանց մասնակցությունը ժողովրդական տնտեսության ղեկավար աշխատանքներում։ Վ. Ի. Լենինը շեշտում էր. «...հարկավոր է, որպեսզի կին-բանվորուհիները ավելի ու ավելի մասնակցեն և՛ հասարակական ձեռնարկությունների կառավարմանը, և՛ պետության կառավարմանը» (Երկեր, հ. 30, էջ 473)։ Այդ ցանկությունը դարձել է իրողություն։ Հատկանշական է, որ այժմ մեր երկրում 4.000-ից ավելի կանայք արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներ են, 200 հազարից ավելին՝ արտադրամասերի, բաժինների, լաբորատորիաների պետեր և այլն։ Երկրի արդյունաբերական ձեռնարկություններում կան



ավելի քան 200 հազար կին-վարպետներ։ Քիչ չեն նաև կոլտնտեսությունների կին նախագահներն ու սովխոզների դիրեկտորները։

Մեծ է կանանց դերը սովետական հասարակության ղեկավար և ուղղություն ցույց տվող ուժի՝ կոմունիստական կուսակցության, գործունեության մեջ, արհմիութենական, կոոպերատիվ, երիտասարդական, մասսայական-հասարակական այլ կազմակերպություններում։ Կուսակցական և կոմերիտական շատ կազմակերպություններ կանայք են ղեկավարում։ Կազմելով արհմիության անդամների թվի կեսը՝ աշխատավորուհիները ղեկավար պոստեր են գրավում և արհմիութենական մարմիններում։

Այսպիսով, ջանադրաբար գործելով պետական օրենսդրական և իշխանության գործադիր օրգաններում, կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպություններում, կոոպերատիվներում՝ ժամանակակից կինը ակտիվորեն մասնակցում է երկրի պետական և հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառների գործունեությանը, տղամարդուն հավասար որոշում կենսական հարցեր, դաստիարակչական մեծ աշխատանք կատարում նոր մարդու՝ կոմունիզմ կառուցողի ձևավորման նպատակով։

Մեր երկրի տնտեսական և սոցիալական առաջընթացի իրականացման կարևորագույն յուրահատկություններից մեկը միլիոնավոր մարդկանց ստեղծագործական նախաձեռնության աճող վերելքն է, որը մարմնավորվում է համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ։ Ներգործելով ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման ընթացքի վրա՝ մրցությունը դառնում է կոմունիստական շինարարության իսկական ժողովրդական մեթոդ։ Կանայք անգնահատելի ավանդ են ներդնում սոցիալիստական մրցության ծավալման գործում, բարձր արդյունավետության ու որակի համար մղվող պայքարում։

Կուսակցության XXV համագումարի մշակած՝ սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման սոցիալ-տնտեսական ծրագրով կանանց համար ստեղծվել են առավել նպաստավոր պայմաններ։ Հնարավոր է լինում հասարակական արտադրության մեջ նրանց մասնակցությունը զուգակցել մանուկների դաստիարակության ու ընտանեկան պարտականությունների կատարման հետ։

Սոցիալիզմն ազատագրեց անծայրածիր Սովետական Միության, նմանապես և սոցիալիստական երկրների բոլոր ժողովուրդների կանանց։ Սակայն այդ պրոցեսը կատարվում էր բազում արգելքների հաղթահարմամբ։ Հատկապես դժվար էր ընթանում ազգային հանրապետությունների կանանց ազատագրումը։ Բացառություն չէր նաև մեր հանրապետությունը՝ Հայաստանը։ Կոմունիստական կուսակցությունը սիստեմատիկաբար հոգում էր ազգային հանրապետությունների կանանց մասին և արագացնում նրանց ներգրավումը տնտեսական ու քաղաքական կյանքի ոլորտները։

Հայտնի է, որ նախահեղափոխական Հայաստանի կանայք ո՛չ միայն չունեին ընտրելու իրավունք, այլև լրիվ զրկված էին քաղաքացիական և քաղաքական իրավունքներից։ Նրանց մեծամասնությունն անգրագետ էր։ Նախահեղափոխական Հայաստանում կատարված միակ մարդահամարի (1897 թ.) տվյալներով ——— ——— կանանց շրջանում անգրագիտությունը հասնում էր 97 տոկոսի։ Բոլոր երեխաների չորս հինգերորդը, իսկ աղջիկներն ավելի շատ, հնարավորություն չունեին սովորելու դպրոցներում։ Բավարար հիմքերի վրա չէր նաև բնակչության բուժսպասարկման գործը։ Շատ էր 1—5 տարեկան երեխաների մահացությունը։

Հայաստանում սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից մեծ աշխատանք տարվեց բնակչության անգրագիտության վերացման նպատակով։ Ամենուրեք կազմակերպվեցին լիկկայաններ, որի շնորհիվ 1926 թ. վերջին արդեն հանրապետության բնակչության 38,7 տոկոսը գրագետ էր, նրանց 22,7 տոկոսը կանայք էին։ Բայց հանրապետության կուսակցական և սովետական մարմինների հիմնական խնդիրն էր՝ շարունակել պայքարն անգրագիտության դեմ։ Ուստի, լայն թափով ծավալվեց դպրոցական և ուսումնական այլ հաստատությունների օբյեկտների շինարարությունը։

Պետությունն սկսեց համակողմանի զբաղվել նաև ժողովրդի առողջության պահպանությամբ: Մինչհեղափոխական Հայաստանում բնակչությունը զրկված էր ամենատարրական բուժօգնությունից: Աշխատավորության առողջության պահպանման համար ստեղծվեց հիվանդանոցների, պոլիկլինիկաների, սանատորիաների, հանգստյան տների լայն ցանց: Այդ հիմնարկությունները համալրվեցին մասնագետ բժիշկներով:

Վերջին տարիներին քանակական և որակական նշանակալի փոփոխություններ են կատարվել Սովետական Հայաստանի բնակչության կառուցվածքում: Ուշագրավն այն է, որ հանրապետության կանանց ավելի քան 90 տոկոսը ծնվել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո: Այժմ հանրապետության կանանց կյանքի տևողությունը մոտ 72 տարի է: Ավելացել է երկարակյացների թիվը. 1970 թ. մարդահամարի տվյալներով եղել է 90—100 տարեկան 4.310 երկարակյաց, այդ թվում՝ 2.840 կին, նրանցից 100 և բարձր տարիք ունեցողները, համապատասխանաբար՝ 607 և 397 հոգի:

Վերջին տարիներին աճել է նաև բնակչության 1000 մարդուն ընկնող ամուսնությունների թիվը: Եթե 1970 թ. գրանցվել է 7,3 ամուսնություն, ապա 1977 թ.՝ 9,3, ընդ որում՝ ամուսնալուծությունների թիվը մնացել է 1970 թ. մակարդակին, մոտավորապես 1000 հոգուց մեկն է ամուսնալուծվել:

Սովետական իշխանության հաստատման ու ամրապնդման շնորհիվ որակական լուրջ փոփոխություններ են կատարվել Հայաստանի կանանց կյանքում: Հավասարվելով տղամարդուն՝ կինը դարձել է մեր հասարակության լիիրավ անդամը: Կոմունիզմ կառուցող ակտիվ կինը տղամարդու հետ կիսում է աշխատանքային հաջողությունները: Բավական է ասել, որ հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում զբաղված բանվոր-ծառայողների ընդհանուր թվից ավելի քան 500 հազարը կամ 45,9 տոկոսը կանայք են:

Երկրում ծավալված սոցիալիստական մրցությունը վիթխարի խթան հանդիսացավ մասսաների ստեղծագործական ակտիվության, նոր ռեզերվների հայտաբերման, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման համար: Մեր հանրապետության շատ աշխատավորուհիներ դարձել են այդ խնդիրների լուծմանը նվիրված հայրենասիրական նախաձեռնությունների հեղինակներ: Այսօր անկեղծորեն հպարտանում ենք նրանց աշխատանքային նվաճումներով: Կանանց հերոսական, անձնուրաց գործերի, նրանց կողմից աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դրսևորման օրինակներ կարելի է շատ թվարկել: Երևանի նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատի մանածագործ Ամֆիրա Դալլաքյանը պարտավորվել է հնգամյակի պլանը կատարել ՍՍՀՄ Սահմանադրության առաջին տարեդարձի օրը՝ 1978 թ. հոկտեմբերի 7-ին: Առաջավոր բանվորուհու նախընթաց ժամանակաշրջանի ողջ գործունեությունը վկայում է, որ նա իր խոսքի տերը կլինի: Արտադրական հնարանքների կիրառման շնորհիվ Ա. Դալլաքյանն սպասարկում է 12 հաստոց, միաժամանակ կատարում 7—8 ճյուղային նորմա: Հետևելով նրա օրինակին՝ մանածագործներն զգալիորեն բարձրացրել են աշխատանքի արտադրողականությունը և կարողացել բանվորական ուժի 25 տոկոսն ազատել այլ արտադրամասերում օգտագործելու համար:

Ա. Դալլաքյանը նաև ռացիոնալիզատորական առաջարկությունների հեղինակ է: Նրա առաջարկություններից մեկի արմատավորմամբ նվազեցին պարապուրդները և տնտեսական մեծ արդյունք ստացվեց: Ամֆիրա Դալլաքյանի բեղմնավոր գործունեությունն աննկատ չի մնացել, գնահատվել է ըստ արժանվույն. ութերորդ հնգամյակի սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար նա պարգևատրվել է «Պատվո Նշան», իսկ իններորդ հնգամյակի համար՝ «Աշխատանքային փառքի» երրորդ աստիճանի շքանշանով: Նա կոմբինատի կուսկոմիտեի անդամ է, ՀԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու:



Երևանի ռելեի գործարանի գալվանական արտադրամասի լցնող բանվորուհի Բուրաստան Վարդիկյանը տասներորդ հնգամյակի երկրորդ տարվա պարտավորությունները կատարել է ժամկետից շուտ՝ հուլիսի 15-ին: Նա «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք» շարժման նախաձեռնողն է: Ռացիոնալ կերպով օգտագործելով արտադրության ներքին ռեզերվները՝ Բ. Վարդիկյանը 1977 թ. տնտեսեց ութ հազար ռուբլու հումք ու նյութեր և մի ամբողջ ամիս արտադրանք թողարկեց խնայված հումքի հաշվին: Աշխատելով «Ոչ մի ետ մնացող կողքիդ» նշանաբանով՝ Բ. Վարդիկյանն իր արտադրական հարուստ փորձը փոխանցում է երիտասարդներին. բավական է ասել, որ նա իր աշխատանքային գործունեության ընթացքում ուսուցել է 25 նորեկ բանվորների: Անընդհատ կատարելագործելով և հարստացնելով իր գիտելիքները՝ Վարդիկյանը ռացիոնալիզատորական առաջարկներով արժանի ներդրում է անում արտադրության արդյունավետության բարձրացման գործում: Նրա առաջարկով կիրառվում է էլեկտրալամպերի ցոկոլացման նոր առաջավոր մեթոդ, որը լայնորեն ներդրվեց գործարանում: Անցած տարի նա պարտավորվել էր իր հիմնական մասնագիտությանը զուգընթաց տիրապետել նաև կտրողի ու մոնտաժողի պրոֆեսիաներին: Եվ հասավ նպատակին, Վարդիկյանը, որպես կանոն, թողարկում է միայն գերազանց որակի արտադրանք: Նա սոցիալիստական մրցության առաջավոր է, արժանացել է «Որակի գերազանցիկ» և «Լավագույն մասնագետ բանվոր» կոչումներին:

Լենինականի Ս. Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկայի մանող բանվորուհի Աստղիկ Մուրադյանը տասներորդ հնգամյակի երկու տարում պլանից ավելի արտադրել է 10 տոննա մանվածք: Գերակատարելով ստանձնած պարտավորությունները, նա առաջիններից մեկն էր, որ հաղթահարեց արտադրանքի թողարկման ճյուղային նորման՝ մեկ հերթափոխում տալով 98 կգ մանվածք, նախատեսված 88 կգ-ի փոխարեն: Նրա նախաձեռնության արմատավորման շնորհիվ կրճատվել է հոսքային գծի գործողությունը, որով տնտեսվել է 150 կգ հումք: Մուրադյանի փորձը ոգևորեց ֆաբրիկայի 190 բանվորների, որոնք, աշխատելով նրա օրինակով, հումքի տնտեսման հաշվին թողարկեցին 12,6 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք:

Մեծ դեր ունեն կանայք գյուղատնտեսական արտադրության մեջ: Կոլտնտեսային շինարարությունը հիմնովին փոխեց գեղջկուհու վիճակը: Այժմ նա տղամարդուն հավասար մասնակցում է գյուղատնտեսական արտադրության կառավարմանը, ղեկավարում ավտոմատացված թռչնաբուծական ֆաբրիկաներ, անասնապահական ինդուստրիալ կոմպլեքսներ: Գյուղի շատ աշխատավորուհիներ լայնորեն ճանաչվում են ո՛չ միայն մեր հանրապետությունում, այլև նրա սահմաններից դուրս: Նրանք արժանացել են հայրենիքի բարձր պարգևներին, դարձել սոցիալիստական աշխատանքի հերոսներ: Սոցիալիստական աշխատանքի հերոս է Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան գյուղի կոլտնտեսության կոմերիտական-երիտասարդական օղակի օղակավարուհի Գեղեցիկ Կարապետյանը. նա մշտապես կիրառում է առաջավոր մեթոդներ, ձեռք բերում բարձր ցուցանիշներ: Անձնվեր աշխատանքի և վաստակած հեղինակության համար արժանացել է բարձր պատվի, ընտրվել ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ:

Գյուղատնտեսության աշխատողների համամիութենական և հանրապետական սոցիալիստական մրցության ակտիվ մասնակից է Էջմիածնի շրջանի Արշալույս գյուղի բանջարաբույծ Ռոզա Սայադյանը: Ամեն տարի նա բանջարաբոստանային կուլտուրաների բարձր բերք է ստանում: Նրա հաջողության գաղտնիքն այն է, որ գյուղատնտեսական կուլտուրաները մշակելիս կիրառում է առաջավոր, առավել արդյունավետ ագրոտեխնիկական եղանակներ, գործուն մասնակցություն ցույց տալիս բարձր բերքատու և վաղահաս սորտերի ներդրմանը: Ռ. Սայադյանը ևս վարպետ-դաստիարակ է, պարգևատրվել է «Պատվո նշան» և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով, արժանացել ՍՍՀՄ ԺՏՆՑ բրոնզե մեդալի:

Արարատի շրջանի Ջիման գյուղի կոլտնտեսության ծխախոտագործուհի

Թամարա Մանուկյանը, անցած տարի ներգրավվելով մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, ագրոտեխնիկական առաջավոր մեթոդների կիրառման շնորհիվ ծխախոտի բարձր բերք ստացավ։ 1977 թ. 12 հեկտարից նա հավաքեց 60 ցենտներ ծխախոտ, պլանավորված 29 ցենտների փոխարեն։ Հասարակական կյանքում ևս Թ. Մանուկյանն ակտիվ է, նախաձեռնող։ Նա Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ է, ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամության թեկնածու։ Նրա անձնուրաց աշխատանքը գնահատվել է ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ «Հնգամյակի երիտասարդ գվարդիականին» արծաթե կրծքանշանով։

Շատ օրինակներ կարելի է բերել մեր հանրապետության կանանց աշխատանքային անձնվիրության, ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում աշխատող նորարարների և առաջավորների մասին։ Նրանց շարքերը տարեցտարի ստվարանում են հասարակական արտադրության մեջ ներգրավվածների թվի հետ մեկտեղ։

Նոր բնույթի արտադրության ստեղծմամբ, նոր տեխնիկայի ներդրմամբ վերաբաշխվեց կանանց աշխատանքը։ Բարձր մեքենայացված և ավտոմատացված ձեռնարկություններում աճեց նրանց տեսակարար կշիռը։ Կանանց աշխատանքն առավել չափով կիրառվում է ժամանակակից այնպիսի ձեռնարկություններում, ինչպիսիք են՝ էլեկտրոնային արդյունաբերությունը, ռադիոտեխնիկան, սարքաշինությունը և այլն։ Առաջատար պրոֆեսիաների բանվորների ընդհանուր թվում կանայք մեծ տոկոս են կազմում. օրինակ, ամբողջական արտադրանք և դետալ հավաքողների 80 տոկոսը, զոդողների՝ 74, գալվանապատողների՝ 60, ապարատավարների՝ 37, հաստոցավարների՝ 31, մեքենավարների՝ 28 տոկոսը կանայք են։

Քաղաքական և տնտեսական ազատագրման շնորհիվ լայն ասպարեզ բացվեց Հայաստանի աշխատավորուհիների համար դեպի գիտության ու կուլտուրայի բարձունքները։

Վիճակագրական տվյալները ցույց են տալիս ծավալուն պատկերը սոցիալական այն տեղաշարժերի, որոնք կատարվել են կանանց կրթության ասպարեզում սովետական իշխանության տարիներին։ Այժմ հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթությամբ բոլոր մասնագետների 50 տոկոսը կանայք են. ընդ որում, նրանցից 46 տոկոսն ունի բարձրագույն կրթություն։ Ուշագրավ է, որ ինժեներների ընդհանուր թվի 28,2 տոկոսը, գյուղատնտեսության մասնագետների՝ 24,8, ուսուցիչների՝ 60, բժիշկների՝ 71,5 տոկոսը կանայք են։

Տարեցտարի ավելանում է բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորող կանանց թիվը։ Եթե 1950 թ. նրանց 40 տոկոսը կանայք էին, ապա այժմ՝ 46 տոկոս։ Նրանք տեսակարար մեծ կշիռ ունեն նաև հանրակրթական դպրոցներում և պրոֆտեխնիկական ուսումնարաններում սովորողների մեջ. օրինակ՝ 1977 թ. կազմել են բոլոր սովորողների 30 տոկոսից ավելին։

Սոցիալիզմը բացահայտեց և բազմապատկեց Հայաստանի կանանց ստեղծագործական հնարավորությունները, նպաստեց նրանց ընդունակությունների ծաղկմանը։ Գիտության, արվեստի և կուլտուրայի զարգացման գործում փոքր չէ և կանանց դերը։ ՍՍՀՄ-ում կանանց կրթական միջին մակարդակը ո՛չ միայն ձևականորեն, այլև փաստորեն հավասարվել է տղամարդկանց կրթամակարդակին։ Բուհերում սովորողներից և գիտաշխատողներից յուրաքանչյուր երկրորդը կին է։ Այժմ գիտաշխատողների ավելի քան 40 տոկոսը կանայք են։ Նրանց կազմում կան մեծ թվով գիտության դոկտորներ ու թեկնածուներ, թղթակից անդամներ, պրոֆեսորներ ու դոցենտներ։

Կանայք մեծ թիվ են կազմում նաև գրողների, ժուռնալիստների, կինեմատոգրաֆիստների, ճարտարապետների, կոմպոզիտորների և նկարիչների միությունններում։ Նրանցից լավագույններն արժանացել են լենինյան և պետական մրցանակների։ Սովետական արվեստին մատուցած մեծ ծառայությունների համար շատերին շնորհվել են ՍՍՀՄ ժողովրդական արտիստի և ժողովրդական



նկարչի, Հայկական ՍՍՀ ժողովրդական և վաստակավոր արտիստի, ինչպես նաև գիտության զարգացմանը մատուցած մեծ ծառայությունների համար՝ գիտության և տեխնիկայի վաստակավոր գործչի պատվավոր կոչումներ և այլն։

Ինչպես սահմանված է Հայկական ՍՍՀ Սահմանադրությամբ, կանայք իրավունք ունեն ընտրելու և ընտրվելու պետական, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական և հասարակական կազմակերպություններում։ Այդ է վկայում այն փաստը, որ հանրապետության արդյունաբերական շատ ձեռնարկություններ, շինարարական կազմակերպություններ, կոլտնտեսություններ, սովխոզներ, վարչական հիմնարկություններ և այլ օբյեկտներ ղեկավարում են կանայք։ Նրանք ղեկավար պոստեր են գրավում ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում։

Հասարակական արտադրության մեջ հավասարվելով տղամարդուն՝ ժամանակակից հայ կինն ակտիվ և գործուն մասնակցություն է ունենում պետության կառավարմանը։ Այժմ տեղական սովետներում ժողովրդական դեպուտատների մոտավորապես կեսը կանայք են։ ՍՍՀՄ Գերագույն սովետում մեր հանրապետությունից ընտրված է 13 կին, ՀՍՍՀ Գերագույն սովետում՝ 111, կամ դեպուտատների 35 տոկոսը։ Հանրապետության կանանցից 13-ը ժողովրդական դատավոր է, իսկ 2.900-ը՝ ժողովրդական ատենակալ։

Տարեցտարի աճում է կանանց թիվը կուսակցական ու հասարակական կազմակերպությունների ղեկավարության կազմում։ Այսպես, Հայաստանում կոմկուսակցության անդամների մոտ 21, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների 30 տոկոսը, ՀԿԿ քաղաքային ու շրջանային կոմիտեների քարտուղարներից 142 հոգին և այդ կոմիտեների, ինչպես նաև ՀԿԿ Կենտկոմի ու ՀԿԿ վերստուգիչ հանձնաժողովի կազմի 27 տոկոսից ավելին կանայք են։ ՀԿԿ Կենտկոմի անդամ են Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի բանվորուհի Մ. Օհանյանը, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայի բանվորուհի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Գ. Ղազարյանը և ուրիշներ։ ՀԿԿ Երևանի կազմակերպության Օրջոնիկիձեի շրջկոմի առաջին քարտուղարն է Մանիկ Գրիգորյանը, Կամոյի անվան շրջկոմինը՝ Դորա Հարությունյանը։ Դիլիջան քաղաքի ժողովրդական դեպուտատների գործադիր կոմիտեն ղեկավարում է Նադեժդա Ջեպելը, Աբովյանի շրջանինը՝ Շողիկ Հովսեփյանը, Իջևանինը՝ Ջեմմա Անանյանը և ուրիշներ։

Կանանց թիվը նշանակալի չափով շատ է արհմիութենական կազմակերպություններում։ Նրանք կազմում են արհմիության ֆաբրիկագործարանային և տեղական կոմիտեների անդամների 44 տոկոսը։ Այդ կոմիտեներում կանանց 44,6 տոկոսը նախագահներ են։

Կանայք առավել ակտիվ աշխատանքի են ներգրավվում կոմերիտական և երիտասարդական կազմակերպություններում։ Սկզբնական կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների 54,7, ԼԿԵՄ շրջկոմների, քաղկոմների քարտուղարների 40,6 տոկոսը կանայք են։ ՀԼԿԵՄ Կենտկոմի կազմում նրանց թիվը հասնում է 38 տոկոսի, անդամության թեկնածուների կազմում՝ 42,4, վերստուգիչ հանձնաժողովի անդամների կազմում՝ 17,6 տոկոս։ Ահա շատ-շատերից մի քանիսը՝ Հոկտեմբերյանի շրջանի Արևիկ գյուղի կոլտնտեսության դաշտավարուհի, ՀամԼԿԵՄ XVIII համագումարի պատգամավոր, ՀԼԿԵՄ Կենտկոմի վերստուգիչ հանձնաժողովի անդամ, ՀամԼԿԵՄ «Ոսկե հասկ» պատվավոր կրծքանշանի դափնեկիր Աշխենուհի Պետրոսյանը, Երևանի Սպանդարյանի շրջանի սննդառի № 151 խանութի վաճառող, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամ, ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Հնգամյակի երիտասարդ գվարդիական» կրծքանշանի դափնեկիր Վիկտորյա Խաչատրյանը և ուրիշներ։

Մեզ մոտ համաժողովրդական պատվի ու հարգանքի է արժանանում կինմայրը. պետությունը մեծ հոգատարություն է ցուցաբերում նրա նկատմամբ։ Կինը երբեք չէր հասնի այսօրվա բարձունքներին, եթե սովետական իշխանությունը չօգներ նրան՝ համատեղելու մայրական ամենասուրբ պարտականությունը տնային տնտեսուհու և հասարակական աշխատանքի պարտականու-

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՈՒՄԸ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐ Է

**Կ. Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար

*Մեր ԵՐԿՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ արդի փուլը նշանավորվում է ՍՄԿԿ XXV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծրագրի իրականացման համար ծավալված համաժողովրդական պայքարով։ Այդ իրողությունը համոզիչ կերպով հաստատեց ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը, որտեղ «ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին» զեկուցմամբ հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը։*

*Խորապես վերլուծելով ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումից հետո անցած տարիների արդյունքները՝ պլենումը շեշտեց գյուղատնտեսության ասպարեզում կուսակցության քաղաքականության ու գիտականորեն հիմնավորված պրակտիկ գործունեության ճշտությունը և նշեց, որ լայն մեքենայացման, քիմիացման և հողերի մելիորացման հիմքի վրա գյուղատնտեսության ինտենսիվացումը այսուհետև ևս կմնա որպես կուսակցության ագրարային քաղաքականության հիմնական ուղղությունը։*

*Սիսիանը հանրապետության խոշորագույն գյուղատնտեսական շրջաններից է և տնտեսության այդ ճյուղի զարգացման հարցերը, բնականաբար, պետք է միշտ լինեն նրա կուսակցական կազմակերպությունների տեսադաշտում։ Գյուղատնտեսության ինտենսիվացման նկատմամբ համընդհանուր հետաքրքրության պայմաններում միանգամայն օրինաչափ է այն մեծ ոգևորությունը, որով շրջանի աշխատավորներն ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները։*

*Այս օրերին սկզբնական կուսկազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվներն ուսումնասիրում, քննարկում են պլենումի նյութերը, միահամուռ հավանություն տալիս ՍՄԿԿ լենինյան ագրարային քաղաքականությանը։ Հիրավի, պլենումի ոգին մարտական ու մոբիլիզացնող է, նրա եզրահանգումներն ու հանձնարարականներն ունեն համակուսակցական կարևոր նշանակություն։*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմի վերջերս տեղի ունեցած պլենումը խորությամբ վերլուծեց հանրապետության գյուղատնտեսության ներկայիս վիճակը և միջոցառումներ մշակեց ժողովրդական տնտեսության այդ ճյուղի հետագա զարգացումը խթանելու համար։*

*Ղեկավարվելով գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՀԿԿ Կենտկոմի ցուցումներով՝ կուսշրջկոմը, սկզբնական կուսակցական կազմակերպություններն իրենց կազմակերպչական և քաղաքական գործունեության ամբողջ առանցքը դարձրել են գյուղատնտեսության ինտենսիվացումը, նրա կոոպերացումն ու համակենտրոնացումը։ Եվ, պետք է ասել, այդ ասպարեզում վերջին տարիներին զգալի գործ է արվել։*



*Գյուղատնտեսության ինտենսիվացման շահերը պահանջում են՝ կատարելագործել այդ բնագավառում կիրառվող աշխատանքի ձևերն ու մեթոդները, արմատավորել Միության առաջավոր տնտեսությունների փորձը։ Անցյալ տարի հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի ժամանակ «Գյուղտեխնիկայի» շրջանային միավորումում կենտրոնացված 15 կոմբայնները կարողացան աշխատել բարձր արտադրողականությամբ, կատարեցին առաջադրանքները։ Հավանաբար, նպատակահարմար կլինի այդ գործի ղեկավարման պարտականությունը դնել մելիորատիվ ջոկատի վրա, որտեղ հիմնականում կենտրոնացված են մեխանիզատորական կադրերը։ Նրան է հանձնարարված նաև միջտնտեսային ձեռնարկությանը հատկացված 500 հեկտար հողերի մշակման ու բերքահավաքի գործը։*

*Գյուղատնտեսության ինտենսիվացմանն է ծառայում առաջավոր փորձի ներդրումը։ Այս առումով ուսանելի է անկարգագիր մեքենայացված օղակների ստեղծումը երկրի առաջավոր տնտեսություններում։ Այդպիսի օղակներ ստեղծվել են նաև մեզ մոտ։ Ի դեպ, շրջանում առաջին անկարգագիր, մեքենայացված օղակը կազմակերպվեց Բռնակոթի կոլտնտեսությունում, որը ղեկավարում է Լենինի և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանների ասպետ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Կ. Խաչատրյանը։ Որպես կանոն, օղակը վերջին տարիներին հեկտարից ապահովում է 29—32 ցենտներ բերք։ Այստեղ զգալիորեն ցածր է հացահատիկի ինքնարժեքը։ Օղակում միանգամայն ճիշտ են զուգակցվում հանրային և անհատական շահերը։ Օղակի գործունեությունը աշխատանքի կազմակերպման նոր, արդյունավետ եղանակ է, որն արժանի է լայն տարածման և ընդօրինակման։*

*Հավանություն տալով աշխատանքի կազմակերպման այս ձևին, շրջկոմի բյուրոն խորհուրդ տվեց նաև մյուս տնտեսությունների կուսկազմակերպություններին՝ տեղերում արմատավորել այն։ Եվ այժմ արդեն շրջանում գործում են ութ այդպիսի օղակներ։ Հատկապես արժե նշել Դարբասի կոլտնտեսության՝ ՍՄԿԿ անդամ Ա. Ասատրյանի ղեկավարած անկարգագիր մեքենայացված օղակի դրական աշխատանքը։ Օղակն իր ստեղծման հենց առաջին տարում՝ 1977 թվականին, հավաքեց հացահատիկային կուլտուրաների բարձր բերք։*

*Շրջանում որոշակի քայլեր են արվել արտադրության կենտրոնացման ու կոոպերացման ասպարեզում։ Արդեն ավարտվել է թռչունների կենտրոնացման գործը։ Գյուղատնտեսական տարին արտադրական բարձր ցուցանիշներով փակեց արու մատղաշի աճեցման և բտման միջտնտեսային ձեռնարկությունը։ Էգ մատղաշի աճեցման և խոզաբուծական միջտնտեսային ձեռնարկությունների շինարարական աշխատանքներն ընթացքի մեջ են, ընդ որում, առաջինը շահագործման կհանձնվի ընթացիկ տարում։*

*Կուսշրջկոմը միջտնտեսային ձեռնարկությունները հայտարարել է հարվածային կառույցներ։ Կուսակցական-տնտեսական ակտիվի շրջանային ժողովի որոշմամբ առանձնացվել են շեֆ կազմակերպություններ, որոնք ակտիվորեն աջակցում են ձեռնարկությունների շինարարությանը։ Շրջկոմը միաժամանակ ստեղծել է միջտնտեսային ձեռնարկությունների շինարարությունը կոորդինացնող շրջանային շտաբ, որի կազմի մեջ մտնում են կուսակցական, սովետական և տնտեսական ապարատների պատասխանատու աշխատողներ։*

*Մեզ համար արտադրության ռեզերվների օգտագործման ասպարեզում մեծ ու փոքր հարցեր չկան։ Այն, ինչ փոքր ի շատե նպաստում է գյուղատնտեսության վերելքին, արժանանում է կուսկազմակերպությունների և տնտեսական մարմինների սևեռուն ուշադրությանը։ Այս առումով բնորոշ է խոտանված կովերից մեկ ծին ստանալու խնդիրը։ Դրա խելամիտ լուծմամբ մենք անասունների գլխաքանակի զգալի հավելում կունենանք։*

*Հեռանկարում խնդիր ենք դրել կովերի գլխաքանակը հասցնել 11 հազարի։ Ուրախությամբ պետք է նշել, որ կոլեկտիվ ու պետական տնտեսությունները նախապատրաստական աշխատանքներ են իրականացնում այդ խնդիրը լուծելու*

համար։ Ներկայումս շրջանի 22 տնտեսություններից 10-ում կառուցվում են 4.200 գլուխ կովի տարողությամբ կաթնային համալիրներ, ևս 3.000 գլխի համար նախագծերն արդեն պատրաստ են, շինարարական աշխատանքները կսկսվեն եկող տարի։

Արտադրության համակենտրոնացման ու կոոպերացման նպատակով մեր մշակած միջոցառումների առաջին արդյունքներն արդեն ակնհայտ են։ Այսպես, 1976 թ. թռչնաբուծությամբ զբաղվող ութ գաճաճ տնտեսություններում վնասը կազմեց 443 հազար ռուբլի։ Մինչդեռ անցյալ տարի ստեղծված թռչնաբուծական սովխոզը տարին փակեց օգուտով։ Համապատասխանաբար մեկ ձվի ինքնարժեքը կազմել էր 18,6 և 6,9 կոպեկ, այս տարվա կիսամյակի տվյալներով՝ 5,8 կոպեկ։ Զգալիորեն կրճատվել է կերի ծախսը։ Այսպես, եթե 1976 թ. 1 միլիոն 559 հազար ձու արտադրելու վրա ծախսվել է 18.488 կերամիավոր, ապա անցյալ տարի 3 միլիոն 577 հազար ձվի արտադրության վրա՝ ընդամենը 15.182 կերամիավոր։

Նույնպիսի լավ ցուցանիշներ ունի նաև տավարի մատղաշի բտման միջտնտեսային ձեռնարկությունը։ Այսպիսով, ակնհայտ է դառնում այն իրողությունը, որ կենտրոնացումն ու կոոպերացումը կարող է ցանկալի արդյունք տալ, եթե կուսկազմակերպություններն ամենօրյա ուշադրություն նվիրեն այդ գործին, օգնեն աշխատանքի կազմակերպման առաջավոր եղանակների տարածմանն ու ներդրմանը։ Այստեղ վճռական դեր է խաղում տնտեսական խնդիրների կազմակերպական ու գաղափարական ամրապնդումը։

Գյուղատնտեսական արտադրությունն արդյունաբերական ռելսերի վրա փոխադրելը կուսակցության լենինյան ագրարային քաղաքականության արդի փուլի պահանջն է։ Այն կուսշրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների և շրջանային մարմինների առջև դնում է նոր խնդիրներ։ Խոսքը վերաբերում է գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացման շնորհիվ ազատվող բանվորական ուժի ռացիոնալ օգտագործմանը։ Այս ասպարեզում առաջին քայլերն արդեն արվել են։ Վերջին տարիներին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի օգնությամբ շրջանում ստեղծվել են մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ։ Մենք գտնում ենք, որ այդ պրոցեսը պետք է շարունակել։ Ի դեպ, արդյունաբերական ձեռնարկություններ կարելի է ստեղծել նաև շրջանի խոշոր գյուղերում կամ մի քանի գյուղական ռեգիոններում։

Նման հարցադրման շարունակությունը լինում է այն, թե արդյոք գյուղատնտեսական արտադրությունը չի՞ տուժի այդ դեպքում։ Մեր կարծիքով՝ ոչ և ահա թե ինչու։ Ըստ էության, գյուղատնտեսության ինտենսիվացում հասկացությունն ամենից առաջ ենթադրում է բարձր աստիճանի մեքենայացում։ Ուստի, որպես առաջնային խնդիր, կմնա աշխատողի մասնագիտական կողմնորոշման հարցը։ Ավելորդ չեմ համարում բերել հետևյալ օրինակը։ Մեզ մոտ միաժամանակ գործարկվեցին Սիսիանի թռչնաբուծական ֆաբրիկան և Դաստակերտի բժշկական տեխնիկայի գործարանը։ Այժմ այդ երկու ձեռնարկությունները մեքենայացման մակարդակով շատ քիչ են տարբերվում միմյանցից։ Թռչնապահ հասկացությունն իր հին իմաստով այլևս գոյություն չունի, այլ գոյություն ունի օպերատոր հասկացությունը։ Օպերատորը բոլոր գործողությունները ղեկավարում է վահանակի միջոցով, գործում հստակ գրաֆիկով, հնգօրյա աշխատանքային շաբաթով։ Արտադրության ծավալի մեծացման պայմաններում զգալիորեն ավելանում է նրա ամսական վաստակը։ Եվ պատահական չէ, որ կադրերի ներգրավման գործում նման ձեռնարկություններում այլևս դժվարություններ չկան։

Բանջարեղենի արտադրությունը զարգացնելու բնակլիմայական նպաստավոր պայմաններ ունի Դարբասի կոլտնտեսությունը և պատահական չէ, որ հենց այստեղ էլ որոշվեց կենտրոնացնել բանջարեղենի արտադրությունը։ Դա հնարավորություն ընձեռեց կատարելու և գերակատարելու բանջարեղենի արտադրության և վաճառքի պլանները։

Գաղտնիք չէ, որ առանց կերի բավարար պաշարի անասնապահության



բնագավառում ինտենսիվացման փոքր ու մեծ ոչ մի հարց հնարավոր չէ լուծել։ Հետևաբար, կերի բազայի ամրապնդումը դառնում է ինտենսիվացման գլխավոր գործոններից մեկը։ Մեր շրջանում արդյունավետ աշխատանք է տարվում կերի արտադրությունն ավելացնելու, այդ առթիվ կուսակցության պահանջները հետևողականորեն կատարելու համար։ Որպես այդ հարցի լուծման կարևոր պայման, ուշադրության կենտրոնում է նաև հացահատիկային տնտեսության զարգացումը։ Ընդ որում, հեկտարից 18—19 ցենտներ բերքի ստացումը չափանիշ չէ և դա այն պարզ պատճառով, որ բերքատվության ամպլիտուդան տարբեր տնտեսություններում հասնում է 12—30 ցենտների։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի գլխավոր պահանջներից մեկը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացումն է։ Ի՞նչ ենք արել այս ասպարեզում։ Հանրահայտ ճշմարտություն է, որ այդ գործում վճռական դերը պատկանում է հանքային և օրգանական պարարտանյութերի արդյունավետ օգտագործմանը։ Հնգամյակի անցած երկու տարիներին օգտագործվել է 16.094 տոննա հանքային և 119.536 տոննա օրգանական պարարտանյութ կամ գրեթե երկու անգամ ավելի, քան նախորդ հնգամյակի նույն ժամանակամիջոցում։ Ելակետ ունենալով ՍՄԿԿ Կենտկոմի և ՀԿԿ Կենտկոմի վերջին պլենումների պահանջները՝ այսուհետ ևս քիմիացումը կպահենք մեր ամենօրյա ուշադրության կենտրոնում։

Կերի արտադրության հուսալի ռեզերվը խոտացանությունն է։ Այսօր խնդիր է դրված ավելացնել բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը, այդ թվում առվույտի ցանքատարածությունը խոտախառնուրդների հետ՝ ռոգման մեխանիկական սիստեմով։ Առաջավոր այդ եղանակով մշակվում է 450 հեկտար տարածություն, աշխատանքներ են կատարվում ևս 240 հեկտար կուլտուրական խոտհարք ստեղծելու համար, այն պատրաստ կլինի ընթացիկ տարում։ Այս տարի կերի բալանսում որոշակի փոփոխություն կմտցնեն կերային արմատապտուղները։ Օրինակները կարելի է շարունակել, դրանք գումարվելով դարձել են շրջանի ցուցանիշներ։ Գոհացուցիչ են ինչպես նախորդ տարիների, այնպես էլ այս տարվա առաջին կիսամյակի արդյունքները։

Հացահատիկային կուլտուրաների արտադրությունը վերջին երկու տարիների միջին ցուցանիշներով աճել է 67 տոկոսով, մսինը՝ 125,9, կաթինը՝ 140,8 տոկոսով։ Աշխատանքի էլեկտրազինվածությունը շրջանում մեծացել է 2,1 անգամ, էլեկտրաէներգիայի սպառումը աճել՝ 4,1 անգամ։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելացել է 1,5 անգամ։ Այս տարվա դժվարին պայմաններում կաթի, մսի, բրդի վաճառքի կիսամյա պլանները կատարվել են 109—144 տոկոսով։ Ձվի վաճառքի աճը, նախորդ տարվա համեմատությամբ, կազմում է 27 տոկոս։

Գյուղատնտեսության ասպարեզի հաջողություններն իրենց արտացոլումն են գտել տնտեսությունների ֆինանսական ցուցանիշներում։ Կարելի է գոհունակությամբ նշել, որ 1977 թ. շրջանի բոլոր պետական և կոլեկտիվ տնտեսությունները շահութաբեր են եղել. օգուտները կազմել են 1 միլիոն 800 հազար ռուբլի։ Դրամական եկամուտները, նախորդ տարվա համեմատությամբ, աճել են 16 տոկոսով։

Անկասկած, միայն ցանկությունն ու անհրաժեշտությունը բավական չեն գյուղատնտեսության զարգացման նպատակով մշակված միջոցառումներն իրականացնելու համար։ Հարկ է լուծել նաև կազմակերպական բնույթի մի շարք կարևոր հարցեր։ Այս առումով վճռական նշանակություն ունեցան Միության և հանրապետության մասշտաբով ձեռնարկված միջոցները։ Առաջին հերթին անհրաժեշտ է նշել ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Միջտնտեսային կազմակերպությունների և ձեռնարկությունների ստեղծման, ինչպես նաև ֆինանսավորման ու վարկավորման կարգի մասին» որոշումը։ Անտարակույս, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումից անմիջապես հետո մի շարք արմատական հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշումները նոր լիցք կհաղորդեն գյուղատնտեսության հե-

տագա զարգացման նպատակով ծավալված աշխատանքին, կնպաստեն ինտենսիվացման հետագա խորացմանը։

Հանրապետությունում արտադրության ինտենսիվացման նկատմամբ ստեղծված գործարար մթնոլորտը, որը տոն է տալիս գյուղատնտեսական, իսկ որոշ դեպքերում նաև ոչ-գյուղատնտեսական կազմակերպությունների ողջ աշխատանքին, այն հաստատ համոզմունքն է ստեղծել, որ յուրաքանչյուր համապատասխան նախաձեռնություն ո՛չ միայն անհրաժեշտ պաշտպանություն կգտնի, այլև դրան ցույց կտրվի ամենալայն գործնական օգնություն։

Մեր բոլոր ձեռնարկումները բխում են գյուղատնտեսական մթերքներով ժողովրդի հարաճուն պահանջմունքների բավարարման գործում ունեցած մեր պարտքի կատարման, Սիսիանի շրջանում եղած հսկայական ռեզերվները կարճ ժամանակամիջոցում գործողության մեջ դնելու անհրաժեշտությունից։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Գյուղատնտեսության վերելքի համար մղվող պայքարի նոր էտապին պետք է համապատասխանեն թե՛ կուսակցական ղեկավարման առավել բարձր մակարդակը, թե՛ մասսաների մեջ կատարվող աշխատանքի առավել կատարյալ մեթոդները»։ Այս պահանջը լուրջ խնդիր է դնում կուսակցական կազմակերպությունների առջև աշխատանքի ոճի և մեթոդների կատարելագործման, աշխատանքի արդյունքները ինքնաքննադատաբար գնահատելու տեսակետից։ Մենք պարզ գիտակցում ենք, որ, չնայած վերջին տարիներին ձեռք բերած արդյունքներին, դեռևս ունենք լուրջ թերություններ ու բացթողումներ՝ մասնավորապես մեկ միավորից արտադրանքի ստացման առումով։ Ես նկատի ունեմ մեկ կովից ստացվող կաթը, մեկ ոչխարից ստացվող բուրդը, ինչպես նաև ծխախոտի և պտղի արտադրության ու վաճառքի անբավարար վիճակը։ Շրջանի չլուծված կարևոր պրոբլեմներից է նաև ոչխարաբուծության կենտրոնացման հարցը։ Այս ասպարեզում մենք դեռևս հստակորեն չենք որոշել մեր անելիքները։ Իսկ հապաղել չի կարելի, ճյուղի վնասներն անցած տարի հասան 214 հազար ռուբլու։

Նշածս թերությունների հիմնական մասի վերացումը պայմանավորված է կուսակցական բոլոր օղակներում, մասնավորապես սկզբնական կուսակցական կազմակերպություններում աշխատանքի մակարդակի բարձրացմամբ, լայն մասսաների ուժերի առավել արդյունավետ օգտագործմամբ, այդ խնդիրների իրականացման գործում յուրաքանչյուր աշխատողի տեղի ճիշտ որոշմամբ։ Միայն այս պայմաններում հնարավոր կլինի արտադրության մեջ լայնորեն ներդնել նորն ու առաջավորը։ Անկարգագիր մեքենայացված օղակների արդյունավետության հարցը այլևս վիճաբանության առարկա չի կարող դառնալ։ Սակայն խնդիրն այն է, որ աշխատանքի այդ ձևը շրջանի մի շարք տնտեսություններում տարածելու գործում կան որոշակի դժվարություններ, որոնք առաջին հերթին պայմանավորված են մարդկանց հետ տարվող ոչ հետևողական աշխատանքով։ Նման պայմաններում առաջավոր փորձի ներդրումը հղի է ձախողմամբ, իսկ դա արդեն կրկնակի վտանգավոր է։

Գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ կուսակցության կուրսի ճիշտ իրականացման, այդ բնագավառի ինտենսիվացման խնդիրների լուծման գործում չափազանց կարևոր է կադրերի հետ տարվող աշխատանքի պատշաճ կազմակերպումը։ Այս հարցն ամենայն սրությամբ դրվեց նաև ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում։ Ելակետ ընդունելով այդ առթիվ կուսակցության XXV համագումարի պահանջը՝ կուշրջկոմը որոշակի հետևողականությամբ իրականացնում է կադրային ճիշտ քաղաքականություն։ Մենք այդ դիտում ենք որպես անընդմեջ մի պրոցես։ Շրջանի բոլոր 22 տնտեսությունների ղեկավարները գյուղատնտեսության մասնագետներ են, նրանցից 17-ն ունի բարձրագույն կրթություն։ Սակայն նույնը չի կարելի ասել սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների մասին, որոնցից միայն 6-ն ունի բարձրագույն կրթություն։ Նման պայմաններում ակնհայտ են դառնում կուսակցական-կազմակերպական աշխատանքի մակարդակի բարձրացման, ինչպես նաև ադմինիստրացիայի նկատմամբ վերահսկողության ֆունկցիայի իրականացման գործում



եղած դժվարությունները, որոնք ծառանում են կուսկազմակերպությունների առջև։

Ինչ խոսք, նպատակահարմար է կուսկազմակերպությունների քարտուղարների ռեզերվում ունենալ գյուղատնտեսության մասնագետներ։ Մինչդեռ շրջանում ներկայումս զգացվում է բարձրագույն կրթությամբ շուրջ 70 նման մասնագետների պակաս։ Այստեղից բխում է երկու հետևություն։ Առաջին՝ կադրերի համալրման հարցում խիստ անհրաժեշտ է գյուղմինիստրության օգնությունը, երկրորդ, մեր առջև հրամայական խնդիր է ծառանում ուժեղացնել կադրերի հետ տարվող աշխատանքն ընդհանրապես, սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների հետ՝ մասնավորապես։ Այդ խնդիրը լուծելու համար ձեռնարկել ենք մի շարք միջոցներ։

ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումից հետո հանրապետությունում զգալիորեն ամրապնդվել է կատարողական կարգապահությունը։ Սակայն հարկ է նշել, որ առանձին օղակներում դեռևս վիճակը բարվոք չէ։

Վերջերս փորձի փոխանակման նպատակով եղանք Մոսկվայի մարզի մի շարք առաջավոր տնտեսություններում։ Անկասկած, ուսանելի շատ բան տեսանք։ Կարևոր էր նաև համեմատության միջոցով պարզել մեզ մոտ իրականացվող միջոցառումների արդյունավետությունը։ Հետևությունն այս հարցում այն է, որ անհրաժեշտ է սկսած գործն ամենակարճ ժամանակամիջոցում հասցնել իր ավարտին։ Դա վերաբերում է և՛ գյուղատնտեսության զարգացման բացահայտված ռեզերվների օգտագործմանը, և՛ դրա ինտենսիվացմանն առընչվող խնդիրների անհապաղ լուծմանը։ Մինչդեռ քիչ չեն դեպքերը, երբ հենց այդ հարցերը բավարար ուշադրության չեն արժանանում որոշ կազմակերպությունների կողմից։ Մեր շրջանի անասնապահները լավ նախաձեռնություն հանդես բերեցին՝ որոշելով նկատելիորեն ավելացնել կովերի գլխաքանակը։ Սակայն մենք ստիպված կլինենք գլխաքանակի աճի վերաբերյալ մեր ընդունած պարտավորությունների մեջ փոփոխություններ մտցնել, եթե չլուծենք արու մատղաշի իրացման հարցը՝ միջտնտեսային ձեռնարկության շինարարական աշխատանքներն սկսելու և ավարտելու միջոցով։ Երեք տարի է, ինչ «Հայպետգյուղնախագիծ» ինստիտուտին հանձնարարված է ձեռնարկել այդ գործը, սակայն արդյունքը դեռ չկա։

Միանգամայն ճիշտ է ասված հուլիսյան պլենումին տված զեկուցման մեջ, որ գյուղատնտեսական մի շարք մթերքների գնման գների բարձրացումը հնարավորություն կընձեռի կազմակերպելու շահութաբեր արտադրություն։ Այդ հարցադրումը տեղին է և միանգամայն ժամանակին։ Կուզենայի ավելացնել, որ մեր շրջանի համար բնորոշը միայն գնման գները չեն։ Արտադրության ծավալների աճին զուգընթաց ավելանում է նաև համակցված կերի օգտագործումը։ Իսկ մեր շրջանը, ինչպես հայտնի է, հեռու է երկաթուղային կայարաններից։ Հետևանքը լինում է այն, որ մենք հաճախ բախվում ենք կերի փոխադրման, ինչպես նաև ֆինանսական դժվարությունների հետ։ Այս հարցի լուծման ճիշտ ուղին սեփական արտադրության բազայի վրա շրջանում համակցված կերի միջտնտեսային ձեռնարկության ստեղծումն է։ Յուրաքանչյուր տարի մենք հնարավորություն ունենք համակցված կերի արտադրության համար տրամադրել 8000 տոննա հատիկաֆուրաժ, մոտավորապես այնքան, որքան կազմում է մեր ստացածը տարվա ընթացքում և հրաժարվել տեղափոխումների մեծ մասից։ Նման միջտնտեսային ձեռնարկության նախագծման պատվերը նույնպես տրված է ինստիտուտին, սակայն գործնականորեն ոչինչ չի արված։

Չենք կարող քննադատական խոսք չասել նաև հանրապետության մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության հասցեին։ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսված էր հնգամյակի տարիներին մեր շրջանում 500 հեկտար տարածության վրա ներդնել ջրման առաջադիմական եղանակներ, սակայն հնգամյակի նախորդ երկու տարիների պլանը չի կատարվել։ Մինչդեռ անասնապահական մթերքների արտադրության աճի մեր ծրագրերում այդ միջոցառման իրականացումը պետք է մտցներ որոշակի փոփոխություն։

Անտարակույս, Սիսիանի շրջանում անասնապահական մթերքների ավելացումը, ռեզերվների օգտագործումը պայմանավորված չեն միայն վերը նշվածով։ Որոտանի կասկադի համակարգում կառուցված և կառուցվող չորս լճերում առաջիկայում կկուտակվի ավելի քան 375 միլիոն խորանարդ մետր ջուր։ Սակայն այդ հսկայական հնարավորությունների օգտագործման համար դեռևս գործնական քայլեր չեն արվում։ Այս կապակցությամբ ակնկալում ենք պլանավորող մարմինների օգնությունը։

Արդեն կիսվել է հնգամյակը։ Անցած տարիները որքան էլ բեղմնավոր էին, այնուամենայնիվ, հնգամյակի հաջորդ կեսում ավելի մեծ և ավելի լարված խնդիրներ կան լուծելու, խնդիրներ, որոնք առաջադրել է կյանքը, գիտականորեն հիմնավորվել ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի կողմից։ Մշակված միջոցառումների մեջ կարևոր նշանակություն ունեն հեռանկարային զարգացման խնդիրները։ Հաշվի առնելով բոլոր օղակներից ստացված առաջարկությունները՝ մշակել ենք շրջանում գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման միջոցառումների լայն ծրագիր։ Ելնելով շրջանի բնակլիմայական պայմաններից, նպատակահարմար է համարվել շրջանի գյուղատնտեսության հեռանկարային զարգացումը տանել երկու ուղղությամբ՝ հացահատիկային տնտեսության ու պտղաբուծության և մսի, կաթի, ձվի ու բրդի արտադրության։

Եթե այս երկու ուղղությունները պետք է բնորոշեն մեր շրջանի մասնագիտացումը հանրապետական տերիտորիալ ընդհանուր բաժանման մեջ, ապա նախատեսվում է նաև գյուղատնտեսությունը մասնագիտացնել ըստ գոտիների՝ նկատի ունենալով շրջանի բնակլիմայական պայմանները և տնտեսական հնարավորությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը մշակեց գյուղատնտեսության զարգացման հիմնական ուղիները, նոր խնդիրներ դրեց գյուղական կուսկազմակերպությունների առջև։

Պլենումի նյութերը քննարկվել են շրջկոմի պլենումում, սկզբնական կուսկազմակերպություններում, շրջանի կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում, ընդունվել են գյուղատնտեսության զարգացմանը նպաստող նոր, լրացուցիչ սոցիալիստական պարտավորություններ։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումների իրականացման նպատակով միջոցառումներ են մշակել նաև շրջսովետի գործկոմը, գյուղվարչությունը, «Հայգյուղտեխնիկայի» շրջանային միավորումը, Սպանդարյան ջրանցքի ոռոգման և ջրարբիացման սիստեմների վարչությունը և այլ կազմակերպություններ։

Մենք խոսում ենք հեռանկարային զարգացման մասին՝ չմոռանալով, իհարկե, որ նույնքան կարևոր է և ընթացիկ գյուղատնտեսական աշխատանքների հաջող կատարումը։ Կերի կուտակումը շրջանում հայտարարվել էր հարվածային ճակատ, և տնտեսությունները, ամբողջությամբ վերցրած, զգալիորեն գերակատարել են սիլոսի, սենաժի պատրաստման և խոտի կուտակման պլանները։ Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը և կերի կուտակումը հաջողությամբ ավարտելու համար կուսշրջկոմը մշակել է մի շարք միջոցառումներ։ Էական տեղաշարժեր կան անասնապահության բնագավառում. նախորդ տարվա համեմատությամբ, զգալիորեն աճել են մսի, կաթի, բրդի, ձվի արտադրությունն ու դրանց վաճառքը պետությանը։

Կուսակցության շրջանային կոմիտեն, սկզբնական կուսակցական կազմակերպությունները, ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումներով, մոբիլիզացնում են գյուղական կոմունիստների և ողջ աշխատավորության ուժերը՝ գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացումն ապահովելու, հնգամյակի երրորդ տարվա առաջադրանքները պատվով կատարելու համար։

# ՄԻԱՎՈՐՈՒՄԸ ԵՎ ՆՐԱ ՄԱԿՆԻՇԸ

Տասներորդ հնգամյակի ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ տարում համամիութենական սոցիալիստական մրցությունում բարձր արդյունքների հասնելու համար Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր կոշիկի «Մասիս» արտադրամիավորումը, ի թիվս հանրապետության մի շարք առաջավոր կոլեկտիվների, պարգևատրվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով։

Ստորև հրապարակվող նյութերը պատմում են առաջավոր ձեռնարկության կոլեկտիվի արտադրական նվաճումների և սոցիալական զարգացման մասին։

## ԳԼԽԱՎՈՐԸ ՈՐԱԿՆ Է

**Հ. Խ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Կոշիկի «Մասիս» արտադրամիավորման
գլխավոր դիրեկտոր

ՄԵՐ ՄԻԱՎՈՐՄԱՆ ՀԱՄԱՐ վերջին տարիները բավական արգասավոր են։ Իր առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծելու և բարձրորակ արտադրանքի թողարկումն ավելացնելու համար միավորումը 1976 թ. պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։

Տեխնիկատնտեսական ցուցանիշների բարելավման առումով հատկանշական էին առանձնապես տասներորդ հնգամյակի առաջին երկու տարիները։ Միավորման կոլեկտիվը գերակատարեց արտադրանքի թողարկման ու իրացման պլանները և երկրին լրացուցիչ տվեց 258 հազար զույգ կոշիկ։ Զգալիորեն բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, իջավ ինքնարժեքը, օգուտները կազմեցին 11 մլն 865 հազար ռուբլի։ Այլ խոսքով, մեր բազմահազարանոց կոլեկտիվը պատվով դուրս եկավ համամիութենական սոցիալիստական մրցությունից և առաջընթաց լուրջ քայլեր արեց իր վերելքի ճանապարհին։ Ձեռք բերված հաջողությունների համար միավորումը երկրորդ անգամ անընդմեջ արժանացավ բարձր պարգևի՝ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Անցյալ տարվա արդյունքների համար նրա անունը գրանցվեց ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի համամիութենական պատվոտախտակին։

Հարկ է ասել, որ այդ հաջողությունները ձեռք են բերվել ոչ դյուրին ճանապարհով։ Դրանք մեր մարդկանց համառ պայքարի, տևական ու ջանադիր աշխատանքի արգասիք են։ Այդ ամենին հասնելու համար մենք հաղթահարել ենք շատ դժվարություններ և խոչընդոտներ, իրականացրել գիտատեխնիկական առաջընթացի շատ միջոցառումներ։ Տակավին ոչ վաղ անցյալում միավորման ձեռնարկությունները գտնվում էին դժվարին կացության մեջ. թողարկված կոշիկեղենի զգալի մասը քիչ պահանջարկ ուներ, դանդաղ էր սպառվում, առևտրական կազմակերպությունները մեզ ներկայացնում էին շատ բողոքներ։ 1972

թվականին, օրինակ, ցածրորակ և ետ վերադարձված կոշկեղենը կազմեց ընդհանուր արտադրանքի երեք տոկոսը։ Բողոքահայցի կարգով մենք վճարեցինք ավելի քան 400 հազար ռուբլի տուգանք, չիրացված արտադրանքի գումարը հասավ մեկ միլիոն ռուբլու։

Մեզ մոտ պակասում էր և բանվորական ուժը, ցածր էր աշխատանքի արտադրողականությունը, խախտվել էր արտադրության համաչափությունը, կիսաֆաբրիկատների պակասի պատճառով պարապուրդների տեղիք էր տրվում։

Ձեռնարկության գործունեության բարելավման համար հարկավոր էր մշակել և իրականացնել կոմպլեքսային միջոցառումներ, արմատապես կատարելագործել կազմակերպական-տեխնիկական ողջ աշխատանքը։ Եվ այդ ամենը պետք էր անել գործիմացորեն, սեղմ ժամկետում։ Անհրաժեշտ էր նաև ամրապնդել աշխատանքային ու արտադրական կարգապահությունը, բարձրացնել մարդկանց պատասխանատվությունը, իրականացնել ամենօրյա վերահսկողություն հումքի, նյութերի անխափան մատակարարման ու ռացիոնալ օգտագործման, արտադրանքի որակի բարելավման նկատմամբ։

Կազմելով արտադրության ու աշխատանքի արմատական վերակառուցման հստակ պլան, մեր կոլեկտիվը կարողացավ համեմատաբար կարճ ժամկետում՝ 2—3 տարում, լուծել մի շարք լուրջ պրոբլեմներ, շտկել գործերի վիճակը, էականորեն բարելավել արտադրանքի որակը։ Նախ մենք մշակեցինք և իրականացրինք աշխատանքի արտադրողականության բարձրացման կոմպլեքսային միջոցառումներ, տեղադրեցինք և սկսեցինք արդյունավետ օգտագործել արդիական սարքավորումները։ Տեխնիկայի նորացման հետ միասին, մենք կատարելագործեցինք նաև արտադրության տեխնոլոգիան։ Այստեղ մեզ համար մանրուք չկար։ Քննադատաբար վերլուծեցինք արտադրական բոլոր պրոցեսների տեխնոլոգիական մակարդակին առնչվող խնդիրները և դրա հիման վրա մշակեցինք առաջավոր տեխնոլոգիայի ներդրման կոնկրետ պլան բոլոր տեղամասերի ու հոսքային գծերի համար։ Դրանց զգալի մասում, կոշիկի հանգույցների մշակման և ձևավորման հիման վրա, լայնորեն ներդրինք տեխնոլոգիական տարբերակներ, որոնք նպաստեցին կարման մի շարք հոսքագծեր՝ բացառապես հավաքմանը վերածելուն։ Նորամուծության շնորհիվ անցած տարիներին աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 25 տոկոսով, գործնականում ոչ միայն լուծվեց բանվորական ուժի պակասի պրոբլեմը, այլև, ավելին, նրա մի մասը տեղափոխեցինք այլ աշխատանքի (կոշիկի հարդարում, գունամշակում, ներկում)։

Գիտատեխնիկական հեղափոխության ներկա պայմաններում հնով յոլա գնալ չես կարող, հարկավոր է քայլել ժամանակի հետ, կիրառել արտադրության կազմակերպման առաջավոր եղանակներ։ Եվ մենք վերջին տարիներին զգալիորեն կատարելագործել ենք արտադրության կառուցվածքը։ Այսպես, վերացրինք կարող հոսքագծի հզորության և նախապատրաստման տեղամասի թողունակության հնարավորության միջև եղած անհամամասնությունը։ Սեփական ուժերով մի շարք հոսքագծերի վերակառուցումը հնարավորություն ընձեռեց միաժամանակ պատրաստել տարբեր մոդելների ձևվածքներ, ստեղծել անհրաժեշտ պաշար՝ ձևվածքի նոր նմուշների արտադրությունը յուրացնելու, տեսականին ընդլայնելու և վերափոխելու համար, չխախտելով հավաքման հոսքագծի համաչափությունը։

Տասներորդ հնգամյակը բարձր արդյունավետության ու որակի հնգամյակ է։ Կուսակցության XXV համագումարն այդ առումով լուրջ խնդիրներ դրեց նաև ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող կոլեկտիվների առջև։ Ժամանակակից սովետական մարդն ուզում է լավ ու ճաշակով հագնել, և մեր պարտքն է բավարարել բնակչության օրավուր աճող պահանջմունքները բարձրորակ կոշկեղենի նկատմամբ։ Ի պատիվ մեր կոլեկտիվի, պետք է ասել, որ այն հանրապետությունում առաջիններից մեկը ձեռնամուխ եղավ որակի արմատական բարելավման հարցի կոմպլեքսային լուծմանը։ Ղեկավարվելով կուսակցության նոր պահանջներով և ուսումնասիրելով Մոսկվայի, Լենինգրադի, Լվովի կոշիկի արդյունաբերության և մյուս ճյուղերի առաջավոր կոլեկտիվների



փորձը՝ մենք գործն սկսեցինք արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի ստեղծումից ու ներդրումից՝ բոլոր տեսակի աշխատանքների ստանդարտացման հիման վրա։ Միավորումում ստեղծվեց որակի կառավարման ծառայություն, որը ղեկավարում է գլխավոր դիրեկտորի տեղակալը։ Որակի կառավարման բաժնի գլխավոր խնդիրներն են՝ կոորդինացնել որակի բարելավման հարցերով զբաղվող բոլոր ստորաբաժանումների գործունեությունը, մշակել այն կատարելագործելու միջոցառումներ։

Մենք մեծ կարևորություն ենք տալիս ստացվող նյութերի որակի ստուգման ճիշտ կազմակերպմանը։ Դա, ըստ էության, որակի բարձրացման առաջին փուլն է։ Մատակարարողների հետ տարվող աշխատանքում, նյութերի որակը վերահսկող համապատասխան մասնագետների հետ միասին, ներգրավել ենք նաև իրավաբանական ծառայությունը։ Մեծ ուշադրություն ենք նվիրում պայմանագրային գործունեությանը։ Պայմանագրային կարգապահության ճիշտ դրվածքը և տնտեսական պայմանագրերի դերի բարձրացումը նպաստում են որակի համար մղվող պայքարի արդյունավետ կազմակերպմանը։ Ցածրորակ հումքի համար մատակարարող կազմակերպություններին ժամանակին ներկայացնում ենք բողոքահայցեր, համապատասխան մարմինների միջոցով նրանցից գանձում տուգանքներ։ Հուրախություն մեզ, դրանք աստիճանաբար նվազում են։ Այսպես, 1976 թ. Երևանի Շահումյանի անվան կաշվի արտադրամիավորմանը մենք ներկայացրել ենք ընդամենը չորս գանգատ և նրանից գանձել 10,700 ռուբլի տուգանք։ Դա ինքնին վկայում է, որ հումքի որակը բարելավվում է։

Տնտեսական գործունեության գլխավոր խնդիրը որակն է։ Մենք ևս ջանում ենք թողարկել բարձրորակ արտադրանք, զերծ մնալ գանգատներից ու տուգանքներից։ Այդ նպատակով լայնորեն ներդրել ենք նաև անթերի արտադրանքի պատրաստման համակարգ, կիրառում ենք նյութական ու բարոյական խրախուսանքի միջոցներ՝ որակի համար։ Եվ մեզ հաջողվել է արմատական բեկում մտցնել այդ ասպարեզում։ Տեխնոլոգիայի կատարելագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և տեխնիկական-կազմակերպական կոմպլեքսային միջոցառումները նպաստեցին կոշկեղենի որակի էական բարելավմանը։ Առաջին տեսակի արտադրանքի քանակն ավելացել է 6—7 տոկոսով, 1972 թ. համեմատությամբ երեք անգամ կրճատվել են բողոքները։ Այժմ մեզ մոտ չկա արտադրատեսակ, որ չունենա մեծ պահանջարկ։ Որակի պետական նշանով արտադրանքը 1976 թ. կազմեց ընդհանուր ծավալի 17 տոկոսը, հաջորդ տարի՝ 21,6։ Այս տարի ևս այն զգալիորեն կաճի։ Ի դեպ, 1977 թ. ապրիլին, պետական որականիշով արտադրանքի թողարկման գործում ձեռք բերած հաջողությունների համար, մեր միավորման կոլեկտիվը պարգևատրվեց ՀԱՄԿԽ-ի և ՍՍՀՄ պետստանդարտի դիպլոմով։ Արտադրանքի 40 տոկոսն էլ կազմում է «Ն» ինդեքսով կոշկեղենը։ Այժմ գնորդը մեզ հավատում է, և դա մեզ համար շատ կարևոր է։

Տասներորդ հնգամյակի ընթացիկ տարին ևս մեզ համար արտադրանքի որակի համար մղվող պայքարի ժամանակահատված է։ Բարելավելով կոշկեղենի որակը, մենք հաջողությամբ ենք կատարում նաև տեխնիկատնտեսական մյուս ցուցանիշների պլանները։ Առաջին եռամսյակում, օրինակ, պլանից դուրս իրացրել ենք 61 հազար զույգ կոշիկ։

Տասներորդ հնգամյակում մեր միավորման առջև բացվում են առաջընթացի լայն հեռանկարներ։ Նախատեսվում է նախորդ հնգամյակի համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 9,9 տոկոսով, պետական որականիշով արտադրանքի ծավալը հասցնել 30 տոկոսի, «Ն» ինդեքսով արտադրանքինը՝ 50, առաջին կարգի արտադրանքինը՝ 92 տոկոսի։ Եվ պետք է ասել, որ մեզ մոտ ստեղծված է լավ բազա՝ այդ խնդիրները պատվով լուծելու, բնակչությանը բարձրորակ կոշկեղեն տալու համար։ Այդ աղնիվ գործում միավորման և նրա մասնաճյուղերի ղեկավարությանը զորավիգ են կուսակցական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունները։

# ԱՌԱՋԻՆ ՇԱՐՔԵՐՈՒՄ

**ՎԻԼԵՆՍ. ԱՍԱՏՐՅԱՆ**
Միավորման կուսկոմիտեի քարտուղար

ՄԵՐ ԳՈՐԾԵՐՆ ԻՐՈՔ լավ են ընթանում։ Դա պետք է բացատրել նաև կազմակերպական ու քաղաքական-դաստիարակչական այն հետևողական աշխատանքով, որ ծավալում են միավորման կուսկոմիտեն և ֆաբրիկաների սկզբնական կուսկազմակերպությունները։ Մենք քաջ գիտակցում ենք, որ չափազանց պատասխանատու են բարձր արդյունավետության և որակի հնգամյակում մեր առջև կուսակցության դրած խնդիրները։ Դրանց լուծման հաջողությունը պայմանավորված է կուսկազմակերպությունների մարտունակության աճով, նրանց կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի բարձր մակարդակով, յուրաքանչյուր կոմունիստի ստեղծագործական նախաձեռնության և ակտիվության զարգացմամբ, ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտներում կուսակցական ազդեցության ուժեղացմամբ։

Ղեկավարվելով կուսակցության առաջադրած պահանջներով՝ կուսկոմիտեն և սկզբնական կազմակերպությունները վերակառուցել են իրենց գործելակերպը, ջանում են տեսադաշտից դուրս չթողնել ոչ մի բնագավառ, ոչ մի տեղամաս։ Մենք այժմ ավելի շատ ենք խորամուխ լինում արտադրության հարցերի մեջ, ժամանակին բացահայտում թերությունները, գործնական միջոցառումներով կանխում, վերացնում դրանք։

Կուսկոմիտեն և սկզբնական կազմակերպությունները պարբերաբար քննարկում են տեխնիկատնտեսական ցուցանիշների լավացմանն առնչվող պրոբլեմներ, բարձրացնում կոմունիստների, արտադրության հրամանատարների պատասխանատվությունը, օգնում նոր ռեզերվների և հնարավորությունների հայտաբերմանն ու գործադրմանը։ Բազմաթիվ օրինակներից նշեմ մեկը։ Դա վերաբերում է նյութատեխնիկական մատակարարմանը, որն արտադրության կազմակերպման նեղ տեղերից է և որով մեծապես պայմանավորված են համաչափ աշխատանքի ապահովումը, պլանային առաջադրանքների կատարումը, թողարկվող արտադրանքի որակի բարելավումը։ Իններորդ հնգամյակի առաջին տարիներին միավորումը չափազանց ծանր կացության մեջ էր. նյութատեխնիկական վատ մատակարարման պատճառով խախտվել էր ձեռնարկությունների համաչափ աշխատանքը, նրանք չէին կարողանում կատարել առևտրական կազմակերպությունների հետ ունեցած պայմանագրային պարտավորությունները, ապահովել ինչպես գույների, այնպես էլ տեսականու սահմանված մակարդակը։ Խախտվում էր և աշխատանքային գրաֆիկը. ծանրաբեռնված էր լինում միայն ամսվա երրորդ տասնօրյակը։ Պարզ է, որ նման պայմաններում անհնար էր ապահովել որակական ցուցանիշները։

Բավականին լուրջ դժվարության առաջ էր կանգնած միավորման ղեկավարությունը։ Ուստի կուսկոմիտեն այդ հարցը դարձրեց քննարկման առարկա։ Շուրջ երկու ամիս բազմակողմանիորեն ուսումնասիրվեց ու ամենայն մանրամասնությամբ նախապատրաստվեց այն, մեր ներկայացուցիչները եղան մատակարարող կազմակերպություններում՝ Արմավիրի կաղապարների, Լենինգրադի ֆուրնիտուրայի գործարաններում և Երևանի Ստ. Շահումյանի անվան կաշվի արտադրական միավորումում, որը մեր հիմնական մատակարարն է։ Վերանայվեցին մեր և նրանց միջև կնքված բոլոր տեսակի պայմանագրերը։ Երբ հարցն արդեն պատրաստ էր, հրավիրեցինք գլխամասային ֆաբրիկայի սկզբնական կուսկազմակերպության դռնբաց ժողով, որտեղ բացահայտվեցին մեր գործունեության թերությունները, պլանները թերակատարելու օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառները։ Ժողովը գտավ, որ, չնայած գոյություն ունեցող օբյեկտիվ պատճառներին, այնուամենայնիվ, միավորման մատակարարման բաժնի աշխատանքը խիստ անբավարար է։ Մտքերի լայն փոխանակությունից հետո ժողովն ընդունեց գործնական որոշում, հանձնարարությունների կատարման համար սահմանեց կոնկրետ ժամկետներ։

Արդյունքն ակներև էր. բարձրացավ մարդկանց պատասխանատվությունը, փոխվեց ընդունված որոշումների կատարման նկատմամբ նրանց վերաբերմունքը։ Մատակարարման գործի կարգավորմամբ լուծվեցին շատ հարցեր։

Մեկ ուրիշ հարց։ Արդեն խոսվել է մեզ մոտ որակի կառավարման կոմպլեքսային համակարգի արմատավորման մասին։ Միամտություն կլինի կարծել, թե մի օր գործի ենք եկել ու հայտարարել՝ այսօրվանից անցնում ենք այդ համակարգին։ Դա մեզնից պահանջել է նախապատրաստական տևական ժամանակ, բացատրական լայն աշխատանք։ Նախքան գործի ձեռնարկումը անհրաժեշտ էր բոլորին հանգամանորեն պարզաբանել որակի կառավարման կոմպլեքսային համակարգի առավելությունները, նրանց համոզել, մանրամասնորեն բացատրել, որ դա նշանակում է լայն վերահսկողություն՝ սկսած հումքի ընդունումից մինչև արտադրանքի իրացումը, ներառյալ արտադրական ողջ պրոցեսը։ Հարկ էր որոշել, թե տվյալ դեպքում ով ինչ պատասխանատվություն պետք է կրի՝ բանվոր լինի նա, վարպետ, արտադրության հրամանատար, թե ինժեներատեխնիկական աշխատող։

Ի դեպ, նրանց համար, ովքեր պետք է որակի կառավարման կոմպլեքսային համակարգի մասին զրույցներ կազմակերպեին, անհրաժեշտ բացատրական աշխատանք տանեին բանվոր-ծառայողների շրջանում, ստեղծվեց հատուկ համալսարան, որը ղեկավարում է միավորման գլխավոր դիրեկտորը։ Համալսարանի պարապմունքների ընթացքում զեկուցումներով հանդես են գալիս միավորման ձեռնարկությունների գլխավոր ինժեներները, արտադրամասերի պետերը, լաբորատորիաների, տեխնիկական վերահսկողության, պլանային, տնտեսագիտական, աշխատանքի ու աշխատավարձի և մյուս բաժինների վարիչները, վարպետները։

Կուսկոմիտեի նախաձեռնությամբ միավորումում սահմանվել է որակի օր։ Դրան նվիրված խորհրդակցություններն արտադրամասերում կազմակերպվում են շաբաթական մեկ, իսկ ֆաբրիկաներում՝ ամսական մեկ անգամ։ Ամփոփվում են տվյալ շաբաթվա և ամսվա արդյունքները, բացահայտվում թերությունները, ուղիներ նշվում դրանց վերացման համար, տրվում կոնկրետ հանձնարարություններ։

Տասներորդ հնգամյակի հաջող կատարման համար, ինչպես շեշտվեց ՍՄԿԿ XXV համագումարում, պետք է ձգտել, որ ամեն մեկն աշխատի ջանասիրաբար, ստեղծագործաբար, պահպանի պետական ու աշխատանքային կարգապահությունը, բարձր պահանջկոտություն ցուցաբերի իր և ընկերների նկատմամբ։ Հասկանալի է, որ այդ պահանջն ամենից առաջ ներկայացվում է կոմունիստներին, որոնք կոչված են անձնական օրինակ ծառայելու կոլեկտիվում։

Մեր կուսկազմակերպություններում այժմ հաշվվում է ՍՄԿԿ 540 անդամ ու անդամության թեկնածու։ Նրանց ճնշող մասն անմիջականորեն աշխատում է բուն արտադրության ոլորտում։ Եվ շատ-շատերը ոչ միայն առաջավորներ են, այլև հայրենասիրական բազմաթիվ նախաձեռնությունների հեղինակներ, սոցմրցության առաջամարտիկներ, պայքարում են բարձրորակ արտադրանքի համար։ Գլխամասային ֆաբրիկայի ձևող արտադրամասի վարպետներ, կոմունիստներ Ռիմա Հովհաննիսյանն ու Սիրուշ Կարապետյանը միավորումում առաջինն են հրաժարվել տեխնիկական վերահսկողության բաժնի ծառայությունից և սկսել աշխատել անձնական դրոշմով։ Այդ նախաձեռնությունը լայն արձագանք է գտել ո՛չ միայն գլխամասային ֆաբրիկայում, այլև միավորման մյուս ձեռնարկություններում։ Այժմ առանց տեխնիկական վերահսկիչի աշխատող բանվորների թիվն անցնում է 120-ից։

Գլխամասային ֆաբրիկայի նախապատրաստական արտադրամասում արդեն երկրորդ տարին է, ինչ չորս հոսքային գծերում կազմակերպվել են միջանցիկ բրիգադներ, որոնցից մեկը ղեկավարում է երիտասարդ կոմունիստ, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, առաջավոր բանվորուհի Քնարիկ Սողոմոնյանը։ Այս արտադրամասի № 5 հոսքային գիծն աշխատում է առանց խոտանողի՝

միայն առաջին տեսակի արտադրանք նշանաբանով։ Արտադրամասի կոլեկտիվում սոցիալիստական մրցության առաջամարտիկները կոմունիստներն են՝ միավորման կուսկոմիտեի անդամ Գայանե Մկրտչյանը, Աղավնի Պողոսյանը, Ռուդոլֆ Հարությունյանը, Ռոզա Մնացականյանը, Աղնիվ Սուքիասյանը և ուրիշներ, որոնք մշտապես հայրենանվեր աշխատանքի օրինակ են տալիս, խանդավառում մյուսներին։

Բայց մեր նպատակն է զարգացնել ո՛չ միայն կոմունիստների, այլև կոլեկտիվների բոլոր անդամների ակտիվությունն ու նախաձեռնությունը, գաղափարական-դաստիարակչական աշխատանքի ոլորտը ներգրավել բոլորին, նրանցից յուրաքանչյուրին տալ քաղաքական ու տնտեսագիտական գիտելիքների անհրաժեշտ պաշար, դաստիարակել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով։ Այդ նպատակին են ծառայում քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման ցանցը, կոմունիստական աշխատանքի դպրոցները, պրոպագանդիստական-ագիտացիոն ողջ աշխատանքը։

Մեր բովանդակ երկրով մեկ սոցիալիստական լայն մրցություն է ծավալվել՝ 1978 թվականը հարվածային գործերի տարի դարձնելու համար։ Համաժողովրդական այդ շարժմանը ակտիվորեն մասնակցում է նաև մեր միավորման կոլեկտիվը։ Մենք մրցությունը կազմակերպում ենք այնպես, որ յուրաքանչյուր կոշկագործ իր անձնական ավանդը ներդնի ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների իրականացման համար մղվող պայքարում։

# ԱՄԵՆ ԻՆՉ ՀԱՆՈՒՆ ՄԱՐԴՈՒ

**ԳՈՀԱՐ ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ**
Միավորման արհկոմի նախագահ

**ՍՄԿԿ** XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ կուսակցության տնտեսական ստրատեգիայի գլխավոր խնդիրը համարեց ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը։ Համագումարը խնդիր դրեց հետևողականորեն բավարարել սովետական մարդկանց նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքները, բարելավել նրանց աշխատանքային ու կենցաղային պայմանները, ամեն ինչով նպաստել սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը։

Այս խնդիրը օրենսդրական ուժ է ստացել ՍՍՀՄ նոր Սահմանադրությունում։ ՍՍՀՄ Հիմնական օրենքն արտացոլում է պետության հոգատարությունը կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի նկատմամբ։

Միավորման դիրեկցիան ու արհմիութենական կոմիտեն, ֆաբրիկաների ղեկավարությունն ու արհմիութենական կոմիտեները, կուսկազմակերպությունների գլխավորությամբ, մշակում և իրականացնում են ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած այդ պահանջների կատարմանը նպաստող բազմազան միջոցառումներ։ Դրանց մեջ գլխավորը կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանն է, որն ընդգրկում է 1976—1980 թվականները։

Սոցիալական զարգացման պլանը, բանվորների և ծառայողների նյութական, կուլտուր-կենցաղային պայմանների բարեկավումից, կրթության և առողջապահության գործի կազմակերպումից, նրանց հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացումից զատ, ներառում է նաև գիտատեխնիկական առաջընթացի, աշխատանքի գիտական կազմակերպման և այլ խնդիրներ, որոնք նպաստում են կոլեկտիվի սոցիալական զարգացման ծրագրի իրականացմանը։

Ժամանակակից բարձր զարգացած արտադրությունը պահանջում է մըշ-



տապես հոգալ բանվորների ու ինժեներատեխնիկական աշխատողների կրթական մակարդակի բարձրացման ու մասնագիտական որակավորման կատարելագործման մասին։ Այդ գործը մեզ մոտ դրված է ամուր հիմքերի վրա և առանձնակի տեղ ունի սոցիալական զարգացման պլանում։ Ելնելով պարտադիր միջնակարգ կրթության պահանջից՝ գլխամասային կոշիկի ֆաբրիկայում կազմակերպել ենք հերթափոխային դպրոց, ուր, առանց արտադրությունից կտրվելու, կրթություն են ստանում 120 երիտասարդ բանվորներ։ Երեկոյան բաներիտ դպրոցներում, տեխնիկումների, բարձրագույն ուսումնական հաստատությունների երեկոյան բաժիններում սովորողների թիվը հասնում է 295-ի։ Ավելի քան 1230 կոշկագործներ ընդգրկված են կադրերի որակավորման, արտադրատեխնիկական, ուսուցման ու նպատակային նշանակության դասընթացներում և աշխատանքի առաջավոր մեթոդների ուսուցման դպրոցներում։ Մեծ թվով բանվորներ տիրապետում են երկրորդ մասնագիտությանը։ Առանց արտադրությունից կտրվելու ուսուցման գործի ճիշտ կազմակերպումը հնարավորություն է ընձեռում միավորման ֆաբրիկաների ինժեներատեխնիկական անձնակազմը համալրել նաև սեփական կադրերով։ Այժմ մեր միավորման համակարգում աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 374 մասնագետներ, որոնցից շատերը նախկին բանվորներ են։

Սոցիալական զարգացման պլանով նախատեսված է կատարելագործել ուսուցման այդ ձևերը, զգալիորեն ավելացնել նրանցում սովորողների թիվը։ Միայն բաներիտ դպրոցներում կուսանեն 2360 երիտասարդներ, մի քանի տասնյակ կոշկագործներ ձեռնարկությունների հաշվին կստանան բարձրագույն կրթություն։ Արտադրությունն ու ուսումը ճիշտ համատեղող մեր աշխատողները կխրախուսվեն նյութապես ու բարոյապես։

ՍՄԿԿ XXV համագումարը կարևորեց նյութական ու բարոյական խրախուսանքի դերը արտադրական խնդիրների լուծման գործում։ Արհմիության կոմիտեն միավորման դիրեկցիայի հետ միասին մշակում է բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների նյութական շահագրգռության բարձրացման միջոցառումներ։ Մեզ մոտ նյութապես խրախուսվում են ոչ միայն սոցիալիստական մրցության հաղթողները և արտադրական առաջադրանքները գերակատարողները, այլև 2—3 մասնագիտություն յուրացրած բանվորները, այն վարպետները, որոնց բրիգադները, հերթափոխություններն ու տեղամասերը կատարում են նախատեսված նորմաները։ Մեր աշխատողները դրամական լրացուցիչ վարձատրություն են ստանում արտադրական պլանները կատարելու, բարձրորակ արտադրանք թողարկելու, հումքն ու նյութերը տնտեսելու համար։ Անցած հնգամյակում նյութական խրախուսանքի ֆոնդից տրված վճարումներն աճել են 17,7 տոկոսով։ Տասներորդ հնգամյակում էականորեն կավելանան նյութական խրախուսանքի ֆոնդի վճարումները։ 1975 թ. 894 հազար ռուբլու դիմաց դրանք 1980 թ. կհասնեն 1 մլն 429 հազար ռուբլու։ Տարեցտարի աճում է բանվորների ամսական միջին վաստակը։ Տասներորդ հնգամյակում այն կավելանա 14,4 տոկոսով։

Մենք կիրառում ենք բարոյական խրախուսանքի մի ամբողջ շարք միջոցառումներ։ Առաջավորներին պարգևատրում ենք պատվոգրերով, հուշանվերներով ու կրծքանշաններով, նրանց հայտնում շնորհակալություն, անունները գրանցում պատվո գրքում, լուսանկարները փակցնում պատվո տախտակին, շնորհում «Իր մասնագիտության մեջ լավագույնը», «Լավագույն վարպետ-դաստիարակ», «Լավագույն ձևող», «Լավագույն կարող» «Կոմունիստական աշխատանքի հարվածային» և այլ կոչումներ։

Մենք մշտապես հոգ ենք տանում բանվոր-ծառայողների աշխատանքի ու կենցաղային պայմանների բարելավման, նրանց առողջության պահպանման և հանգստի կազմակերպման մասին։ Գլխավորող, մոդելային կոշիկների, №№ 1 և 4 ֆաբրիկաներում արտադրամասերը լիովին կահավորել ենք ժամանակակից արտադրական էսթետիկայի պահանջներին համապատասխան, բարեկարգել ֆաբրիկաների բակերը, անցկացրել անցուղիներ, տնկել ծառեր ու թփեր, պատրաստել ցայտաղբյուրներ։

*Բանվորների աշխատանքի պայմանների բարելավման նպատակով ընթացիկ հնգամյակում կիրականացվեն նոր տեխնիկայի ներդրման ու անվտանգության տեխնիկայի բազմաթիվ միջոցառումներ։ Սանիտարակենցաղային, սննդի և առողջապահության օբյեկտները կկահավորվեն ավելի ճաշակով, կհագեցվեն ժամանակակից նոր սարքավորումներով ու գույքով, կընդլայնվեն գործող բուժկետերը, կբացվեն նորերը։ Նախատեսվում է նոր հնգամյակում սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդին հատկացնել 2 մլն 130 հազար ռուբլի և դրա հաշվին կառուցել բնակելի տուն, պանսիոնատներ, պիոներական ճամբար, ճաշարաններ։*

*Լավ ենք կազմակերպում բանվոր-ծառայողների և նրանց երեխաների հանգիստը։ Ամեն տարի նրանց հատկացնում ենք առողջարանների, հանգստյան տների, տուրիստական շրջագայության մեծ քանակությամբ ուղեգրեր, հարյուրավոր բանվորներ մեկնում են մեկ կամ երկօրյա հանգստի։ Ընդ որում, միջոցների զգալի մասը հատկացնում է արհկոմը։ Ֆաբրիկաներն ունեն իրենց մսուր-մանկապարտեզները։ Ձեռնարկության հաշվին բանվորներն ստանում են անվճար արտահագուստ, իսկ որոշ կատեգորիայի աշխատողներ՝ նաև սնունդ, ճաշարաններում ճաշերը տրվում են զեղչ գներով։*

*Թվարկածը, իհարկե, կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանով նախատեսված միջոցառումների լրիվ ցանկը չէ։ Մենք հսկայական միջոցներ ենք տրամադրում և շատ բան անում կոշկագործների նյութական-կուլտուրական ու հոգևոր պահանջմունքները բավարարելու համար։*

*Կոլեկտիվի սոցիալական զարգացման նպատակով մեր ձեռնարկած միջոցները մեծապես նպաստում են արտադրության մարդկանց քաղաքական ու աշխատանքային ակտիվության բարձրացմանը, նրանց նախաձեռնության զարգացմանը։ Դա իր արտացոլումն է գտնում սոցիալիստական մրցության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման մեջ և առաջավոր բանվորների հայրենասիրական նախաձեռնություններում։ Միավորման ձեռնարկություններում լայնորեն կիրառվում են կոլեկտիվ ու անհատական մրցության և մրցույթների բազմազան ձևեր։ Կոմունիստականի բարձր կոչման համար են պայքարում 68 հոսքային գծեր, որտեղ ընդգրկված են 5.831 բանվոր-ծառայողներ։ Միավորման ձեռնարկություններում լայնորեն արմատավորվել են «Հայաստանի ապրանքներին՝ գերազանց որակ», «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք», «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական ապահովում» և այլ նախաձեռնություններ։ «Մեկ հնգամյակում կատարել երկու հնգամյա պլան» նախաձեռնությանը հետևող 56 բանվորներից չորսը՝ Պարգև Պողոսյանը (գլխամասային ֆաբրիկա), Ռոզա Մովսիսյանը (№ 1 ֆաբրիկա), Վերժինե Ալեքսանյանը (Նորաձևության ֆաբրիկա) և Մուրադ Թերզյանը (փորձարարական ֆաբրիկա) արդեն կատարել են իրենց հնգամյա անհատական առաջադրանքը։ Գլխամասային ֆաբրիկայում կազմակերպված չորս միջանցիկ բրիգադներում ընդգրկված են 520 բանվոր-ծառայողներ։ Գևորգ Գաբրիելյանի ղեկավարած գերազանց որակի միջանցիկ բրիգադը 1976 թ. արժանացավ ՍՍՀՄ Թեթև արդյունաբերության աշխատողների արհմիության Կենտկոմի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Պատվո դիպլոմին»։ Նրա անունը գրանցվեց կոմերիտմիության պատմության տարեգրքում։*

*Շատ են կոլեկտիվի սոցիալական զարգացման ասպարեզում ձեռք բերած հաջողությունները, ավելի պայծառ են նրա հեռանկարները։ Կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները՝ մենք ամեն ինչ անում ենք կոմունիզմ կառուցող մարդու բարօրության, նրա հոգևոր կյանքի ծաղկման համար։*

---

**150 ՀԱՎԵՐԺ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ**

# ՀԱՅ ԵՎ ՌՈՒՍ ԶԻՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ 1826-1828 Թ Թ. ՌՈՒՍ-ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ

**Հ. Մ. ՊՈՂՈՍՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ՊԱՏՄԱԿԱՆ ԲԱԽՏՈՐՈՇ ժամանակաշրջան են եղել հայ ժողովրդի համար XIX դարի առաջին երեք տասնամյակները. Արևելյան Հայաստանը միավորվել է Ռուսաստանին, և սկսվել է շրջադարձը նրա քաղաքական, սոցիալական, տնտեսական ու մշակութային կյանքում։ Ռուս-պարսկական պատերազմով վերջ տրվեց պարսկական ծանր տիրապետությանը։*

*1801 թ. Ռուսաստանի կազմի մեջ մտավ Վրաստանը, իսկ 1813 թ. Գյուլիստանի պայմանագրով՝ Պարսկաստանի տիրապետության տակ գտնվող մի շարք խանություններ։ Վրաստանի միացմամբ Ռուսաստանի տիրապետությանն անցան նաև Լոռին, Փամբակը, Բորչալուն և այդտեղ բնակվող հայերը, իսկ խանությունների միացմամբ՝ Ղարաբաղի և շրջակա վայրերի հայությունը։ Սակայն հայ ժողովրդի արևելյան հատվածի հիմնական մասը գտնվում էր Երևանի և Նախիջևանի խանություններում՝ պարսկական լծի տակ։*

*Մինչև Ռուսաստանի կազմի մեջ մտնելը հայ ժողովուրդը, նրա հայրենիքը գտնվում էին երկու բռնակալական տերությունների՝ Օսմանյան Թուրքիայի և շահական Պարսկաստանի տիրապետության տակ, որոնք, XVI դարից սկսած, իրար հետ երկարատև պատերազմներ էին մղում այդ երկրին տիրելու համար. ոտնակոխ էր լինում հին մշակույթ ունեցող մի ժողովուրդ։ Ինչպես խաները, նույնպես և փաշաներն ու բեկերը բռնագաղթերով, ծանր հարկերով և ազգային արժանապատվության ոտնահարմամբ ցանկանում էին ձուլել կամ բնաջնջել այդ ժողովրդին։*

*Պատմական բազմաթիվ վավերագրեր և ուսումնասիրություններ հավաստում են ժողովրդի ճակատագրի, նրա կրած ծանր տառապանքների մասին։ Օրհասական այդ վիճակից փրկվելու, ֆիզիկական գոյությունն ու մշակույթը պահպանելու միջոցներ որոնող ժողովրդի առաջադեմ զավակների հայացքը միշտ ուղղված է եղել դեպի Ռուսաստան, որից և նրանք ակնկալում էին ռեալ օգնություն։*

*1804 թ. ամռանը գեներալ Ցիցիանովն սկսեց իր արշավանքը դեպի Երևան. ռուսական զորքերը պաշարեցին Երևանի բերդը, սակայն գրավել չկարողացան։ Երևանը գրավելու նպատակով ռուսական զորքերի երկրորդ արշավանքն սկսվեց 1808 թ., սակայն այս անգամ ևս չհաջողվեց այդ։ Ռուսական զորքերի երրորդ արշավանքն սկսվեց 1817 թ.։ Երևանի բերդն այս անգամ ևս չգրավվեց։*

*1826 թ. Պարսկաստանը ռուսական սահմանի մոտ հսկայական ուժեր*

կենտրոնացրեց և սկսեց հարձակումը Փամբակի ու Շորագյալի հայկական գյուղերում տեղավորված ռուսական սակավաթիվ ուժերի վրա, որոնք դիմեցին պաշտպանական անհավասար մարտերի։ Հայկական գյուղերի բնակիչները համառորեն դիմադրում էին թշնամուն։ Ցավով նշենք, որ այս հերոսամարտերի մասին մանրամասն տեղեկություններ չկան։ Դրանցից ավանդաբար պատումներ են հասել մեզ Գյումրու խարում գյուղի յուզբաշի Դելի Ղազարի և խլղարաքիլիսեցի Ավետիքի մասին։ Գյումրու և հիշյալ գյուղերի բնակիչները նախապատրաստվեցին դիմագրավելու պարսիկներին։ Այդ իրադարձությունները գեղարվեստորեն արտացոլել է Խ. Աբովյանը Վերք Հայաստանի վեպում։ Հասան խանի ուժերի դեմ մղված հերոսական դիմադրության մասնակիցներից Աբովյանը հիշատակում է խլղարաքիլիսեցի իշխան պարոն Աղա Սարգսին, որն իր ողջ ունեցվածքը դրել էր պարսկական ուժերի դեմ կռվողների տրամադրության տակ։

Պարսկական ուժերը Հասան-խանի գլխավորությամբ հարձակվեցին գյուղի վրա։ Բնակիչները համառորեն դիմադրում էին՝ Աղա Սարգսի գլխավորությամբ։ Պարսիկները չկարողացան գյուղը գրավել։ Խանի բանագնացները հայտնեցին Սարքսին, որ եթե նա հրաժարվի ռուսներին պաշտպանելուց, հեռանա նրանցից, ապա նրա ժողովրդի մազին կպչող չի լինի։ Ճիշտ գնահատելով իր ժողովրդի համար բախտորոշ այդ իրադրությունը՝ Սարքիսը մերժեց առաջարկը. պարսիկները վերսկսեցին հարձակումը։

Շուտով գյուղին օգնության հասան ռուսական ուժերը և հայ կտրիճների գլուխն անցած Աղասին։ Սակայն պարսկական բազմամարդ զորքը կատաղի կռիվներով գրավում է գյուղը և դաժան դատաստան տեսնում բնակիչների հետ։

Ռուսական զորքի փոքրաթիվ ջոկատները և հայկական ուժերը, թշնամու դեմ անհավասար մարտեր մղելուց հետո, հարկադրված թողեցին Փամբակն ու Շորագյալը, խմբվեցին Ջալալօղլի ու Գյառգյառ գյուղերում և տեղի հայ բնակիչների հետ սկսեցին նախապատրաստվել գալիք կռիվներին։ Պարսկական զինվորները դաժան հաշվեհարդար տեսան Փամբակի և Շորագյալի հայկական գյուղերի բնակիչների հետ. այդ գյուղերը վերածվեցին անմարդաբնակ ավերակների։ 1827 թվականին նույն վիճակին արժանացան նաև Դիլիջանի և Ղարաբաղի հայկական գյուղերը։

Այդ ժամանակամիջոցում գահաժառանգ Աբաս Միրզան 60 հազարանոց բանակով պետք է անցներ Արաքսը և հարձակվեր Ղարաբաղի վրա։ Այս իրադրության մեջ գահաժառանգի հսկայական բանակի առաջխաղացումը կասեցնելու նպատակով ռուսական բանակի փոքրաթիվ ուժերը կազմակերպեցին համառ դիմադրություն։ Ախղարաչայ գետակի ափին նրանք անհավասար մարտի բռնվեցին։ Շահզադեի ահռելի ուժերը ջախջախեցին գունդը. շատ քչերը կենդանի մնացին։ Պարսկական զորքը ո՛չ միայն ոչնչացնում էր ռուսական փոքրաթիվ ուժերին, այլև ավերում հայկական գյուղերը, վանքերն ու եկեղեցիները. նրանք բարբարոսաբար ավերեցին Տաթևի վանքը։

Պարսկական բանակի հրամանատարը պատերազմը շահած էր համարում. նա կամենում էր շուտափույթ գրավել Շուշին, որտեղ գնդապետ Ռեուտն ուներ 1.700 զինվոր ու սպա, մոտ այդքան էլ աշխարհազորայիններ։ Շուշու ռուս զինվորներն ու հայերը վճռեցին պաշտպանվել մինչև արյան վերջին կաթիլը, չնայած դիմադրության համար անհրաժեշտ չափով պաշար չունեին։ Պարսկական բանակը 44 օր պաշարեց Ղարաբաղի միջնաբերդը՝ Շուշին. դիմադրողները պաշտպանում էին այն՝ անասելի զրկանքների գնով։ Շուշու հայկական հատվածին ոգևորում, կռվով էին ներշնչում Սաֆար և Ռոստոմ Թարխանյանները։

Պարսկական գահաժառանգն ինքն էր ղեկավարում բանակի գրոհները Շուշու բերդի պաշտպանների դեմ։ 12 հազար զինվոր նա ուղարկեց Գանձակը գրավելու և այնտեղից Թիֆլիս անցնելու համար, որտեղ ռուսական բանակի 4.000 զինվոր կար միայն։ Պատերազմը շահած համարելով՝ Աբաս Միրզան կամենում էր արագացնել Շուշու բերդի գրավումը, սակայն բերդի ռուսական ուժերը՝ աշխարհազորայինների հետ, մեծ կորուստներով, զրկանքներով ու տառապանքներով համառորեն դիմադրում էին, չմտածելով իսկ բերդը հանձնելու



մասին։ Հայ աշխարհազորայինները ո՛չ միայն կռվում, այլև զենքեր, վառոդ էին պատրաստում։

Այդ օրերին Ներսես Աշտարակեցին Անդրկովկասի հայկական վայրերի բնակչությանն ուղեց մի կոչ-շրջաբերական, որտեղ, ներկայացնելով իր մասնատված ժողովրդի օրհասական վիճակը, շեշտում էր, որ միայն ռուսների օգնությամբ, ռուսական պետությանը միավորվելով կարելի է ազատվել տարաբախտություններից ու թշվառություններից։ Կոչը գրված էր հայրենասիրական ջերմ շնչով։

Հայ ժողովրդի զավակները քաջաբար մարտնչեցին պարսկական լուծը թոթափելու, ռուսական զորքերին օգնության հասնելու համար։ Աբովյանի վեպում շատ շատերի հետ ներկայացված է նաև արծաթեցի Մանուկ աղան, որն «առյուծի պես քառասուն քաջ հայազգիներով» կռվում էր Բայազետում։ Երբ ռուսական զորքերը գրավեցին Բայազետը, նա իր ջոկատը դրեց ռուսական զորքերի հրամանատարության տրամադրության տակ։ Այնուհետև հիշատակվում են շուլավերցի Սոսի աղան ու Մելիք Հոհանջանը, որ «հրեղեն վիշապի պես ընկել էին Քաշվեթու ու Բոլնիսի սարերը, որ թշնամու առաջը կտրեն, տեղ չտան»։

Ջերմ, հիացմունքով լի էջեր է նվիրել Աբովյանը հայ քաջորդիներից մեկին՝ Ցիցիանովի դեպի Երևան կազմակերպած արշավանքի մասնակից, Շամշադնի Հախում գյուղից Գրիգոր Մանուչարյանին։ Ի պատիվ նրա, այդ գյուղը կոչվում էր նաև Վարդապետի գյուղ։ Խիզախ այս մարտիկը ավելի շատ ռազմիկ էր, քան հոգևորական։ Երբ Ցիցիանովը 1803 թ. հարձակվեց Գանձակի վրա, Մանուչարյանը միացավ նրան 500 հոգուց բաղկացած իր հեծելագնդով։ Իր ժողովրդի ազատագրությունն էր նրա կյանքի բուն նպատակը, և նա հագնում է ռազմիկի հանդերձանք, առաջնորդում գունդը դեպի ռազմի դաշտ. քաջագործությունների համար նա արժանանում է ս. Գևորգի չորրորդ աստիճանի շքանշանի, որը նրա կրծքին է փակցնում ինքը՝ գեներալ Ցիցիանովը։ Իր անմահ վեպում Խ. Աբովյանը նրա մասին գրել է. «Եպիսկոպոսության շորերը փոխած, չերքեզի շոր հագած, յարաղ, ասպաբ կապած, որ Թիֆլիզու, Ղազախի, Բոռչալվի միջովը չէր անց կենում, հենց իմանում էր խալխը՝ թե իրանց փրկիչն էր գալիս» (տե՛ս Խ. Աբովյան, Ընտիր Երկեր, հ. 1, էջ 144, 1939)։

Երբ ռուսական զորամասերը գեներալ Գուդովիչի գլխավորությամբ 1808 թ. արշավեցին դեպի Արարատյան դաշտ և արդեն երկրորդ անգամ պաշարեցին Երևանի բերդը, Գրիգոր Մանուչարյանն իր ջոկատի կտրիճներով կռվում էր ռուսական զորամասերի շարքերում։ Նրա անձնական օրինակը ոգևորում էր ջոկատի մարտիկներին։ Տեղեկությունները վկայում են, որ այդ ճակատամարտից հետո Գրիգորը պարգևատրվեց Վլադիմիրի և Աննայի շքանշաններով։

Պարսկական զորքը գերեվարել էր մի քանի հարյուր հայ ընտանիքներ։ Մանուչարյանն իր ջոկատով կռվի բռնվեց թշնամու հետ, «...առյուծի պես իր ժողովրդին ազատեց, ետ բերեց»։ Պասկևիչին գրած իր նամակներից մեկում Եփրեմ կաթողիկոսը հավաստում է, որ Երմոլովի կարգադրությամբ Գրիգոր Եպիսկոպոսը խաղաղեցրեց Բորչալուի, Ղազախի ու Շամշադինի շրջանների ադրբեջանական ազգաբնակչությանը, որոնք աղալարների ու բեգերի թելադրանքով ապստամբել էին ռուսական կառավարության դեմ։

Ռուս-պարսկական պատերազմի ժամանակ Գ. Մանուչարյանն իր ջոկատով ամուր պատնեշ ստեղծեց հայրենի Շամշադինի սահմաններում, թույլ չտալով, որ պարսից Զոհրաբ խանի ուժերը մտնեն Շամշադինի Ամիրլախ գյուղը. միաժամանակ նա օգնեց վրաց կամավորական ջոկատին Ասրիկ գետի մոտ ջարդելու պարսից Մահմեդ և Զաման խաներին։

Աբաս Միրզայի բանակը շարունակում էր Շուշու պաշարումը։ Այդ օրերին Անդրկովկաս ժամանեց գեներալ Մադաթովը։ Նրա շուրջը համախմբվեցին ապստամբ աղալարները, որոնց ուժերից գեներալը մի հեծելագունդ կազմեց։ Մադաթովին միացավ և Գրիգոր Մանուչարյանի ջոկատը։ Սեպտեմբերի 3-ին ռուսական զորքերը Շամխոր գետակի մոտ ջարդեցին պարսկական բանակը և գրավեցին Գանձակը։ Պարսիկները կռվի դաշտում թողեցին 2.000 սպանված

և մեծ քանակությամբ ավար։ Այդ ճակատամարտը, ապա և Գանձակի գրավումը շրջադարձային կետ հանդիսացան ռուս-պարսկական պատերազմում։ Սեպտեմբերի 9-ին Աղստաֆա հասավ Կովկասյան զորքերի նոր հրամանատար Պասկևիչը։ Զորահրամանատարի հետ Անդրկովկաս ժամանեցին դեկաբրիստների ապստամբությանը մասնակցած վաշտերը։ Հասնելով Գանձակ՝ Պասկևիչն ընդունեց հրամանատարությունը։ Ռուսական և պարսկական ուժերի ճակատամարտը տեղի ունեցավ սեպտեմբերի 13-ին, որն ավարտվեց ռուսաց զորքերի փայլուն հաղթանակով։ Այս երկու ճակատամարտից հետո ռուսական հրամանատարությունը տեղեկացավ, որ Հասան խանը մտադիր է հարձակվել Դիլիջանի և Լոռու վրա։ Պասկևիչը Դիլիջանի ձորի պաշտպանությունը հանձնարարեց Գրիգոր Մանուչարյանին։ Այդ օրերին Անդրկովկաս էր ժամանել նաև 1812 թ. պատերազմում փառաբանված պարտիզանական ջոկատների հրամանատար Դենիս Դավիդովը. նա նշանակվեց Ջալալօղլում կենտրոնացած ուժերի հրամանատար։ Նրա զինվորները ջախջախեցին Հասան խանի ուժերը և քշեցին նրանց մինչև Երևանի բերդը։ Կռվի դաշտից ճողոպրած խանն իր վայրագությունը թափեց խաղաղ հայ գյուղացիների վրա, թալանելով, կողոպտելով նրանց ունեցվածքը։

1827 թ. մարտի 29-ին Կովկասի կառավարիչ Պասկևիչն սկսեց նախապատրաստել արշավանքը դեպի Երևան ու Նախիջևան։ Ներսես Աշտարակեցին Անդրկովկասի հայկական բնակավայրերն էր հղում բազմաթիվ նամակներ, որոնցում կոչ էր անում համախմբվել ռուսական բանակի շուրջը. «Հասել է ժամը,— ասում էր նա,— երբ աչքով պետք է տեսնենք Արարատյան աշխարհի և հայոց ազգի ազատությունը... Ոտքի կանգնեցե՛ք, հայոց քաջեր, թոթափեցե՛ք պարսից լուծը, ուրախացրե՛ք ալեզարդ Մասիսին, մի անգամ արյունով ներկեցե՛ք հայրենի հողերը և ապա ապրեցե՛ք ազատ... Ժամ է արդեն, ո՛ն, ա՛նդր... հիմա, կամ երբեք»։

Ներսես Աշտարակեցին, Հարություն Ալամդարյանը և ժամանակի առաջավոր ուրիշ հայ գործիչներ ժողովրդի ցանկությամբ առաջարկեցին կազմակերպել հայկական կամավորական գունդ։ Առաջարկն ընդունվեց Պասկևիչի կողմից։ 1827 թ. մարտին Թիֆլիսում ձեռնարկեցին գնդի կազմակերպմանը. առաջին օրերում նրա կազմում ընդգրկվեցին 280 կամավորներ։ Մայիսի 15-ին Թիֆլիսի հայկական եկեղեցիներից մեկում օրհնվեց գնդի դրոշակը. այդ արարողության ժամանակ Ալամդարյանն արտասանեց հայրենասիրական ոգեշունչ ճառ։ Թիֆլիսում կազմակերպված հայկական գնդի հրամանատարն էր Եգոր Լազարյանը, տեղակալը՝ Դավիթ Ղորղանովը։

Ռուսական զորքերի պատերազմական պլանով նախատեսվում էր 1827 թ. գարնանից սկսել արշավանքը Երևանի խանության վրա. այն գրավելուց հետո զորքերը պետք է անցնեին Արաքս գետը և սրընթաց արշավեին դեպի Թավրիզ։ Ապրիլի 2-ին ռուսական զորքերը, Բենկենդորֆի գլխավորությամբ, շարժվեցին դեպի Երևան։ Ռուսական բանակը դեռ չէր հասել Արարատյան աշխարհը, երբ լուր ստացվեց, որ պարսկական իշխանությունները նախապատրաստում են բնակչության տեղահանությունը։ Դեռևս 1827 թ. գարնանը պարսկական իշխանություններն արգելել էին հայ գյուղացիներին գարնանացան և աշնանացան կատարել։ Նրանք դատարկել էին նաև Էջմիածնի վանքի հացահատիկի ամբարները։ Լսելով ռուսական բանակի արշավանքի մասին՝ պարսիկներն սկսեցին Արարատյան դաշտի և Ղրխբուլաղի գյուղացիների տեղահանությունը, քշելով նրանց Արաքսի մյուս ափը։

Հայոց վերքի երգիչը՝ Խաչատուր Աբովյանը նշում է, որ տեղահանությունը կատարվել է բարբարոս մեթոդներով, պատմության մեջ չլսված, չտեսնված անգթությամբ։ Վերքի մի քանի էջերում անհուն կսկիծով նկարագրված է այդ տեղահանությունը։ «Որի հերն էր մերձիմահ տանը մնացել ընկած,— գրում է Աբովյանը,— որի հարսը կամ կնիկը, կամ պառկած ծննդկանը, կամ ծծկեր երեխեն օրորոցումը։ Տեսնողի սիրտը կրակ էր ընկնում, բայց անողորմ ղզլբաշի թուրն ու արինթաթախ ձեռը՝ ո՛չ հեր էր հարցնում, ո՛չ հիվանդ, ո՛չ ծեր, ո՛չ տղա, ո՛չ մեր, ո՛չ աղջիկ»։



Մայիսի 17-ին հայկական կամավորական գունդը ռուսական զորքերի հետ դուրս եկավ Թիֆլիսից և շարժվեց դեպի Երևան։ Ճանապարհին հայկական գյուղերի բնակիչները չտեսնված ոգևորությամբ էին դիմավորում կամավորներին. հայրենասեր երիտասարդներից շատերը խտացնում էին նրանց շարքերը։ Արդեն ավելի քան 1.000 մարդ կար հայ կամավորներից կազմված գնդում։

Հունիսի 8-ին գեներալ Պասկևիչն Էջմիածնում էր։ Գեներալ Կրասովսկուն թողնելով Երևանի պաշարումը՝ ռուսական զորքը շարժվեց դեպի Նախիջևան, գրավեց Աբասաբադի բերդը, ապա անցավ Արաքսը և Ջիվան Բուլաղի մոտ ջարդեց Աբաս Միրզայի 16.000-անոց բանակը։

Մինչ Նախիջևանում ռուսական զորքը նորանոր հաղթանակներ էր տանում, Կրասովսկու բանակը, չդիմանալով կլիմայական պայմաններին, ստիպված տեղափոխվեց Ապարանի մոտ։ Էջմիածնում նա թողել էր մի վաշտ զորք՝ 1.000-ից ավելի հիվանդ զինվորներով և հայկական կամավորական գունդը՝ հինգ հրանոթներով։ Երևանի Սարդարը, բերդի ամրացման աշխատանքներն ավարտելուց հետո, 4.000 հեծյալներով արշավեց դեպի Էջմիածին։ Նա պահանջեց պաշարվածներից անձնատուր լինել, սպառնալով հակառակ դեպքում քանդել վանքը։ Վանքի պաշտպանները վճռեցին քաջաբար կռվել։ Աբաս Միրզան 30 հազարանոց բանակով շարժվեց դեպի Աշտարակ և գրավեց այն։ Համոզված, որ գեներալ Կրասովսկին իր 4.000 զինվորներով չի կարող ճակատամարտել, շարժվեց Էջմիածնի վրա։ Աբաս Միրզայի բազմամարդ բանակը Էջմիածնի մոտ էր. պարսկական զորապետ Յուսուֆ խանը պահանջեց ռուս բերդապետից հանձնել Էջմիածինը։ Վավերագրերը վկայում են, որ Էջմիածնի պարիսպների ետևում գտնվող ռուսական և հայկական փոքրաթիվ զինվորներն ու կամավորականները միաձույլ, մեկ մարդու պես պատրաստ էին մինչև վերջին շունչը պաշտպանելու Էջմիածինը։ Եվ բերդապետը մերժեց Յուսուֆի առաջարկը։

Պարսիկներն սկսեցին ռմբակոծությունը։ Բանագնացները փորձում էին մի կերպ լուր հասցնել Կրասովսկուն, ստանալ նրա օգնությունը, բայց նրանք ընկնում էին թշնամու ձեռքը և դաժանաբար պատժվում։ Նրանցից միայն մեկին հաջողվեց անցնել պաշարողական շղթայի միջով և հաղորդել Կրասովսկուն պաշարված Էջմիածնի ծանր վիճակի մասին։ Ստանալով այդ ամենի լուրը՝ Կրասովսկին որոշեց դեպի Էջմիածին շարժել իր բանակը— 1.800 հետևակ, 500 ձիավոր, 12 թնդանոթ և հայկական գնդից 100 հոգի։

Սկսվեց Օշականի հայտնի ճակատամարտը։ Այստեղ ռուսական զորքից 1.130 հոգի զոհվեց, 200-ը գերի ընկավ։ Ռուսական զորքին օգնության եկան նաև Էջմիածնի պաշտպանները։

Տեղեկանալով Կրասովսկու տված ճակատամարտին՝ Պասկևիչը վերադառնում է Էջմիածին, համալրում իր զորքը զինվորներով ու թնդանոթներով, ապա շարժվում է դեպի Սարդարապատ, պաշարում և գրավում բերդը։ Արևելահայերն ամեն կերպ օգնում էին իրենց ազատարարներին։ Ընդգրկվելով կամավորական ջոկատներում՝ նրանք ո՛չ միայն հերոսաբար կռվում էին պարսկական զորքերի դեմ, այլև նյութական օգնություն ցույց տալիս ռուսական բանակին։ Նրանք տեսնում էին, որ միայն Ռուսաստանի օգնությամբ, նրա հետ միանալով հնարավոր կլինի թոթափել պարսկական լուծը, ստեղծել նպաստավոր պայմաններ ժողովրդի տնտեսական ու հոգևոր զարթոնքի համար։

Օշականի ճակատամարտում հերոսաբար ընկան ռուսական շատ զինվորներ։ Այդ մարտերում իր քաջությամբ և ռուսական բանակին նվիրվածությամբ աչքի ընկավ հայ ժողովրդի հայրենասեր զավակներից մեկը ևս— երևանցի Հակոբ Հարությունյանը։ Թնդանոթաձիգ էր, ծառայում էր ռուսական բանակում։ Կռվի ամենաթեժ պահին նա թնդանոթն ուղղեց պարսկական զորքի վրա, փրկելով ռուսական վաշտը։ Այդպես էին կռվում հայ ժողովրդի զավակները, քաջ գիտակցելով այդ ճակատամարտերի բախտորոշ դերն իրենց երկրի ու ժողովրդի կյանքում։

Երբ ռուսական զորքերը գրավեցին Սարդարապատի բերդը և այս արշավանքի ժամանակ երկրորդ անգամ պաշարեցին Երևանի բերդը, ռուսական զորքին դիմադրում էր Հասան-խանը. նա բերդում էր հավաքել 10—12 հազար

*հայեր և էջմիածնի միաբանության մի մասին։ Ներսես Աշտարակեցին նամակներով հորդորում էր բերդում պաշարվածներին անձնատուր լինել։ Նամակատարներն անձնվեր հայրենասերներ էին, որոնք չէին վախենում մահվան աչքերին նայելուց։ Նրանցից մեկը՝ Աստվածատրյան ազգանունով, բռնվեց Ներսեսի գրությունները բաժանելիս։ Խանի հրամանով նրան կապեցին թնդանոթի երախին ու կրակեցին ռեպի ռուսական բանակը։*

*1827 թ., սեպտեմբերի 30։ Ռուսական բանակի 40 թնդանոթներ մինչև լուսաբաց պաշարել էին թշնամու գրաված քաղաքը։ Պահանջում էին Հասան խանից հանձնվել։ Հոկտեմբերի 1-ին վերջապես բացվեցին քաղաքի դռները և ռուսական զորքերը հաղթականորեն մտան բերդը։ Մի քանի այլ խաների հետ գերվեց նաև Հասան խանը։*

*Պատմական այս ժամանակաշրջանում պատերազմին մասնակցում էին ո՛չ միայն հայ կամավորականները, այլև գեներալ Մադաթովը, Լազարյան նշանավոր տոհմի ներկայացուցիչ գնդապետ Լազր Յակիմովիչը։ Երբ ռուսական զորքերը գրավեցին Թավրիզը, վերջինս նշանակվեց քաղաքի բերդապետ ու քաղաքապետ։ Նրա միջոցով, Թուրքմենչայի հայտնի պայմանագրից հետո, 40 հազար պարսկահայեր եկան Երևան և Նախիջևան՝ շենացնելու քանդված, անմարդաբնակ դարձած հայկական գյուղերը։ Պարսկահայերին տեղափոխելու գործում գնդապետ Լազարյանին օգնում էին Ներսես Աշտարակեցին, փոխգնդապետ Մովսես Ջաքարյանը, Երկայնաբազուկ Արղությանը և ուրիշներ։*

*1828 թվականին, մտնելով Ռուսաստանի կազմի մեջ, մեր ժողովրդի արևելյան հատվածը մեկընդմիշտ ազատագրվեց ֆիզիկական ոչնչացման վտանգից, իր կյանքը կապեց Ռուսաստանի, ռուս ժողովրդի հետ։ Երբ Արևելյան Հայաստանը միացավ Ռուսաստանին, ռուսական բանակում, նրա սպայակազմում արդեն կային հայ հրամանատարներ։ Հայերն սկսեցին զինվորական ծառայություն կրել իբրև ռուսահպատակներ։ Ռուսական բանակում աչքի ընկած շատ հայազգի զինվորականներ այդ պատերազմում ցուցաբերեցին արիության և խիզախության բացառիկ օրինակներ։*

*150 տարի է անցել այն օրից, երբ Արևելյան Հայաստանը միացավ Ռուսաստանին։ Պատմական այդ ակտով անհամեմատ ավելի նպաստավոր պայմաններ ստեղծվեցին հայ ժողովրդի գոյատևման, հասարակական-տնտեսական առաջընթացի համար։*

*Հայաստանում սովետական իշխանության հաստատմամբ սկսվեց մեր ժողովրդի իրական ազգային վերածնունդը։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը արմատական բեկում մտցրեց Ռուսաստանի կազմի մեջ մտնող ժողովուրդների կյանքում։ Այն ցույց տվեց ժողովուրդներին կապիտալիզմի լծից ազատագրվելու միակ ճիշտ ուղին։ Մեր ժողովրդի համար ևս ծագեց պայծառ առավոտ։ Իրականացավ նրա դարավոր իղձը՝ ստեղծվեց իրական ժողովրդական պետականություն։*

*Յոթ հարյուր հազար էր Հայաստանի բնակչությունը, երբ այն դարձավ սովետական։ Այժմ այն երեք միլիոնանոց հանրապետություն է՝ արդյունաբերական առաջնակարգ ձեռնարկություններով, զարգացած գյուղատնտեսությամբ։ Պատմության մեջ առաջին անգամ մեր ժողովուրդը մոտ 60 տարի ապրում է խաղաղ, ստեղծագործ կյանքով։ Իրոք, զարմանահրաշ մի վերածնունդ, որը նշանավորվեց նրա ազգային նոր պետականության հիմնադրմամբ ու ծաղկմամբ։ Աննախընթաց վերելք են ապրել նրա քաղաքները, ավաններն ու գյուղերը։*

*Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը մեր եղբայրական հանրապետությունների մեծ միության իրավահավասար անդամն է։ Հայաստանը դարձել է համատարած գրագիտության, համընդհանուր ճանաչման արժանացած առաջավոր կուլտուրայի ու գիտության երկիր։*

*Հայ ժողովուրդն իր բախտը մեկընդմիշտ կապել է սովետական ժողովուրդների անխախտ դաշինքին և վստահ քայլում է դեպի կոմունիստական գալիքը։*

---

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԽՈՍՔԻ ՀԱՆՃԱՐԸ

Դ. Վ. ԱՅՎԱԶՅԱՆ

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱԶՄԱԶԳ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ,** ողջ առաջադեմ մարդկությունը մեծ հանդիսավորությամբ նշում են ռուս մեծ գրող Լև Նիկոլաևիչ Տոլստոյի ծննդյան 150-ամյակը։ Վ. Ի. Լենինը բնութագրել է նրան որպես հանճարեղ արվեստագետ, «ռուսական հեղափոխության հայելի», իսկ նրա ստեղծագործությունը՝ առաջընթաց մի քայլ ողջ մարդկության գեղարվեստական զարգացման մեջ։ Ավելի քան կեսդարյա գրական գործունեության ընթացքում ստեղծված նրա գործերը, հարստացնելով համաշխարհային մշակույթի գանձարանը, այսօր ևս ակտիվ ներգործում են մարդկանց հոգևոր կյանքի, նրանց բարոյական ու գեղագիտական աշխարհի վրա։



**1977 թ.** հունվարին Լ. Ի. Բրեժնևը, այցելելով գրողի ծննդավայրը՝ Յասնայա Պոլյանա, նշել է. «...այստեղ ապրել և ստեղծագործել է մեծագույն ռուս գրողը, համաշխարհային մշակույթի հանճարը, որի ստեղծագործությունները նորանոր սերունդների համար կմնան որպես իմաստության աղբյուր»։

**Լև Տոլստոյի** ստեղծագործություններում համակողմանի արտացոլված է ռուս ժողովրդի կյանքի պատմական ամբողջ մի ժամանակաշրջան։ «Տոլստոյն իրոք վիթխարի գործ է կատարել,— ասել է Մ. Գորկին,— ամփոփել է ամբողջ մի դարում ապրվածը, և այդ արել է սքանչելի ճշմարտացիությամբ, ուժով ու գեղեցկությամբ... Ռուսական կյանքի մասին նա մեզ պատմել է համարյա նույնքան, որքան մեր ողջ գրականությունը»[1]։

**Տոլստոյը** ռուսական գրականություն է մուտք գործել Մանկություն վիպակով, որ **1852** թվականին հրապարակվել է Ն. Ա. Նեկրասովի «Современник» ամսագրում։ Հետագայում ևս այստեղ տպագրվեցին Երիտասարդություն **(1852—1854)** և Պատանեկություն **(1855—1857)** վիպակները— գլխավոր հերոսի՝ Նիկոլենկա Իրտենևի բնավորության աստիճանական ձևավորումը, զարգացումն ու հասունացումը ներկայացնող եռագրությունը։ Երիտասարդ գրողի առաջին իսկ ստեղծագործության մեջ դրսևորվել են նրա տաղանդի յուրահատկությունները— մարդկային կյանքի, նրա բանականության խորխորատները թափանցելու, այդ ամենը ճշմարտացի ու անսքող վերարտադրելու ձգտումը։ Տոլստոյին հոգեհարազատ է ճշմարտություն որոնող իր հերոսը, որ մանկությունից մշակել էր բարոյականության խիստ օրենքներ, մարդ, որը չնայած հաճախ էր սը-

[1] М. Горький. История русской литературы, М., 1939. стр. 295—296.

խաղվում, բայց ձգտում էր ինքնակատարելագործման, ավելի վսեմին, գեղեցիկին:

Եվ Տոլստոյի ծառայությունը Կովկասում (1851—1853 թթ.) և այնտեղ լեռնականների դեմ մղվող պատերազմը նյութ են հանդիսացել Ասպատակություն, Անտառահատում պատմվածքների համար, իսկ մասնակցությունը Սևաստոպոլի պաշտպանությանը (1853—1855 թթ.), որտեղ նա կռվել է չորրորդ բաստիոնում, հիմք է դարձել՝ գրելու Սևաստոպոլյան պատմվածքներ ուշագրավ երկը: Պաշտպանական, արդարացի համարելով Ղրիմի պատերազմը՝ Տոլստոյը միաժամանակ այն համարում է սարսափելի, անհարիր մարդու էությանը: Նրա պատմվածքները պատերազմի առաջին ռեալիստական-ճշմարտացի արտացոլումն են ռուսական ու համաշխարհային գրականության մեջ և, պատահական չէ, որ իր սևաստոպոլյան ակնարկներից մեկում գրել է, թե իր միակ հերոսը ճշմարտությունն է, կյանքի այն ճշմարտությունը, որին նա հավատարիմ մնաց հետագա իր բոլոր ստեղծագործություններում:

50-ական թվականներին Տոլստոյն անդրադառնում է ճորտատիրական գյուղի թեմային, կալվածատիրոջ և անազատ գյուղացիների փոխհարաբերություններին, գրում Ռուս կալվածատիրոջ սիրավեպը, որտեղ փորձում է գտնել աղայի և գյուղացու բախման «սիրահոժար» խաղաղ լուծում, սակայն համոզվում է, որ անհնար է համատեղել նրանց շահերը: Այն եզրահանգումը, թե ճորտատիրության «գլխավոր» չարիքը «գյուղացիների խղճուկ, չարքաշ վիճակն է», Տոլստոյն արտահայտել է իր անավարտ մի վեպի հատվածներից մեկում՝ Կալվածատիրոջ առավոտը պատմվածքում (1856): Տոլստոյի այդ շրջանի պատմվածքներից առանձնահատուկ տեղ են գրավում Լյուցեռնը (1857) և Երեք մահը (1859): Առաջինում, Արևմտյան Եվրոպա կատարած ճամփորդական տպավորությունների ազդեցությամբ, արտահայտված է գրողի զայրույթը կապիտալիստական կարգերի, նոր տերերի՝ բուրժուաների բարոյականության ու կենցաղի նկատմամբ: Երկրորդ պատմվածքը՝ Երեք մահը, արտահայտում է հետևյալ միտքը. «...երեք հոգի են մահացել,— գրում է Տոլստոյը,— տիրուհին, գյուղացին և ծառը: Տիրուհին ողորմելի է և նողկալի, որովհետև ստել է ողջ կյանքում և ստում է մահվանից առաջ... գյուղացին հանգիստ է մահանում, որովհետև քրիստոնյա չէ: Նրա դավանանքը...— բնությունն է, որի մեջ նա ապրել է ներդաշնակությունը ողջ աշխարհի հետ և ոչ թե այնպես ներհակ, ինչպես տիրուհին է... ծառը մեռնում է հանգիստ, ազնիվ ու գեղեցիկ: Գեղեցիկ, որովհետև չի ստում, չի կոտրատվում, չի վախենում, չի ափսոսում»:

Մերկացնելով տիրող դասակարգի կեղծիքն ու այլանդակությունը՝ Տոլստոյը ցույց է տալիս հասարակ մարդկանց գերազանցությունը նրանցից՝ ո՛չ միայն իրենց ամենօրյա կյանքում, այլև փիլիսոփայական այնպիսի հարցեր լուծելիս, ինչպիսիք են կյանքը և մահը:

Նշված ստեղծագործություններից բացի, 50-ական թվականների կեսերին Տոլստոյը գրել է մի շարք այլ երկեր:

Գաղափարական ինքնորոշման բարդ պրոցեսը Տոլստոյին հանգեցրեց գեղարվեստական ստեղծագործության խնդիրների նոր ըմբռնման— նա հրաժարվեց «բարձր խավի», հասարակության կրթված մասի համար արվեստից և ընդունեց արվեստը՝ ժողովրդի համար: Նա ո՛չ միայն հաստատում է աշխատավորության և իշխող դասակարգերի հավասարությունը, այլև «աշխատողների» գերազանցությունը տերերի նկատմամբ: «Հասարակ մարդկանց» անունից նա դատապարտում է ժամանակակից քաղաքակրթության նվաճումները, գտնելով, որ տեխնիկական նորագույն բոլոր հայտնագործությունները ծառայում են սոսկ ժողովրդի շահագործմանը: Բուրժուական պրոգրեսի դեմ ուղղված Տոլստոյի այս բողոքն արտահայտում էր նահապետական գյուղացու տրամադրություններն ու խոհերը կապիտալիզմի այն ահավոր նոր ավերածությունների սարսափի դեմ, որ զարգացման լայն ասպարեզ էին գտել 1861 թվականի ռեֆորմից հետո:

Ազնվականների ցոփ ու շվայտ կյանքին գրողն ամենայն սրությամբ հակադրում է ժողովրդի աշխատանքային առօրյան, նա իդեալականացնում է ժողովրդական կերպարներն ու սովորույթները, հաստատելով, թե անհրաժեշտ է, որ «կրթված դասակարգը մոտենա, ձուլվի ժողովրդին»:

Տոլստոյը խորհրդածում է ճորտատիրական իրավունքի վերացումից հետո Ռուսաստանի պատմական ճակատագրի մասին: Նա համամիտ չէ այն մտայնությանը, թե «ռուսներն անպայման պետք է ենթարկվեն քաղաքակրթության զարգացման այն օրենքին, որին ենթարկվում են եվրոպական ժողովուրդները»[1]: Նա գտնում է, որ իր նյութական ու հոգևոր բոլոր արժույթներն ստեղծող ռուս ժողովուրդն ինքը կընտրի իր ճանապարհը: Միաժամանակ Տոլստոյին հուզում է այն հարցը, թե ի՛նչ դեր է խաղալու ազնվականությունը պետության հետագա պատմության մեջ: Նկատենք, որ այս հարցերը խորապես հուզում էին ո՛չ միայն Տոլստոյին, այլև ռուսական ողջ հասարակա-

[1] Л. Н. Толстой, ПСС, т. 8., стр. 346.



կան միտքը: Գաղափարական տարբեր հոսանքների՝ պատմական զարգացման ընթացքը հասկանալու, ազգային կյանքի վճռական պահերին ժողովրդի դերն ըմբռնելու կենսական ձգտման պատասխանն էր, ասես, Պատերազմ և խաղաղություն վեպը, որը բացառիկ է կյանքի չտեսնված լայն ընդգրկմամբ, պատմական կարևորագույն իրադարձությունների արտացոլմամբ, կերպարների հարստությամբ, մարդկային հոգու նրբագույն ապրումների, հոգեբանական վերլուծության խորությամբ: Միաժամանակ վեպը գրված է այնպիսի՛ զգացմունքայնությամբ, որ առաջին իսկ տողերից մինչև գրքի վերջը ընթերցողը մնում է գրողի «համակրությունների և հակակրությունների», նրա գնահատումների, դեմքերի ու իրադարձությունների նկատմամբ նրա վերաբերմունքի ներգործության տակ, համակվում կենսախնդությամբ, ապագայի նկատմամբ հավատով: Վեպի պատմական պատումի հենքը Ռուսաստանի և Եվրոպայի ռազմական ու դիվանագիտական հարաբերություններն են, 1805—1807 թթ. պատերազմը, Տիլզիտի հաշտության պայմանագիրը, Ռուսաստանի ներքին կյանքը, Ալեքսանդր I-ի ռեֆորմները, 1812 թ. Հայրենական պատերազմը:

Պատերազմ և խաղաղություն վեպ-հերոսապատումը կարելի է համեմատել բարձրաբերձ լեռան հետ, որի առջև կանգնում է զարմացած ճամփորդը, չիմանալով ինչին հառել հայացքը: Ամեն ինչ— ստեղծագործության գաղափարական պրոբլեմատիկայից, ժանրից, հերոսների կերպարների և պատումի առանձնահատկություններից սկսած, վերջացրած կառուցվածքի և բովանդակության, հոգեբանական խոր վերլուծության վարպետության, լեզվի կերպավորման ու արտահայտչամիջոցների առանձնահատկություններով— այդ ամենը հույժ ուշագրավ են որպես տաղանդավոր արվեստագետի զարմանահրաշ մի ստեղծագործություն: Պատահական չէ, որ չնայած բազում ուսումնասիրությունների, Տոլստոյի վեպն անսպառելի է, և ո՛չ միայն յուրաքանչյուր նոր սերունդ, այլև ամեն մի ընթերցող հայտնաբերում է դրանում իր, այլոց համար անտեսանելի երանգներ:

Բայց Պատերազմ և խաղաղության մեջ կա անփոփոխ, նրա էությունը կազմող ինչ-որ բան: «Որպեսզի ստեղծագործությունը լավը լինի,— գրել է Տոլստոյը,— պետք է սիրել դրանում գլխավոր, հիմնական գաղափարը... Պատերազմ և խաղաղության մեջ (ես) սիրել եմ ժողովրդական մտածողությունը»: Ժողովրդական այդ մտածողությունն այն է, որ իր վեպում նա ցույց է տվել 1812 թ. Հայրենական պատերազմի ժողովրդական բնույթը, ռուս ժողովրդի բարոյական ուժը, նրա հոգու մեծությունը, հայրենասիրությունը, թշնամու դեմ մղած պայքարի հերոսականությունը: Ինչպես շեշտել է Լ. Ի. Բրեժնևը հերոս-քաղաք Տուլայի պարգևատրությանը նվիրված հանդիսավոր նիստում, Տոլստոյի Պատերազմ և խաղաղություն վեպի գլխավոր գաղափարն այն է, որ «ի վերջո ժողովուրդը, մասսաներն են լուծում պատմության արմատական հարցերը, որոշում պետությունների ճակատագիրը և պատերազմի ելքը— այդ խոր միտքը, ինչպես միշտ, այսօր ևս ճշմարիտ է»:

Ժողովրդական այդ մտածողությունը, որ համակել է Տոլստոյի ողջ վեպը, դրսևորվում է դեպքերի ու դեմքերի հեղինակային լուսաբանման, արտացոլվող իրականության գնահատման մեջ, 1812 թվականի Հայրենական պատերազմի ընթացքում և դրա ավարտում ժողովրդի վճռական դերի հաստատմամբ: Վեպում ներկայացնելով ռուսական հասարակության տարբեր խավերի ներկայացուցիչներին՝ Տոլստոյը գնահատում է նրանց ըստ ժողովրդի նկատմամբ գրաված դիրքի, և որքան նրանք ավելի են հեռանում ժողովրդից, այնքան ավելի անհանդուրժողական է դառնում գրողի քննադատական վերաբերմունքը նրանց նկատմամբ: Նա խիստ դատապարտում է ազգային ակունքներից անչափ հեռացած, իր ժողովրդին խորթացած մայրաքաղաքային արիստոկրատիային, որն արտաքին փայլի, ֆրանսիական ձևերի նրբագեղությամբ սքողում է իր դատարկամտությունն ու ոչնչությունը և, հակառակը, գովաբանում Ռոստովների ընտանիքը, ներկայացնելով նրանց կյանքը որպես ռուսական կյանքի ընդհանուր տարերքի մասնիկը: Վեպի գլխավոր հերոսների՝ Անդրեյ Բոլկոնսկու և Պիեռ Բեզուխովի կերպարներում ևս Տոլստոյը մարմնավորել է այն հատկանիշները, որոնք ըստ նրա առավել էական են «կրթված դասակարգի» մարդկանց՝ ազնվականության համար: Անցնելով տարբեր փորձություններով՝ նրանք երկուսն էլ պատերազմում ձերբազերծվում են նեղ եսապաշտական ու մանր շահերից, սուբյեկտիվ ներփակվածությունից, ավելի ու ավելի են համակվում ժողովրդին մոտ լինելու, նրան ձուլվելու անհրաժեշտության գիտակցությամբ: Երկու հերոսներն էլ նոր ազնվականական միջավայրում հառնած հասարակական նոր ուժերի արտահայտիչներն են, որոնցից հետագայում սերեցին դեկաբրիստները: Ժողովրդական ոգու կրողներ են նաև վեպի այնպիսի դրական հերոսներ, որպիսիք են Կուտուզովը, Բագրատիոնը, Դենիսովը, կապիտաններ Տուշինը, Տիմոխինը և ուրիշներ, ո-

րոնք ժողովրդի հետ մեկտեղ պաշտպանում են հայրենիքը: Ըստ Տոլստոյի, ի տարբերություն «ժողովուրդների դահիճ» Նապոլեոնի, Կուտուզովի մեծությունը ժողովրդական այն զգացումն է, որ իր հոգում կրել է նա ողջ անաղարտությամբ և ուժով և որը զինում էր նրան ռուսական բանակի հաղթանակի անխուսափելիության հաստատ հավատով:

Խոր ճշմարտացիությամբ բացահայտելով ժողովրդական մասսաների՝ որպես պատմության շարժիչ ուժի, ինչպես և անհատի դերը՝ պայմանավորված ժողովրդի գործին նրա մասնակցությամբ, Տոլստոյը, սակայն, հաստատում է և պատմական զարգացման տարերայնությունը, անկառավարելիությունը՝ տուրք տալով ֆատալիզմին: Այս սխալ մտայնությունը, կյանքի նկատմամբ ունեցած նահապետական-գյուղացիական դիրքորոշումն են արտացոլված Պլատոն Կարատաևի կերպարում, Կուտուզովի կերպարի հակասականության մեջ և հեղինակային զեղումներում, ուր գրողը հանդես է գալիս իբրև մտածող, բարոյախոս, քարոզիչ՝ մեկնաբանելով ու գնահատելով նկարագրվածը: Սակայն այստեղ ևս Տոլստոյի «նախապաշարմունքներին» զուգընթաց առկա է նրա «բանականությունը»՝ նրա ռեալիզմի ամենահաղթ ուժը, որի շնորհիվ Պատերազմ և խաղաղություն քառահատոր վեպը դառնում է ռուս և համաշխարհային գրականության չգերազանցված գլուխգործոցը:

1861 թ. ռեֆորմը փշրեց Ռուսաստանի հասարակական կյանքի ու կենցաղի հաստատուն ձևերը: Կապիտալի ճնշման տակ խարխլվեցին ազնվականական հասարակայնության սոցիալ-տնտեսական հիմքերը, չնայած ճորտատիրական իրավունքի մնացուկները երկար տարիներ պահպանվեցին կյանքի տարբեր ոլորտներում. նախկին բարոյական նորմերին հաջորդեցին նորերը՝ բուրժուականը— անպատկառ երեսպաշտությունն ու ընչաքաղցությունը, շահամոլությունն ու կարիերիզմը: Ռուսաստանի մտածող մարդկանց առջև ծառացավ այն հարցը, թե ո՛ւր կընթանա երկիրը. կհաղթանակե՞ն այդտեղ բուրժուական հարաբերությունները, թե՞ կպահպանվի համայնքը՝ որպես սոցիալիստական զարգացման հիմք: Այն, ինչ տեսել էր Տոլստոյն Արևմուտքում, կարդացել էր և գիտեր դրա մասին, նրա հոգում հարուցում էր բողոք ու զայրույթ. ժողովրդական լայն մասսաներին կապիտալիզմը բերեց քայքայում, աղքատություն ու սով, տառապանք ու տանջանք: Բայց հինն էլ դարձ չկար. ճորտատիրական կարգն սպառել էր իրեն, այն նույնպես անմարդկային էր, ստոր ու դաժան: Բնութագրելով 70-ական թվականների Ռուսաստանում ստեղծված իրադրությունը, վեպի հերոսներից մեկի՝ Լևինի միջոցով Տոլստոյն ասում է. «Այս բոլորը հեղաշրջվել է և նոր է կազմավորվում, թե ինչպես կկազմավորվի այդ հասարակարգը՝ Ռուսաստանի կարևոր հարցերից մեկն է»: Աննա Կարենինա վեպը պատասխանն է այդ կարևոր հարցերից մեկի— ինչպե՞ս կկազմավորվի տնտեսական նոր հասարակարգը Ռուսաստանում, միաժամանակ նաև ռուսական հասարակությանը հուզող շատ այլ էական հարցերի— ամուսնության և ընտանիքի, նոր պայմաններում ազնվականության դերի, գյուղացիության հետ ունենալիք փոխհարաբերությունների և այլն, և այլն:

Աննա Կարենինա վեպում ներկայացված է երեք ընտանիքների՝ Կարենինների, Օբլոնսկիների, Լևինների պատմությունը: Մի քանի անդամներից բաղկացած ընտանիքներն իրենց ներքին փոխհարաբերությունների մեջ են մի խումբ մարդկանց հետ, որոնք ներկայացված են կենցաղում և աշխատանքում, գործողության, ժամանակի և տեղի բազում հատկանիշներով: Այդ ամենը մեկտեղ ստեղծում է զարմանալի պատկերը իր զարգացման որոշակի փուլն ապրող հասարակության՝ իր անդամների խոհերով ու զգացմունքներով, ձգտումներով ու տենչերով: Ինչպես Պատերազմ և խաղաղության մեջ, Աննա Կարենինայում ևս վեպի կենտրոնում երկու հերոսներ են՝ Աննան և Լևինը, առաջինը, ինչպես Տոլստոյն է ասում, մարմնավորում է «սրտի բանականությունը», երկրորդը՝ «մտքի բանականությունը»: Աննան տրվել է իր սիրուն, արհամարհել ամուսնական կապերը, բացահայտորեն խախտել բարձրազնվականական հասարակության բարոյականության նորմերը. նա պետք է ատյան առաջ պատասխան տա իր գործած «մեղքի» համար: Եվ այս միտքը Տոլստոյն ասես հաստատում է վեպի համար ընտրած բնաբանով— «Իմ է վրեժխնդրություն, և ես հատուցից»: Բայց գեղարվեստական կերպարն ուժեղ է նրանով, որ այն հաճախ դուրս է գալիս հեղինակի սուբյեկտիվ մտահղացման շրջանակներից և ձեռք է բերում իր օբյեկտիվ նշանակությունը. այս առումով Աննայի ողբերգական կործանման պատճառը ոչ թե ատյան է, այլ այն սոցիալական պայմանները, որոնցում նա ապրել է «ամուսնության սրբությունը» պահպանող իրավական ու եկեղեցական օրենքները:

Այդպիսի խռովահույզ կերպար է և Կոնստանտին Լևինը, «տարօրինակ կալվածատեր», որը մտածում է Ռուսաստանի ապագայի մասին, այն գալիքի, երբ «աղքատության տեղ կլինի համընդհանուր հարստություն, լիություն, թշնամանքի տեղ՝ շահերի համաձայնություն: Մի խոսքով՝ անարյուն հեղափոխություն, բայց մեծագույն հեղափոխություն, նախ՝ մեր փոքրիկ գավառում, ապա՝ նահանգում, Ռուսաստանում, ողջ աշխարհում: Որովհետև արդարացի միտքը չի կարող արգասավոր չլինել: Այո՛, դա նպատակ է՝ հանուն որի արժե աշխատել»: Պատերազմ և խաղաղության դրական հերոսների նման Լևինը նույնպես ժողովրդական մտածողության կրողն է: Գյուղացիությանը նա համարում է «Ռուսաստանի լավագույն դասակարգը», իսկ իրեն կոչում է գյուղաբնակ, մարդկային կյանքի իրական իդեալը համարում է անմիջական մերձեցումը ժողովրդին, բնությանը, հասարակ ֆիզիկական աշխատանքը: Ըստ Լևինի կյանքի իմաստը աստծուն հավատալն է, բայց ոչ եկեղեցական, այլ ռամկական, իսկ միասնական հավատի այս հողի վրա նա հույս ունի հոգեպես ձուլվելու ժողովրդի հետ: Այսպես, Լևինի կերպարի միջոցով Տոլստոյն արտահայտել է իրեն հուզող բոլոր մտքերը, մի կողմից՝ նա բացահայտել է իշխող դասակարգերի կյանքի սուտն ու կեղծիքը, բողոքել սոցիալական անարդարության դեմ, իսկ մյուս կողմից՝ սոցիալական չարիքի դեմ մղվող պայքարը տեղափոխել է բարոյական ինքնակատարելագործման ոլորտը, կոչ արել ապրել «հոգու համար, ըստ աստծո», քրիստոնեական կրոնի ուսմունքի համաձայն: Տոլստոյի մտքում աստիճանաբար հասունանում է Ռուսաստանի ճակատագրում գեղջուկի ազատարար դերի գաղափարը, որով բնորոշվում է նրա աշխարհայացքի գաղափարական բեկումը 70-ական թվականների վերջին, վերջնական անցումը նահապետական գյուղացիության դիրքերը:

Տոլստոյի այդ նոր աշխարհայացքն արտահայտվել է նրա Խոստովանություն (1879—80) և Ո՞րն է իմ հավատը (1882—84) ստեղծագործություններում, ուր ամենայն սրությամբ նա քննադատում է պետությունն ու պետական եկեղեցին, ուղղակի հայտարարում, որ ինքն անցնում է ճնշվածների կողմը: Գրողը խիստ դատապարտում է իր նախկին կյանքը, վճռականորեն հանդես գալիս իր դասակարգի արտոնությունների ու ապրելակերպի դեմ և գտնում, որ ելքը փակուղուց դեպի ժողովուրդը գնալն է, հավատը: Ընդհանրացնելով քաղաքի սոցիալական հակասությունների իր ուսումնասիրությունը՝ Տոլստոյը գրում է Ուրեմն ի՞նչ անել (1884—86) և Մեր ժամանակի ստրկությունը (1889—1900) հոդվածները, ուր մերկացնում է կապիտալիզմի հիմքերը— մասնավոր սեփականությունը և աշխատանքի բաժանումը, ցույց տալով, որ բուրժուական կարծեցյալ ազատությունները սքողում են կապիտալիստական ստրկությունը: 1896 թվականին Տոլստոյը հանդես է գալիս Գոյություն ունեցող հասարակարգի մասին հոդվածով, որտեղ ուղղակի հայտարարում է, որ այն «ենթակա է խորտակման... Պետք է խորտակվի մրցակցային կարգը և փոխարինվի կոմունիստականով. պետք է խորտակվի կապիտալիստական կարգը և փոխարինվի սոցիալիստականով. պետք է խորտակվի միլիտարիստական կարգը և փոխարինվի զինաթափմամբ և արբիտրացիայով... պետք է խորտակվի բռնությունը և փոխարինվի մարդկանց ազատ ու սիրով միասնությամբ»[1]: Այս նպատակին հասնելու միջոցը, ըստ նրա, «չմասնակցելն է կյանքի բռնի կարգին, որը մենք ժխտում և կամենում ենք փոխել»[2]:

Իր ուսմունքի ոգով գրողն ստեղծել է նաև մի շարք բարձրարժեք գեղարվեստական երկեր: Բայց Տոլստոյի՝ այդ տարիների գլխավոր ստեղծագործությունը Հարություն վեպն է (1889—1899): Սյուժեի հենքը դատական մի դեպք է, որ պատմել էր նրան Ա. Ֆ. Կոնին. սակայն գրելու ընթացքում վեպը ներառել է ծավալուն նյութ ժամանակակից կյանքից, սոցիալական խնդիրների վերաբերյալ այն մտորումները, որոնք տանջում էին նրան վերջին տարիներին: Այս առումով Հարությունը Տոլստոյի գաղափարական, կրոնաբարոյական, գեղագիտական որոնումների հանրագումարն է: Կանգնելով նահապետական գյուղացիության բազմամիլիոն մասսաների շահերի արտահայտչի դիրքում, Տոլստոյն ուժգին դատապարտում է պետական իշխանությունը, դատարանը, աստիճանավորներին, եկեղեցին, ազնվականության արտոնությունները, հողային սեփականությունը, փողի իշխանությունը, բանտերը, անառակությունը, մի խոսքով՝ բուրժուական հասարակության բոլոր հաստատություններն ու ինստիտուտները: Վեպում ցույց է տրված արիստոկրատ Նեխլյուդովի և «անառակ կնոջ»՝ Կատյուշա Մասլովայի հոգևոր «հարությունը»:

Վեպում Տոլստոյը հաճախ շեշտում է, թե Նեխլյուդովը տեսնում, Նեխլյուդովը հասկանում էր, որ իր առջև ծառանում էին միշտ նորանոր հարցեր, որից հետո նրա ուղեղում սկսվեց տվայտանքը: Ըստ նախնական մտահղացման, Նեխլյուդովը պետք է դիմեր քրիստոնեական կրոնին, որը կհանդիսանար նրա «հարությունը». սակայն ստեղծագործելիս Տոլստոյը դուրս է գալիս այդ մտահղացման շրջանակներից. «հարյավ» ո՛չ միայն Նեխլյուդովը, այլև Կատյուշա Մասլովան: Վերջինիս հոգևոր բարոյական վերածնունդը հեղափոխա-

[1] Л. Н. Толстой ПСС, т. 28, изд. Сынина, стр. 137.

[2] *Նույն տեղը, էջ 148։*

կանների հետ հաղորդակցվելու արգասիք էր. հանդիպելով նրանց՝ Կատյուշան գիտակցեց իր մարդկային իրավունքները, իր մարդկային արժանապատվությունը: Եվ Կատյուշա Մասլովայի այդ «հարությունը» նշանավորում է վերածնունդը մոռացված, ճնշված ժողովրդի, որն սկսում է գիտակցել իր վիճակը և արդարացի կյանքի ուղիներ որոնել: Վեպում պարզորոշ հակադրված են իրար աշխատավորներն ու տերերը: Իր հերոսին՝ իշխան Նեխլյուդովին, Տոլստոյը բերում է մինչռեֆորմյան գյուղը, ուր նա համոզվում է, որ «ժողովուրդը բնաջնջվում է»: Ավելի վատթար է գյուղից կտրված, քաղաք գնացած կարիքավոր գյուղացիների վիճակը:

Այլ է բարձր ազնվականության աշխարհը. աշխարհիկ, հոգևոր, զինվորական և այլ «գերազանցությունները» անամոթ ու անխիղճ, անտարբեր— սառը, շահամոլ, «չթրջվող» մարդիկ են, Տոլստոյի խոսքերով ասած՝ պահապանները «մարդակեր իրավակարգի», որի հիմքը մասնավոր սեփականությունն է: Ինչպես նկատում է Վ. Յա. Լակշինը, այդ «մարդակեր» իրավակարգում ամենասահավորն այն է, որ ոչ թե առանձին ճիվաղները, արատածին հրեշները են չարի աղբյուրը, այլ շատ սովորական, անվնաս թվացող մարդիկ: Իրավիճակը, հանգամանքները ներգործում են, ասես, անկախ նրանց կամքից, չնայած միայն մարդիկ են սահմանում ու պահպանում այդ կարգը[1]: Տոլստոյի հերոսը հասկանում է, որ գյուղացիները ատում են իրենց հողը խլողներին, ինչպես քաղաքի բանվորները՝ իրենց շահագործողներին: Նա հանգում է այն եզրակացության, որ մոտ է այն օրը, երբ արդար ու անկաշառ դատավորը՝ ժողովուրդը, բռնության, ստի ու կեղծիքի ողջ իրավակարգի դեմ կարձակի իր դատավճիռը:

Վեպը գրելու ընթացքում Տոլստոյն ամենայն սրությամբ զգում էր հեղափոխության անկասելիությունը: 1892 թվականին իր նամակներից մեկում նա գրել է. «Ինչով կվերջանա այն, չգիտեմ, բայց որ բանը հասնում է դրան, և կյանքը այսպես, այս ձևերով շարունակվել չի կարող, ես համոզված եմ»: Գրողին սաստիկ հետաքրքրում են ինքնակալության դեմ կազմակերպվող պայքարի ձևերը, ռուս հեղափոխականների գործունեությունը, և նույնիսկ անձամբ ծանոթանում է նրանցից մի քանիսի հետ: Վեպում նա հանդես է բերում 70—80-ական թվականների հեղափոխական շարժման մասնակիցների կերպարներ. վեպի ողջ ընթացքում նրանց նկատմամբ Նեխլյուդովի փոփոխվող վերաբերմունքի մեջ արտացոլված է նաև Տոլստոյի հայացքների էվոլյուցիան:

Տոլստոյին գրավում էր հեղափոխականների գործերի ու գաղափարների բարոյականությունը. ազնիվ, անձնուրաց մարդիկ էին նրանք, չարի դեմ ակտիվ պայքարողներ և այդ իսկ չարի զոհերը: Բայց համակրելով հեղափոխականներին՝ որպես բռնության զոհերի, Տոլստոյը դատապարտում է նրանց այն բանի համար, որ պայքարելով կառավարության դեմ, իրենք ևս դիմում են բռնության. նա մերժում էր հասարակության վերակառուցման համար մղվող պայքարի հեղափոխական միջոցները: Սակայն, ինչպես նկատել է Գորկին, հակառակ իր ուսմունքի, ստիպված էր «Հարությունում ընդունել և համարյա արդարացնել ակտիվ պայքարը»:

Տոլստոյի այս վերջին վեպը կյանքի վերաբերյալ խորհրդածությունների, ժամանակի հրատապ հարցերի պատասխանների որոնումների յուրօրինակ ընդհանրացումն է: Հարությունում առավել ցայտուն դրսևորվեցին Տոլստոյի և՛ ստեղծագործության, և՛ աշխարհայացքի ուժեղ ու թույլ կողմերը— գոյություն ունեցող իրավակարգի արատների անողոք մերկացում և, միաժամանակ՝ մարդկության փրկության ռեակցիոն պատվիրաններ:

Հարությունից հետո Տոլստոյը գրում է Հաջի Մուրադ վիպակը (1896—1904), Կեղծ կտրոնը (1902—1904), Պարահանդեսից հետո (1903) պատմվածքները, Կենդանի դիակ պիեսը (1900) և այլն, հանդես գալիս հրապարակախոսական հոդվածներով ու կոչերով, պատրաստում է Ընթերցումներից, ուր ամփոփված են անցյալի իմաստունների ասույթները և իր դիտողությունները կյանքի վերաբերյալ: Տոլստոյի գեղարվեստական ստեղծագործությունների հիմնական թեման են դառնում հարստության ու աղքատության, իշխանության և իրավազրկության ցայտուն հակասության, կյանքի արմատական բեկման, կենսական նոր հավատին դիմելու արտացոլումը: Տոլստոյի ստեղծագործական հանճարն օժտված էր ընդհանրացման չխամրող ուժով, գեղարվեստական արտահայտչականությամբ:

Չեխովին հղած իր նամակներից մեկում այն տարիների Տոլստոյի մասին Գորկին գրել է. «Զարմանալիորեն մեծ է այս մարդը և ապշեցնում է իր հոգու կենսունակությամբ, այնպես է ապշեցնում, որ մտածում ես՝ նրա նմանը չի կարող լինել»: Տոլստոյ-արվեստագետի՝ Հաջի Մուրադում դրսևորված զարմանահրաշ վարպետության մասին ևս Գորկին հիացմունքով գրել է. «Մի՞թե հնարավոր է ավելի լավ գրել «Հաջի Մուրադը»: Մեզ թվում է՝ ո՛չ: Տոլստոյին թվում է՝ կարելի է»:

[1] Краткая литературная энциклопедия, т. 7, М., 1972, стр. 560.



Իբրև գյուղացիության կրքոտ պաշտպան Տոլստոյը հանդես է գալիս իր Մեծ մեղքը և Դարի վերջը (1905) հոդվածներում, ուր մինչ այդ չտեսնված սրությամբ ու շեշտակիությամբ արծարծում է հողի մասնավոր սեփականության վերացման հարցը, որովհետև ժողովուրդը մեռնում է սովից ու աղքատությունից: Նա հրապարակում է մահապատժի դեմ ոչնչացնող զայրույթով լի Չե՛մ կարող լռել հոդվածը (1908): 1905 թ. արյունոտ իրադարձությունների ազդեցությամբ նա գրում է Ռուսաստանի հասարակական շարժման մասին հոդվածը, ուր մերկացնում է «պետերբուրգյան չարագործությունների» կազմակերպչին՝ ցարական ինքնակալությանը: Սակայն, ինչպես իր գեղարվեստական ստեղծագործություններում, հրապարակախոսությամբ ևս Տոլստոյը քարոզում է հրաժարումն բռնությունից, ապացուցելով, որ սոցիալական բարեփոխումները՝ «արտաքին ձևերի» փոփոխման միջոցով «կործանարար պատրանք են»:

Բայց Տոլստոյը քննադատում էր ո՛չ միայն ռուսական կյանքի «այլանդակությունները». մեծ կրքոտությամբ նա ժխտում էր կապիտալիզմը, բուրժուական դեմոկրատիայի կեղծությունը, հատկապես այնպիսի «կարծեցյալ ազատ» երկրներում, ինչպես Ամերիկան է, Անգլիան: Նա զայրույթով է գրել Աֆրիկայում, Հնդկաստանում, Չինաստանում և այլուր անգլո-ամերիկյան իմպերիալիզմի վարած գաղութային դաժան պատերազմների մասին, հանդես է եկել իբրև ամբողջ աշխարհի խաղաղության կրքոտ պաշտպան: Այսպես, մինչև կյանքի վերջը, Տոլստոյը եղել է գոյություն ունեցող բոլոր անարդարությունների անհաշտ քննադատն ու բացահայտողը, ամենայն անկեղծությամբ ձգտել աշխատավոր մարդկության երջանկությանն ու բարեկեցությանը:

***

Տոլստոյի վիթխարի ժառանգության իմաստավորման առումով վճռական նշանակություն ունեն Վ. Ի. Լենինի ասույթներն ու հոդվածները նրա մասին: Աննա Իլյինիչնայի հիշողություններից իմանում ենք, որ դեռ գիմնազիայում Վլադիմիր Իլյիչը կարդացել էր բոլոր ռուս կլասիկներին, ինչպես և Տոլստոյին: Հետագայում, ինչպես պատմում է Կրուպսկայան, Լենինը «ո՛չ միայն կարդում, այլ բազմիցս վերընթերցում էր Տուրգենևին, Տոլստոյին, Չեռնիշևսկու Ի՞նչ անելը, ընդհանրապես սքանչելի գիտեր ու սիրում էր կլասիկներին»: Մ. Ա. Ուլյանովային վտարանդությունից գրած իր նամակներից մեկում Ն. Կ. Կրուպսկայան հայտնում է, որ Լենինը հաճախ է դիմում Տոլստոյի ստեղծագործություններին. ««Աննա Կարենինայի» քրքրված հատորիկը վերընթերցվում է հարյուրերորդ անգամ»: 1914 թ. Լենինը Բեռնում դիտել էր Կենդանի դիակը պիեսի գերմաներեն ներկայացումը՝ ռուսական թատերախմբի կատարմամբ: «Մենք էլ գնացինք,— հիշում է Ն. Կ. Կրուպսկայան.— շատ լավ էին խաղում: Ամեն տեսակ քաղքենիություն, պայմանականություն մինչև հոգու խորքը ատող Իլյիչին անչափ հուզեց այս պիեսը: Հետո նա ցանկանում էր մի անգամ ևս դիտել»:

Նկարագրելով Լենինի հետ ունեցած հետհոկտեմբերյան հանդիպումներից մեկը՝ Մ. Գորկին պատմում է. «Մի անգամ եկա նրա մոտ և տեսնեմ՝ սեղանին «Պատերազմ և խաղաղության» հատորն է:

— Այո՛, Տոլստո՛յը: Ուզեցի կարդալ որսի տեսարանը, բայց ահա հիշեցի, որ պետք է գրել մի ընկերոջ: Իսկ կարդալու ժամանակ բոլորովին չկա: Այս գիշեր միայն կարդացի ձեր գրքույկը Տոլստոյի մասին:

Ժպտալով, կկոցելով աչքերը՝ նա հաճույքով ճգվեց բազկաթոռում և, իջեցնելով ձայնը, արագ շարունակեց.

— Ի՜նչ ժայռաբեկոր է, հը՞: Ի՜նչ աժդահա: Այ սա արվեստագետ է, սիրելի՛ս... և, գիտե՞ք, մեկ էլ ինչն է ապշեցնում: Այս կոմսից առաջ գրականության մեջ իսկական մուժիկ չի եղել:

Ապա Վլադիմիր Իլյիչը հարցրեց.

— Եվրոպայում ո՞ւմ կարելի է դնել նրա կողքին:

Ինքն իրեն պատասխանեց.

— Ո՛չ ոքի:

Եվ ձեռքերը շփելով, գոհ ծիծաղեց»[1]:

Լենինը հետաքրքրվել է նաև Տոլստոյին նվիրված աշխատություններով. նրա գրադարանում միշտ եղել են գրողին վերաբերող առավել կարևոր ուսումնասիրությունները: Բայց Լենինը ո՛չ միայն գիտեր Տոլստոյի ժառանգությունը, այլև, իր քաղաքական ու գիտական գործունեության ընթացքում միշտ դիմել է նրան: Լենինյան 35 նյութերում (հոդվածներ, ճառեր, նամակներ) դատողություններ կան Տոլստոյի մասին, իսկ 15 աշխատություններում՝ մեջբերումներ նրա ստեղծագործություններից:

Տոլստոյի խոր, համակողմանի իմացության արգասիքն են 1908—1911 թթ. գրված, նրան նվիրված յոթ հոդվածները, 1911 թ. հունվարին Փարիզում կարդացած Տոլստոյը և ռուսական հասարակությունը և մի տարի անց Լայպցիգում կարդացած Տոլստոյի պատմական նշանակությունը զեկուցումները: Բուրժուական գրականագետներն ու քննադատները շատ են

[1] М. Горький. Собр. соч. в 30-и томах, т. 17, стр. 39.

գրել Տոլստոյի մասին, նրա ստեղծագործության հակասությունները համարելով ատտվածորոնողի մոլորությունների հետևանք, «ապաշխարող բարինի» «հիվանդ խիղճը» հանգըստացնելու ձգտման արտահայտություն կամ ուղղակի՝ խենթություն: Լենինը ժխտել է այդ հակապատմական մոտեցումը Տոլստոյի նկատմամբ, նրա ստեղծագործությունն ու ուսմունքը բացահայտորեն կապել 1905 թ. ռուսական հեղափոխության, դրա նախապատրաստման, կատարման, գյուղացիության՝ որպես հեղափոխության շարժիչ ուժերից մեկի, ճակատագրի հետ: Տոլստոյի «ստեղծագործությունների վերլուծություն ռուսական հեղափոխության և դրա շարժիչ ուժերի բնույթի տեսակետից», գրողի ժառանգության գնահատում «սոցիալ-դեմոկրատական պրոլետարիատի տեսակետից»— հենց այս խնդիրն է առաջադրում Լենինը Տոլստոյի մասին գրած իր հոդվածներում: Ըստ Լենինի Տոլստոյը մեծ է, որպես այն գաղափարների ու տրամադրությունների արտահայտիչ, որոնք գոյավորվել են միլիոնավոր ռուս գյուղացիության շրջանում, Ռուսաստանում բուրժուական հեղափոխությունն սկսելու ժամանակ[1]:

Տոլստոյ-արվեստագետն ու մտածողը Ռուսաստանի սոցիալական տեղաշարժերի դարաշրջանի ծնունդ է: «Այն դարաշրջանը,— գրել է Լենինը,— որին պատկանում է Լ. Տոլստոյը, և որը չափազանց ցայտուն արտացոլվել է ինչպես նրա հանճարեղ գեղարվեստական երկերում, այնպես և նրա ուսմունքում՝ դա 1861 թվականից հետո և մինչև 1905 թ. ընկած ժամանակաշրջանն է: Ճիշտ է, Տոլստոյի գրական գործունեությունն սկսվել է ավելի վաղ և ավարտվեց ավելի ուշ, քան այդ ժամանակաշըրջանի սկիզբն ու վախճանը, սակայն Լ. Տոլստոյը, որպես գեղագետ և մտածող, կատարելապես կաղապարվել է հենց այդ ժամանակաշրջանում, որի անցումնային բնույթը ծնել է թե՛ Տոլստոյի երկերի և թե՛ «տոլստոյականության» բոլոր հատկանշական գծերը»[2]: Դրանով իսկ, բացահայտելով Տոլստոյի հոգևոր ողջ գործունեության պատմական ռեալ բովանդակությունը, Լենինը նշեց այն միակ օբյեկտիվ աղբյուրը, որից ծնվում են մեծ գրողի և՛ գեղարվեստական կերպարները, և՛ ուսմունքը, ձևավորվում է նրա գիտակցության միասնականությունը:

Մեկնելով այս հիմնական մեթոդոլոգիական դրույթից՝ Լենինը ցույց է տվել, որ Տոլստոյի ստեղծագործություններում, հայացքներում, ուսմունքի մեջ եղած բոլոր «աղաղակող հակասությունները արտացոլումն են XIX դարի երկրորդ կեսի և XX դարի սկզբի ռուսական կյանքի հակասությունների: Մի կողմից՝ Տոլստոյը հանդես է գալիս որպես բուրժուակալվածատիրական հասարակարգի մեծագույն քըննադատ, որ «պատռում է ժողովրդին հարստահարողների բոլոր և ամեն տեսակ դիմակները որպես իր ժամանակակից ամեն մի՝ պետական, եկեղեցական, հասարակական ու տնտեսական կարգի կրքոտ մերկացնող, որպես ջերմեռանդ բողոքական ընդդեմ հասարակական ստի ու կեղծիքի, մյուս կողմից՝ նա ներկայանում է որպես «բռնությամբ չարին չըհակառակվելու» ռեակցիոն տեսության քարոզիչ, որպես բարոյական ինքնակատարելագործման տեսության ջատագով: Տոլստոյի ուժը Լենինը համարում էր «բուռն, կրքոտ, հաճախ անողոք» բողոքը ընդդեմ ինքնակալական-քաղաքական կարգի և պետական եկեղեցու, անհատնում, ամենախորազգաց և ամենաբուռն զայրույթը, կապիտալիզմի մերկացումը, բուրժուական հասարակարգի ներքին կեղծիքի բացահայտումը՝ «մեծ համոզչականությամբ», որի մեջ բացահայտված է «միլիոնավոր գյուղացիների բողոքը»: Լենինը բարձր է գնահատում Տոլստոյի քննադատության մարտական, անզիջում, հարձակողական բնույթը: Նա գրել է. «Տոլստոյի քննադատության մեջ յուրաքանչյուր դրույթ մի ապտակ է բուրժուական լիբերալիզմին, որովհետև մեր ժամանակների ամենահիվանդոտ, ամենաանհիծյալ հարցերի հենց միայն աներկյուղ, բացահայտ, անխնա-սուր հարցադրումը Տոլստոյի կողմից հարվածում է մեր լիբերալ (և լիբերալ-նարոդնիկական) հրապարակախոսության շաբլոն ֆրազների, մաշված խուսափանքների, խուսափողական, «քաղաքակիրթ» կեղծիքի երեսին»[1]:

Կալվածատերերին և նրա կալվածքային հողատիրությունը, բյուրոկրատական-ոստիկանական պետությունը, պետական եկեղեցին հիմնովին վերացնելու և ազատ հողի վրա մանր գյուղացիների իրավահավասար համակեցություն ստեղծելու՝ գյուղացիական մասսաների ձգտումը պայմանավորեց Տոլստոյի ուժը, նրա ստեղծագործության գաղափարական բովանդակությունը. «...այդ քննադատությունը,— գրել է Լենինը,— իրոք արտացոլում է այն միլիոնավոր գյուղացիների հայացքների մեջ կատարված բեկումը, որոնք նոր են ազատվել ճորտատիրական իրավունքից և տեսել, որ այդ ազատությունը նշանակում է քայքայման, սո-

[1] Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 15, էջ 247։

[2] Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 17, էջ 39։

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 16, էջ 424։



վամահության, քաղաքային «ճիվաղների» մեջ անտուն կյանքի նոր սարսափներ և այլն»[1]:

Ինչպես իրավամբ նկատում է Բ. Ս. Մեյլախը, Լենինն այն առաջին հետազոտողն էր, որ պատմական իրականության և Տոլստոյի ստեղծագործության մեջ դրա արտացոլման խոր վերլուծությամբ վեր հանեց նրա պրոգրեսիվ կողմերը և գյուղացիության հեղափոխական տրամադրությունների ժառանգական կապը[2]: Տոլստոյի ուժը Լենինը համարում է տաղանդը հանճարեղ արվեստագետի, որն ստեղծել է «ոչ միայն ռուսական կյանքի անզուգական պատկերներ, այլև համաշխարհային գրականության առաջնակարգ ստեղծագործություններ»: Լենինը նշում է, որ գրողը սքանչելի գիտեր հին Ռուսաստանի կենցաղը և իր «գեղարվեստական երկերում տվել է այդ կենցաղի այնպիսի պատկերումներ,որոնք պատկանում են համաշխարհային գրականության լավագույն ստեղծագործություններին»[3]: Տոլստոյի միջազգային նշանակությունը Լենինը չի բացատրում միայն գրողի սուբյեկտիվ օժտվածությամբ, չնայած նրա գեղարվեստական տաղանդի ուժի շնորհիվ է ստեղծագործությունը դարձել ռուսական հեղափոխության հայելին, այլ այդ նա կապում է ռուսական հեղափոխության համաշխարհային նշանակության հետ, որն արծարծեց ռուսական կյանքի այնպիսի կենսական հարցեր, որոնք կարևոր էին բոլոր ժողովուրդների համար:

Տոլստոյի «թուլությունը» (նրա հայացքների հակասականությունն ու անհետևողականությունը, վրա հասնող ճգնաժամի պատճառները և դրանից դուրս գալու միջոցները չհասկանալը, քաղաքականության ժխտումը, նոր, «զտված կրոնի», չարին բռնությամբ չհակադրվելու քարոզը) նույնպես Լենինն անմիջականորեն կապում է գյուղացիության, նրա գաղափարախոսության հետ: Տոլստոյի շուրթերով, նշել է Լենինը, խոսում է ռուս ժողովրդի այն բազմամիլիոն զանգվածը, որն արդեն ատում է ժամանակակից կյանքի տերերին, բայց որը դեռ չի հասել նրանց դեմ գիտակցական, հետևողական, մինչև վերջ հասնող անհաշտ պայքարի գաղափարին:

Իր հոդվածներում Լենինը մեծ ուշադրություն է նվիրում Տոլստոյի ստեղծագործության թույլ, սխալ հայացքներին, այն ամենին, ինչ նա կոչել է «տոլստոյականության պատմական մեղք»: Ըստ Լենինի այդ «մեղքը», հանդիսանալով հետռեֆորմյան ու մինչհեղափոխական շրջանի ռուսական կյանքի պայմանների օրինաչափ ծնունդը, դրսևորվում է նրա առաջարկած պայքարի ուղիների ու միջոցների մեջ: Իր հոդվածներում լայն զանգվածներին Լենինը բացատրել է «տոլստոյականության» վտանգավորությունը և այն վնասը, որ հասցրել են հեղափոխական շարժմանը լիբերալները՝ այդ ուսմունքի իդեալականացմամբ: Բայց սահմանազատելով «տոլստոյականությունը» պրոլետարիատի գիտական գաղափարախոսությունից՝ Լենինը միաժամանակ ցույց է տվել, որ Տոլստոյի հայացքների ուտոպիականությունն ու ռեակցիոնությունն ամենևին չեն նշանակում, թե նրա ուսմունքը սոցիալիստական չէր, և «ոչ էլ այն, որ նրա մեջ չեն եղել քննադատական տարրեր, ընդունակ արժեքավոր նյութ տալու առաջավոր դասակարգերի լուսավորության համար»[1]: Տոլստոյի ուսմունքը համարելով ռեակցիոն այդ բառի բուն իմաստով, Լենինը Տոլստոյին ամենևին չի հանձնել ռեակցիոններներին, այլ այդ հասկացությունն օգտագործել է պատմափիլիսոփայական իմաստով, որպես այն տեսաբանների սխալ, որոնք հնացած կարգերից են քաղում իրենց հորինվածքների օրինակները[2]:

Մենք անդրադարձանք Լենինի այս մտքին նրա համար, որ նույնիսկ Տոլստոյի թուլություններում նա գտնում էր դրա հակադարձ կողմը՝ Տոլստոյի ուժը: Լենինը Տոլստոյին նվիրված հոդվածներում առաջին պլանի վրա դնելով նրա գեղարվեստական ստեղծագործությունների ուժեղ և թույլ կողմերը, միաժամանակ գիտական հետևողականությամբ վեր է հանել նրա գրական ժառանգության թույլ կողմերը, մասնավորապես նրա քաղաքական, կրոնական, փիլիսոփայական աշխատություններում:

***

Տոլստոյի գլուխգործոցները թարգմանվեցին օտար լեզուներով և նա արժանացավ համընդհանուր ճանաչման: Տոլստոյը հանրահայտ էր ո՛չ միայն որպես մեծագույն գրող, այլև մեծագույն հումանիստ, որի խորհրդին ու օգնությանն էին դիմում աշխարհի բոլոր ծայրերից: Տոլստոյն ստացել է ավելի քան 50 հազար նամակ. նրան գրել են բոլոր խավերի, համարյա բոլոր ազգությունների մարդիկ, իսկ Յասնայա Պոլյանան և Մոսկվայում գտնվող նրա տունը դարձել էին ուխտատեղի:

Աշխարհի ոչ մի ժողովուրդ զերծ չի մնացել Տոլստոյի ազդեցությունից: Բացառություն չէ

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 16, էջ 432։

[2] Б. С. Мейлах. Ленин и проблемы русской литературы конца XIX—начала XX в. в., Ленинград, 1956, стр. 352.

[3] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 16, էջ 431։

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 17, էջ 43։

[2] Տե՛ս К. Н. Ломунов. Ленин читает Толстого, стр. 104—105.

և հայ ժողովուրդը, որի հոգևոր կուլտուրայի ոլորտը Տոլստոյը մուտք է գործել հարյուր տարի առաջ և հոգեպես հարստացրել այն: Տոլստոյի ստեղծագործությունների առաջին թարգմանությունները կատարվել են 80-ական թվականներին: 1883 թ. Հովհ. Նազարյանցի կազմած Քրեստոմատիայում զետեղված էր նրա Բուքը պատմվածքը, իսկ մեկ տարի անց, Ղ. Աղայանի Մայրենի լեզվի ուսուցում դասագրքում՝ Մոծակն ու առյուծը պատմվածքը: Այդ ժամանակվանից հայկական թերթերի, ամսագրերի էջերում, ինչպես և առանձին հրատարակություններով և՛ Արևելյան, և՛ Արևմըտյան Հայաստանում լույս են տեսնում Տոլստոյի ստեղծագործությունները: Ոչ լրիվ տվյալներով՝ նախասովետական տարիներին եղել են 176 հրապարակումներ, որոնց թվում՝ Կրեյցերյան սոնատը, Կովկասի գերին, Ժողովըրդական պատմվածքներ, Պատերազմ և խաղաղություն, Աննա Կարենինա, Հարություն, Խոստովանություն, Հաջի Մուրադ վեպերը և այլն: Իբրև թարգմանիչներ հանդես են եկել հայ գրողներ Պերճ Պռոշյանը, Ալեքսանդր Ծատուրյանը, Ղազարոս Աղայանը, Հովհաննես Թումանյանը և ուրիշներ:

Տոլստոյը բոլորի, ինչպես և հայ ժողովրդի սեփականությունը դարձավ սոցիալիստական հեղափոխությունից հետո: Թարգմանվեցին նրա բոլոր հիմնական գեղարվեստական գործերը: Հրատարակվել է Երկերի ժողովածուն վեց (1935—1940) և տասը հատորով (1949—1950): Բացի դրանից առանձին հրատարակություններով բազմիցս տպագրվել են Պատերազմ և խաղաղությունը, Աննա Կարենինան, Հարությունը, Հաջի Մուրադը, Կոզակները, Լուսավորության պտուղները, մանկական պատմվածքները:

Առանձնահատուկ նշանակություն է ունեցել մեծ գրողը հայ գրականության զարգացման գործում: Այդ է վկայում Պ. Պռոշյանի, Ղ. Աղայանի, Ալ. Շիրվանզադեի, Մուրացանի, Նար-Դոսի և այլոց նրան ուղղված երախտիքի խոսքը: Ժամանակին հայ գրականագիտությունը նույնպես անդրադարձել է մեծ գրողի երկերի արժեքավորմանը: Հատկապես հարկ է նշել Ստ. Շահումյանի և Ս. Սպանդարյանի՝ նրան նվիրված ուսումնասիրությունները: Տոլստոյի գրական ժառանգությունն այսօր էլ շարունակում է լիցքավորել մեր օրերի արվեստն ու գրականությունը:

Նշելով հանճարեղ գրողի ծննդյան 150-ամյակը՝ մեկ անգամ ևս հիշենք Մաքսիմ Գորկու խորիմաստ խոսքերը. «Ամբողջ աշխարհը և ողջ երկիրը նայում է նրան՝ ինչպես բոլոր կողմերից նրան ձգվող կենսաթրթիռ լարեր. նրա հոգին բոլորի համար է և՝ հավիտենապես»:

---

Ակնարկ

# ԳԱՐԱՆՅԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

**Ռ. Բ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**

ՄԵՐ ՎԵՐՋԻՆ ՀԱՆԴԻՊՄԱՆ ժամանակ վարչության պետը ակնհայտորեն մտահոգ տեսք ուներ: Նախօրյակին մինիստրը նրան իր մոտ էր հրավիրել և հանգամանորեն խորհըրդակցել Բազմաբերդի հատվածը ժամկետից շուտ գործարկելու հնարավորության մասին: Վարչության պետը չէր էլ փորձել պարզել պլանը վերանայելու պատճառը: Նա քաջատեղյակ է այն կարևորությանը, որ մինիստրությունը տալիս է այս օբյեկտին: Խոսքը, վերջին հաշվով, ոչ թե Բազմաբերդի և նույնիսկ ոչ թե Աշտարակի կամ Թալինի մասին է: Ավելի լայն առումով՝ խոսքը հանրապետության մայրաքաղաքը նրա երկրորդ քաղաքի հետ կապող ճանապարհին է վերաբերում, որը կառուցվում է հատված առ հատված և յուրաքանչյուր այդպիսի հատվածի շինարարության արագացումը, վերջին հաշվով, նշանակում է արագացնել ամբողջ մայրուղու գործարկումը:

Այդ ամենը Ռազմիկ Գարանյանը լավ է հասկանում և ինքը ժամանակին քիչ բան չի արել, որպեսզի շինարարության հետ առնչվող կազմակերպությունները, ինչպես հարկն է, ըմբըռնեն գործի լրջությունը և, ինչպես հարկն է, լուծեն դրա հետ կապված հարցերը: Հիմա նույնիսկ ներքին բավականություն է ապրում՝ տեսնելով այն իրարանցումը, որի մեջ մերթ ընդ մերթ ընկնում են այդ կազմակերպությունները, երբ հարցերը լուծվում են ոչ այնպես, ինչպես այդ իրենք կցանկանային:

Այո՛, օբյեկտի կարևորությունը բոլորն են ըմբռնում, իսկ դա նշանակում է, որ հարկ եղած դեպքում կարելի է ակնկալել ուզածդ օգնությունը: Եվ, այնուամենայնիվ, մտահոգվելու համար վարչության պետը բավականաչափ հիմքեր ունի: Այսպես թե այնպես, խնդիր է դրվում ամբողջ մեկ եռամսյակով արագացնել հատվածի գործարկումը, իսկ դա նշանակում է համապատասխան շտկումներ կատարել վարչության պլաններում ընդհանրապես, այլ օբյեկտներից այստեղ փոխադրել լրացուցիչ մեքենաներ ու սարքավորումներ, մի խոսքով՝ վերադասավորել ուժերը, և դա անել այն հաշվով, որ, ընդհանուր առմամբ, չտուժի մյուս օբյեկտների շինարարությունը:



Ահա թե ինչպես է դրված խնդիրը:

Եվ Գարանյանն այսօր Բազմաբերդ է եկել որոշակի մտադրությամբ՝ մարդկանց տեղյակ պահելու գործի էության մասին:

Ծայրից-ծայր անցնում ենք Բազմաբերդի հատվածը: Ճանապարհը արտադրամաս կամ գործարան չէ, այն ձգվում է կիլոմետրերով, և բոլորին մի հարկի տակ չես հավաքի: Ու անցնում է վարչության պետը մեքենայից մեքենա, խմբից խումբ, զրուցում, խորհրդակցում մարդկանց հետ, շոշափում նրանց տրամադրությունը, հանգամանորեն պարզում հնարավորությունները: Կարելի էր բնավ չտարակուսել, որ մինիստրությանը տալիք պատասխանը այստեղ, այս պահին էր պատրաստվում:

**ԴԺՎԱՐՈՒԹՅԱՄԲ Է ԾՆՎՈՒՄ** ճանապարհի յուրաքանչյուր մետրը: Շինարարի կատարածն այստեղ հասկանալու համար երևի անհրաժեշտ է, ո՛չ, անպայման անհրաժեշտ է ականատես լինել այն սև աշխատանքին, որից գոյանում է ճանապարհը: Պատրաստի ճանապարհը շինարարի աշխատանքի մասին նույն պատկերացումը չի տալիս, ինչ, ասենք, շենքերն ու շինությունները: Այստեղ ամբողջ արածդ գետնի տակ է մնում: Երևում է միայն հարդարանքը: Եվ այդ հարդարանքով էլ դատում են հաճախ շինարարի մասին: Այլ է, երբ ականատես ես ճանապարհի արարման պրոցեսին: Ինչպես հիմա: Մարդիկ լեռներ են գլխատում, կիրճեր բարձրացնում, հարթաչափի ճշգրտությամբ շտկում այդ ամենը... Մետրերը, որ մենք հետո պիտի անցնենք վայրկյանի աննշան մասերում, այստեղ շաբաթների և ամիսների ընթացքում են ծնվում:

Մենք ասում ենք՝ ժամանակակից ճանապարհ, այդ հասկացության մեջ դնելով նախ և առաջ զուտ ուտիլիտար նկատառումներ: Այդպես են վարվել, ի դեպ, բոլոր ժամանակներում: Ճանապարհը միշտ գործնական նշանակություն է ունեցել և, ըստ այդմ, միշտ համարժեքվել է ժամանակի պահանջներին: Հազարամյակներ առաջ մարդը արահետ է ստեղծել և միանգամայն գոհ է եղել իր ստեղծածից: Արահետից մինչև ավտոստրադա՝ ահա ճանապարհի կերպափոխության էվոլյուցիան: Սակայն հարցը միայն մասշտաբների մեջ չէ: Արահետը հազարամյակներ դիմացավ ու տակավին գոյություն ունի: Ժամանակակից մայրուղին մարդը կառուցում է՝ բնավ վստահ չլինելով, թե մի քանի տասնամյակ անց չի դրվի այն վերակառուցելու խնդիրը: Ժամանակների հետ փոխվում են կյանքի ռիթմն ու տեմպը: Ճանապարհը այդ փոփոխությունների պասսիվ կրողը չէ: Այն ինքն է ռիթմ ու տեմպ թելադրում:

Այս մտորումները ես գրեթե նույնությամբ մեջ եմ բերում Գարանյանից: Ամեն ինչում ինտելեկտ դնելու զարմանալի ունակությամբ նա զրուցակցին ստիպում է հարմարվել իր «ալիքին» և այդ դիրքերից վարել նույնիսկ առօրեական գործերին վերաբերող խոսակցությունները: Ինչ-որ տեղ նա էսթետ է, բանաստեղծ, գուցե և փիլիսոփա, գուցե և էլի շատ բան, բայց ոչ երբեք սոսկ պրակտիկ ինժեներ: Նրան խորթ չեն բնավ տեսության ոլորտները և, համարձակվում եմ ասել, դարձյալ ինչ-որ տեղ նաև տեսաբան-ինժեներ է: Ո՛չ, հայտնագործություններ չի արել Գարանյանը, բայց իմաստավորելու, արժեքավորելու համար ճանապարհաշինարարի գործի կարևորությունն այնպես, ինչպես այդ նա է կարողանում անել, հարկավոր է, ըստ երևույթին, շատ ավելի բարձր կանգնած լինել, քան սոսկ պրակտիկ ինժեները:

**ՇՈՒՐՋ ՔՍԱՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ**, ավելի ճիշտ 1960 թվականին, Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի շրջանավարտ Ռազմիկ Գարանյանը ճանապարհաշինարարի դիպլոմով վերադարձավ հայրենի Աշտարակ և գլխավոր ինժեների պաշտոնով աշխատանքի անցավ շրջսովետի գործկոմի ճանշինբաժնում: Կառուցում էին գյուղամիջյան ճանապարհներ: Այն, ինչ ինստիտուտում էր սովորել և այն, ինչ այստեղ էր տեսնում ընդհանուր քիչ բան ունեին: Բայց դրանից ծանր հիասթափություն չապրեց. վիճակը ծանոթ էր դեռ մինչև ինստիտուտ ընդունվելը: Մտահոգում էր մի այլ բան. մարդիկ մասնագետ ճանապարհաշինարարի անհրաժեշտությունն առանձնապես սուր չէին զգում: Եվ գուցե յուրովի իրավացի էին: Այդպիսի ճանապարհներ կարելի էր կառուցել նաև առանց ինժեներական դիպլոմի:

Ինչպես և մի քանի տասնամյակ առաջ, ճանապարհաշինության գլխավոր գործող անձը պապենական բահով ու քլունգով զինված հողագործն էր, որը դեմ չէր իր այդ նոր դերին, քանի դեռ հարազատ գյուղի համար էր ճանապարհ կառուցում, բայց հետո հերթափոխը կընկնի հարևան գյուղացուն, սա էլ իր հաջորդին, և այսպես շարունակ: Ինչ վերաբերում է շրջանային ճանբաժիններին, ապա դրանք, չնչին բացառությամբ, գլխավորում էին գործին անհրազեկ, հաճախ այլ աշխատանքներում ձախողված մարդիկ, մի հանգամանք, որը հիմնավորապես կարող է վարկաբեկել ուզածդ մասնագիտությունը: Ահա այդպես էլ ստեղծվել էր ճանապարհաշինարարի ընդհանրական կերպարը: Գարանյանի համար կատարյալ բարեբախտություն էր, որ Աշտարակի ճանբաժինը «չնչին բացառությունների» թվին էր պատկանում. այն ղեկավարում էր նույնպես երիտասարդ ու շնորհալի ինժեներ Գ. Քամալյանը, որը տարիներ հետո աշխատանքի անցավ մինիստրությունում, և որին մինչև օրս Աշտարակը բարի խոսքով է հիշում:

**ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԾՆՎՈՒՄ** և անհետանում են ժամանակի կամքով: Ավտոտրանսպորտի բուռն զարգացումը, հանրապետության փոխադրամիջոցների համակարգում նրա առող առաջատար դերը հրամայաբար պահանջում էին շրջադարձ կատարել դեպի ճանապարհաշինությունը: Ճանապարհը դառնում էր ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական քաղաքականության էական բաղադրատարրերից մեկը: Կազմակերպորեն այդ ամենն իր արտահայտությունը գտավ այն բանում, որ համապատասխան մասնագիտացված վարչություններ ու տեղամասեր ստեղծվեցին գրեթե բոլոր շրջաններում, իսկ ավելի ուշ կազմակերպվեց ավտոմոբիլային ճանապարհների շինարարության ու շահագործման մինիստրությունը: Որակական այս անցումով էր պայմանավորված հանրապետությունում էնտուզիաստ-ճանապարհաշինարարների առաջնակարգ ջոկատի հանդես գալը: Եվ մի հաճելի օր մենք զարմանքով նկատեցինք, որ մեր ոլորմոլոր ճամփաները շտկում են իրենց մեջքը, մենք հասկացանք, որ ճանապարհն էլ կարող է ճարտարապետություն ունենալ, և որ լայնահուն, ձիգ մայրուղիները նույնիսկ շատ են ներդաշնակում մեր լեռնոտ բնանկարին:

Ռազմիկ Գարանյանը ներկայացուցիչն է ճանապարհաշինարարների այդ սերնդի, որն իրավամբ կարող է որակական այս շրջադարձի հեղինակը համարվել: Ճիշտ է, իր ընկերների հետ միասին նա այդ իրագործում էր ընդամենը մի շրջանի սահմաններում, բայց ճիշտ է և այն, որ ճանապարհաշինարար-էնտուզիաստների կարիքը մայրաքաղաքից ավելի զգում էին ծայրամասերը: Եվ նրանց ջանքերով ճանապարհաշինությունը հաստատապես գրանցվեց Աշտարակի բանվորական մասնագիտությունների շարքում:

Գարանյանը աճի դինամիկան այսպես է ներկայացնում. ութ տարի առաջ վարչության տարեկան աշխատանքի ծավալը հասնում էր շուրջ 640 հազար ռուբլու, իսկ անցյալ տարի այդքանը միայն նրա օգուտները կազմեցին: Ինչ վերաբերում է աշխատանքի ծավալին, ապա այն, գումարային արտահայտությամբ, անցավ վեց միլիոնի սահմանը:

Թվերը, ինչպես ընդունված է ասել, պերճախոս են, բայց դինամիկայի ամբողջական պատկերը, այնուամենայնիվ, չեն տալիս: Իսկ դա արտահայտվում է նաև այն բանում, որ Աշտարակը դարձել է հանրապետության ճանապարհաշինական խոշոր կենտրոնը: Ամեն մի շրջան ունի իր տնտեսական նկարագիրը ներկայացնող ձեռնարկությունը: Աշտարակի համար այդպիսին է դառնում նրա ճանապարհաշինական վարչությունը՝ հանրապետության համանման կազմակերպություններից ամենահզորն ու առաջատարը: Այն վաղուց դուրս է եկել սեփական շրջանի սահմաններից, նրա ծառայություններից այսօր օգտվում են Թալինը, Նաիրին, Ապարանը, Արագածը, Էջմիածինը և նույնիսկ՝ Երևանը:

Պատվիրատուները անում են՝ ինչպես ճանաչված մակնիշով ֆիրմայի համար: Եվ ինչու չէ. այն իրոք իր ֆիրմային «ապրանքն» ունի: Դա նրա կառուցած ճանապարհն է: Շատերից եմ լսել, ինքս էլ այդպես եմ կարծում, Աշտարակի ճանապարհները ոչ մի շրջան չունի: Հիշում եմ վարորդներից մեկի դիպուկ գնահատականը՝ «Ես այս ճամփաներին պետական որականիշ կտայի»: Կարելի է չտարակուսել, որ այդպես են մտածում այն տասնյակ հազարավոր վարորդներն ու ուղևորները, որոնք ամեն օր օգտվում են Աշտարակի ճանապարհներից:

Վարչության պետի մոտ այդ թվերն ավելի ստույգ տեսք ունեն: Գրիչը ձեռքին նա հաշվարկ է անում. Երևան—Աշտարակ՝ օրական վեց հազար մեքենա, յուրաքանչյուր մեքենայում՝ 4 մարդ: Օրական՝ 24 հազար: Աշտարակ—Թալին... Աշտարակ—Ապարան... Ավելացրեք դրան հակառակ հոսքը... Վիթխարի թվեր են ստացվում: Իսկ Գարանյանին դրանք պետք են՝ իր միտքը շարունակելու համար: Մարդկանց հետ գործ ունեն, և այն էլ վիթխարի թվով մարդկանց... Ճանապարհը պետք է բավականություն պատճառի ուղևորին, վարորդին, ճանապարհը տրամադրություն է, քաղաքակրթություն, կուլտուրա:

Ճանապարհը արագություն է և էկոնոմիկա:

Արագության հանգամանքը նա առանձնապես շեշտում է, ավելի ճիշտ՝ դրա մասին նա ուղղակի հարգանքով է խոսում: Արագությունը, ասում է, պետական կարևորության հարց է: Անսովո՞ր է հնչում: Գուցե: Ես ևս հակված էի համարելու դա երևույթները գարանյանական անսովոր ռակուրսով դիտելու արդյունք: Բայց երբ նա հիմնավորեց իր միտքը, ինքս ինձնից գոհ մնացի այնքանով միայն, որ տարակարծությունս բարձրաձայն չէի հայտնել: Ո՛չ, նա բնավ անթույլատրելի արագությունը նկատի չունի: Մեր երկրում, պարզվում է, բեռնատար

մեքենաների իրական միջին տեխնիկական արագությունն ավելի քան երկու անգամ պակաս է սահմանված առավելագույն նորմայից: Մասնագետները հաշվել են, որ ժամում այն 3—5 կիլոմետրով ավելացնելը համարժեք է նոր ավտոգործարանի կառուցման և հարյուր հազարավոր վարորդների պատրաստման: Ահա այսպիսին է գիտականորեն հիմնավորված վիճակագրությունը: Իսկ դրանից արվող հետևությունը ուղիղ գծով հասցեագրվում է ճանապարհաշինարարին. արագությունը իմաստ ունի, երբ երաշխավորվում է անվտանգությունը, իսկ վերջինիս կարևորագույն պայմանը ժամանակակից բարեկարգ ճանապարհն է:

**ԻՐԵՆՑ ՊԱՐՏՔԻ ԱՅԴՊԻՍԻ** ըմբռնմամբ էլ Աշտարակի շինարարները ճանապարհ են կառուցում: Ես ականատես եմ եղել այդ պրոցեսի բոլոր փուլերին և կարող եմ ասել՝ այստեղ բարեխղճության դասեր կարելի է առնել: Մարդիկ աշխատում են՝ մնայուն գործ ստեղծելու գիտակցությամբ: Եվ դա, ըստ իս, չափազանց կարևոր է: Անցյալում մենք լավ ճանապարհ չենք ունեցել: Հետո, երբ սկսել ենք կառուցել, բավարարվել ենք նվազագույնով: Ժամանակակից ճանապարհ ստեղծելու, այդ գործին նույնպիսի պատասխանատվությամբ վերաբերվելու համար, ինչպիսին դրսևորում ենք, օրինակ, սովորական շենքեր կառուցելիս, հարկավոր էր հաղթահարել սովորույթի ուժը: Եվ աշտարակյան փորձն այս իմաստով չափազանց ուսանելի է: Մանրուք կոչվածն այստեղ գոյություն չունի:

Ես տեսա, թե Բազմաբերդի հատվածում ինչպիսի մտահոգությամբ էր «մասնագետների խորհուրդը» քննարկում վնասված պանելի թըզաչափ անցքը փակելու հարցը: Եվ դա պետք է արվեր միայն ու միայն կոնստրուկցիայի սխեման պահպանելու պայմանով: Ոչ ոք չասաց, թե ասֆալտը, ի վերջո, ամեն ինչ կծածկի: Գիշերվա տեղատարափ անձրևից հետո տոփանված, պնդեցված ճանապարհին փոքրիկ փոս էր գոյացել: Մտածում էի՝ մի քանի քար կբերեն, մի քանի բահ հող կլցնեն, նորից կպնդացնեն և՝ վերջ: Բայց՝ ո՛չ: Եկավ էքսկավատորը, շերեփով հանեց թույլ ապարը, նորից լցրեցին, նորից տոփանեցին: Հիմա արդեն կարելի էր խիճը փռել... Բուլդոզերավարը եռանդով ապարը մղում էր դեպի հասկակալած արտը, որտեղով անցնում է ապագա մայրուղին: Դրա համար նրան խիստ հանդիմանեցին: Նախ՝ ճանապարհի հիմքից պարտավոր էր հեռացնել փափուկ հողաշերտը, հետո՝ հարկավոր էր հնձել տալ արտը, կանաչ զանգվածը գոնե իբրև անասնակեր կօգտագործվի...

Թվում է՝ մանրուքներ են: Եվ իրոք այդպես է: Մանավանդ՝ իր մասշտաբներով խորապես տպավորիչ այս շինարարության ֆոնի վրա: Բայց այստեղ ասում են՝ որակի հարցում մանրուք չկա: Եվ դա նրանց համար ելակետային սկզբունք է, որ պետից անցնում է աշխղեկին, մեխանիզատորին, ասֆալտագործին, դառնում կոլեկտիվ վարքագիծ ու մարմնավորվում այդ նույն կոլեկտիվի պրակտիկ գործերում:

Անցյալ տարվա արդյունքներով Աշտարակի ճանապարհաշինարարները նվաճել են ճյուղի մասշտաբով հանրապետական մրցության գրեթե բոլոր մրցանակները՝ պլանների կատարման (32,5-ի փոխարեն կառուցել ու նորոգել են 47,5 կիլոմետր ճանապարհ), գործող մայրուղիների պահպանման ու շահագործման, բարձր որակով կառուցված նոր ճանապարհի համար և այլն: Հաճելի է առանձնապես այն, որ վարչության աշխատանքը քննություն է բռնում միութենական չափանիշներով. 1977 թվականին այս կոլեկտիվն արժանացավ համամիութենական մրցության բարձրագույն պարգևի՝ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշին, նրա անունը գրանցվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի պատվո տախտակին: Ի դեպ, միութենական բարձրագույն մրցանակը աշտարակցիները վերջին տարիներին շահում են արդեն երրորդ անգամ:

**ՊԱՏԱՀԵՑ ԱՅՆՊԵՍ**, որ Աշտարակում եղած օրերին մի նոր հեռագիր ստացվեց. կոլեկտիվը եռամսյակի արդյունքներով նորից առաջնություն էր շահել: Մրցություն—78-ի անդրանիկ հաղթանակն էր դա: Հետո ավելի ծանրակշիռ պարգևներ կգան դեռ: Բայց հետաքրքրական էր Գարանյանի ռեակցիան: Կարդաց հեռագիրը, տարուբերեց գլուխը. «Ուղղակի լավ չէ, որ առաջին պլանում միշտ նույն կոլեկտիվն է»: Եվ դա ասում էր ամենայն անկեղծությամբ: Այսինքն՝ լավ չէ, որ մյուս կոլեկտիվները հավասար չափով աշխատանքային մրցակցություն չեն կազմում: Իրոք, մտորելու հարց է: Ինքը՝ Գարանյանը, հակված է իրենց հաջողությունները բացատրելու զուտ «արտաքին» ազդակներով: Աշտարակը, ասում է, Երևանի նախադուռն է և իր հանգուցային դիրքով ավելի մեծ ուշադրության է արժանանում, զորեղ մեքենայական պարկ ունեն, որն ի վիճակի է կատարելու ամենաբարդ առաջադրանքները, և այլն: Այդ ամենը, թերևս, հեռու չէ ճշմարտությունից, բայց ասված է մի մարդու կողմից, որը սեփական ծառայությունների, առավել ևս արժանիքների մասին երբեք չի



խոսում: Իսկ ճշմարտություն է և այն, որ ճանապարհաշինության աշտարակյան դպրոցն ունի ուսանելու արժանի իր «ներքին» դասերը: Ամենաընդհանուր ձևով, դա կոչվում է աշխատանքի կազմակերպում: Այստեղ գործում է սիստեմը: Ոչ թե նրա առանձին օղակները, այլ ողջ սիստեմը: Ու գործում է մեխանիզմի հըստակությամբ: Յուրաքանչյուր տեղամաս, բրիգադ, բանվոր: Եվ սա, իմ կարծիքով, ամենամեծ նվաճումն է, որին հասել են աշտարակցիները:

Օբյեկտներում լինելուց առաջ ծանոթացա դրանց քարտերին. տնտեսագիտական, ֆինանսական լուրջ փաստաթղթեր են, որտեղ ցույց է տրված, թե ինչպես է «աշխատում» դրանցից յուրաքանչյուրը: Հետո, արդեն շինարարությունում, բնավ չզարմացա, երբ Ռազմիկ Գարանյանը, քայլերը դանդաղեցնելով, կանգ առավ ինչ-որ տեղ և ասաց. «Ետ ենք մնացել: Այս կետը պետք է հասներ հունիսի չորսին, իսկ այսօր վեցն է»: Հենց այդպես, մաթեմատիկական ճշգրտությամբ: Պարզվում է՝ շինարարությունում էլ բացառված չէ կոնվեյերային համաչափությունը: Եվ դա ոչ միայն տասնօրյակի կամ ամսվա շրջանակներում, այլև կլոր տարվա: Պլանային ու արտադրական առանցքային խնդիր լինելուց բացի, դա ունի նաև իր զուտ գարանյանական բացատրությունը. համաչափ աշխատանքը նաև համաչափ աշխատավարձ է: Շինարարությունը իրավունք չունի գործելու «խոպանի» սկզբունքով— ամռանը՝ հազար, ձմռանը՝ ոչինչ: Մենք ընտանիքներ ենք կերակրում, և բանվորը պետք է համոզված լինի, որ շինարարությունը կայուն աշխատավարձ է երաշխավորում:

Իսկ կայուն աշխատավարձը նաև կայուն կոլեկտիվ է նշանակում: Այսպես են հասկանում երևույթների պատճառական կապը Աշտարակում: Իրոք, վաղուց հաղթահարված է հոսունությունը՝ շինարարական կոլեկտիվների այդ դժվար բուժվող հիվանդությունը: Վարչության համակարգում մոտ 500 մարդ է աշխատում (ամռանը այդ թիվն ավելանում է ևս հարյուրով՝ գերազանցապես շինարարների ընտանիքների սովորող անդամների հաշվին): Դրանք առաջնակարգ մասնագետներ են, կարելի է ասել՝ այստեղ Աշտարակի բանվորական ընտրանին է հավաքվել: Ուրիշ տեղերից հրապուրելու փորձեր, ինչու չէ, նույնպես լինում են, բայց նման գայթակղությունների չենթարկվելու համար այլ հանգամանքների թվում կա նաև այսպիսի փաստարկ՝ «Հապա մեր կոլեկտի՞վը»:

Սոցիոլոգները պնդում են, որ աշխատուժի հոսունության գլխավոր պատճառներից մեկը հիմնարկ-ձեռնարկություններում մարդկային հարաբերությունների վիճակն է: Մեխանիզատոր Զավեն Զարգարյանի համար սա կենսափորձով հաստատված ճշմարտություն է: Զավենի մասին ասում են՝ տաղանդավոր մասնագետ է: Վարչության պետը լավագույն աշխատողներին ներկայացնելիս առաջինը նրա անունը տվեց: Չկա այնպիսի մեխանիզմ, ասում է, որից Զավենը գլուխ չհանի: «Ի պաշտոնե» նա ավտոամբարձիչ է վարում: Եվ, պատկերացրեք, գտնված է լավագույն տարբերակը ինքնուս ինժեներ-մեխանիզատորի ուժերը օգտագործելու համար: Ավտոմեքենայի վրա նրան զբաղեցնելը շռայլություն կլիներ: Սկրեպերը, գրեյդերը, էքսկավատորը կգամեին մի օբյեկտում: Իսկ այսպես նա և՛ բարձր որակավորում պահանջող աշխատանք է անում, և՛ շտապ օգնության նման հասնում է ամենքին:

Բայց Զավենի այդ տաղանդը նրա հետ էր և սրանից 15 տարի առաջ, երբ յուրաքանչյուր 4—5 ամիսը մեկ փոխում էր աշխատանքը: Չէ՛ր համակերպվում, և վերջ: Հիմա իր այդ «ֆիգարոյական շրջանի» մասին հիշում է ոչ առանց հումորի: Եվ ոչ միայն այդ շրջանի: Երկու տարի այստեղ աշխատելուց հետո սկսեց տրտընջալ, թե, ախր, երկար մնաց... Բայց այդպես էլ մնաց ու մնաց այժմ արդեն Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Զավեն Զարգարյանը:

Փորձեցի, գոնե ինձ համար, պարզել վարչություն—Զարգարյան փոխհարաբերության «անատոմիան»: Բայց հրաժարվեցի այդ մըտքից: Այն բանից հետո, երբ վարչության պետը ինձ հետ զրուցելիս հանկարծ վերցրեց հեռախոսափողը և տեղեկացավ կադրերի բաժնից՝ ե՞րբ է լրանում Զավեն Զարգարյանի 50-ամյակը, հիշո՞ւմ են արդյոք իր խնդրանքը: Երբ ում որ հարկ է պատվիրեց Զավենի սովորող որդու աշխատանքային քննաշրջանի համար համապատասխան մեքենա նախապատրաստել: Երբ տեսա, վերջապես, թե ինչպես է վարչության պետը խոսում բանվոր Զավեն Զարգարյանի հետ:

Այսպիսի հարաբերությունները, այո՛, ամեն բանից թանկ արժեն:

**ԻՆՔԸ՝ ԳԱՐԱՆՅԱՆԸ**, այն կարծիքին է, թե ամենամեծ նվաճումը, որին հասել են կուսակցական ու հասարակական կազմակերպությունները, կոլեկտիվում հաստատված բարոյական առողջ մթնոլորտն է, մարդկային ջերմ հարաբերությունները: Իսկ դա, իրոք, դժվար է: Մանավանդ ճանապարհաշինության մեջ, որտեղ աշխատանքի կազմակերպման բնույթն ինքնին

նվազագույնի է հասցնում կոմպակտ, միաձույլ կոլեկտիվի ստեղծման հնարավորությունները. միավորել այդ ցաք ու ցրիվ բրիգադները, տեղամասերը, որոնք միայն ընդհանուր կարգի միջոցառումների ժամանակ են հանդիպում իրար, հասնել այն բանին, որ դրանք ապրեն նույն խոհերով ու հետաքրքրություններով, սա, իրոք, մեծ ջանքերի գնով է ձեռք բերվում: Եվ խիստ կարևոր է իմանալ, թե յուրաքանչյուր ոք բարոյական ինչ լիցք է հաղորդում ընդհանուր մթնոլորտին: Այդպես էլ Գարանյանը ներկայացնում է աշխատողներին՝ անպայման շեշտելով մարդկային առաքինությունները, չանտեսելով նաև թուլություններն ու թերացումները, եթե դրանք կան, բայց արդեն՝ հումորով, ներողամտությամբ:

Իհարկե, բարոյական մթնոլորտը զերծ չէ նյութական բովանդակությունից: Հարկ է միշտ հիշել, որ տնտեսական ստրատեգիայի գերագույն նպատակը՝ բարեկեցության անշեղ բարձրացումը, նաև «տեղական» գործունեության ուղեցույց է: Եվ այստեղ շոշափելիորեն զգում են նման դիրքորոշման արդյունքը: Տարեցտարի բարձրանում են ռեալ եկամուտները, ավելանում են հանգստին ու կենցաղին հատկացվող միջոցները, անցյալ տարի 40 ընտանիք բնակարաններ ստացան վարչության խնայողություններով կառուցված շենքում, եկող տարի կսկսվի այդպիսի մի այլ շենքի ու 220 տեղանոց հանգստի տան շինարարությունը...

Մի խոսքով, ուշադրության կենտրոնում մարդկային գործոնն է:

Այդպես էլ պետք է լինի, այդպիսին է մեր կյանքի տրամաբանությունը: Մարդու նկատմամբ հոգատարությունը, ասում է Գարանյանը, ղեկավարի անձնական հայեցողության հարց չէ, դա նրա պարտականությունն է՝ սահմանված մեր կյանքի օրենքներով ու բարոյական սկզբունքներով:

Պատահական զուգադիպությամբ, այդ պահին առանձնասենյակ մտավ գարաժի վարիչը և խնդրեց մակագրել աշխատանքից ազատվելու վերաբերյալ երիտասարդ վարորդներից մեկի դիմումը: Իսկ ինչո՞ւ է ազատվում: Վարիչի պատասխանը բավականաչափ համոզիչ չէր: Առաջարկեց պարզել պատճառը: Ես ուշադրություն դարձրի այն բանին, որ վարչության պետը չհետաքրքրվեց, թե վարորդը ինչպիսի աշխատող է: Բայց չէ՛ որ շատերը դրանից են սկսում: Կարծես կռահելով իմ միտքը, ասաց. «Աշտարակում այնքան էլ մեծ չեն աշխատանքի ընտրության հնարավորությունները: Ո՞ւր պիտի գնա այդ երիտասարդ տղան»: Հետո մարդկանց հիշատակեց, որոնք վաղուց այստեղ չէին լինի, եթե ներկայացված առաջին իսկ առիթով նրանց ազատեին աշխատանքից:

**ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹՅՈՒՆՆ ՈՒՂՂԱԿԻ** կապ է տեսնում առարկայի հանդեպ աշակերտի հետաքրքրության և ուսուցչի նկատմամբ նրա վերաբերմունքի միջև: Ըստ երևույթին, հոգեբանական այդ գործոնը որոշակի դեր է խաղում նաև աշխատանքային հարաբերություններում: Եթե խնդիրն ավելի կոնկրետացնենք, խոսքն այստեղ վերաբերում է ղեկավարի վարքագծի, վարվելակերպի, անձնական հատկանիշների այն կոմպլեքսին, որով որոշվում են կոլեկտիվի հետ նրա հարաբերությունները:

Գարանյանի ուժը նրա հեղինակության մեջ է: Տարածված այն տեսակետը, թե անհնար է բոլորի համար լավ լինել, տվյալ դեպքում պարզապես պետք է դեն նետել: Ծանոթների հետ ես առիթ ունեցա հանդիպելու՝ թե՛ ղեկավար աշխատողների, թե՛ շարքային բանվորների: Եվ ամեն ոք յուրովի մի շտրիխ էր ավելացնում նրա նկարագրին, իր անձնականին առնչվող փաստերով ու օրինակներով հաստատում այդ մարդու մասին ստեղծված անչափ նպաստավոր կարծիքը: Նշում են հատկապես նրա գործարարությունը, արդարամտությունը, պարզությունը, մատչելիությունը, մարդկանց դուր է գալիս աշխատանքի նրա ոճը, իսկ այդ ամենը կոլեկտիվի ընդհանուր տրամադրության վրա անպայման իր ազդեցությունն է ունենում:

Աշխատանքային հարաբերություններում ոչինչ, երևի, այնպիսի «բարձր շահույթ» չի ապահովում, ինչպես այդ մարդկային գործոնը: Դրա համար էլ այստեղ դա թանկ են գնահատում, դրանից է նաև, որ Աշտարակում մեծագույն հարգանքով են խոսում ճանապարհաշինարարի մասին:

Իսկ լավ մասնագետներ այստեղ իրո՛ք կան: Աշտարակի ու հարևան շրջանների բոլոր ճանապարհների վրա, ինչպես Գարանյանն է ասում, կա բուլդոզերավար Միքայել Ներսիսյանի քրտինքը: Նրանք միասին են սկսել իրենց աշխատանքային կենսագրությունը և հիշում են այն երջանիկ օրը, երբ նորոգեցին ու գործադրեցին ինչ-որ տեղ դուրս գրված բուլդոզերը: Առաջին բուլդոզերը: Տարիներ են անցել: Աշխատանքային փառքի շքանշանակիր Միքայել Ներսիսյանն այսօր էլ բուլդոզերի ղեկի մոտ է: Միայն թե այլ է մեքենան, այլ է և նրա կառուցած ճանապարհը: Կոմունիստ գրեյդերավար Վարազդատ Մինասյանը որակի հնգամյակում իր դերը միանգամայն կոնկրետ է ըմբռնում. նրա ամենագործուն մասնակցությամբ է կառուցվել Աշտարակ—Թալին մայրուղու այն հատվածը, որն իր որակով լավագույնը ճանաչվեց հանրապետությունում: Ճանապարհաշինարարների աշտարակյան դպրոցի երիտասարդ սաներից է էքսկավատորավար Հոմերոս Ղազարյանը: Այստեղ են և նրա երկու եղբայրները: Վարչության պետը նշում է այդ անունները և վստահորեն այն հետևությունն անում, թե եկող սերունդը ճանապարհաշինության մեջ նոր փուլ կնշանավորի:

Կա նաև աշխղեկների՝ միջին հրամկազմի ներկայացուցիչների մի պատկառելի ջոկատ՝ Իշխան Խալաթյան, Գալուստ Զաքարյան, Սեյրան Սիսակյան, Արտավազդ Հովսեփյան, Ռուբեն Վահանյան... Այդ նրանք են շարժման մեջ դնում շինարարական մեխանիզմը, ապահովում բոլոր օղակների անխափան աշխատանքը:

Անուններ, դարձյալ անուններ՝ կարճ, դիպուկ բնութագրերով ու գնահատականներով, նաև համառ մի խնդրանք՝ նշել բոլորին, նաև չարտահայտված մի մտահոգություն՝ մարդիկ թող չմտածեն, թե իրենց աշխատանքը չի նկատվում... Մանրուք չէ բնավ: Անունները մարդիկ են կրում, այս մայրուղիներում մարդկային ճակատագրեր են խաչաձևվում... Անուշավան Հովհաննիսյանը մի քանի տարի առաջ է Իրանից հայրենիք վերադարձել: Աշտարակում հաստատված իր բախտակիցներից շատերի նման նա հիմա ճանապարհ է կառուցում: Այդ մարդիկ ոչ միայն իրենց հայրենիքը վերագտան: Նրանք վերագտան նաև մարդկային արժանապատվությունը: Պետք է տեսնել անցման այդ կենդանի պրոցեսը՝ թշվառությունից ու խեղճությունից դեպի սոցիալական ակտիվություն...

**ԻՐ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՕՐԸ** Գարանյանը սովորաբար սկսում է այս կամ այն օբյեկտի այցելությամբ: Ամենից հաճախ լինում է Երևանի մուտքը կառուցող շինարարների մոտ: Սա Աշտարակ—Երևան մայրուղու շարունակությունը չէ սոսկ, սա նաև քաղաքային սովորական փողոց է՝ իր կոմունիկացիաներով ու ինժեներական կառույցներով: Հետո Արագած կգնա կամ Բազմաբերդ, չի մոռանա և վերակառուցվող Աշտարակ—Էջմիածին խճուղին...

Գծային ծառայության աշխատողները լավ գիտեն, որ այդ «տեսչական» այցելությունները հավասարապես և իրենց են վերաբերում. մանրազնին կդիտի ճանապարհը և իր դիտողությունները կանի՝ ինչ-որ տեղ քանդված է ասֆալտը, ինչ-որ տեղ ճանապարհային ազդանշանը սարքին չէ, կանաչը վատ է խնամվում... Գծային ծառայությունը կամ, այլ կերպ ասած, ճանապարհների սպասարկումը հատուկ ուշադրության առարկա է այստեղ: Եվ իմ հարցին՝ ո՞րն է օբյեկտներից ամենակարևորը, նա բոլորովին անսպասելի պատասխան տվեց՝ գործող ճանապարհային ցանցը:

Կա այսպիսի արտահայտություն՝ ճանապարհատրանսպորտային պատահար: Ուշիուշով պետք է ուսումնասիրել յուրաքանչյուր նման դեպք, պարզել մեղքի սեփական բաժինը, կանխել պատճառը: Դա նրա աշխատանքի ամենածանր, ամենատհաճ, բայց և ամենապարավորեցնող մասն է: Բարեբախտաբար, երթևեկության ինտենսիվության համեմատ Աշտարակում նկատելիորեն նվազել է այն վթարների թիվը, որ տեղի են ունենում ճանապարհի պատճառով:

Նրան խորապես մտահոգում է վթարների վիճակագրությունը, ավելի ճիշտ այն, որ դրանից անհրաժեշտ գործնական հետևություն չի արվում: Անաչառ հետազոտության դեպքում բոլորովին դժվար չի լինի պարզել, որ շատ վարորդներ իրենց մասնագիտական որակավորմամբ բնավ չեն համապատասխանում այսօր նրանց ներկայացվող պահանջներին: Չափազանց հեշտ է տրվում այդ իրավունքը, և չափազանց ծանր են դրա հետևանքները:

Մեքենան սլանում է դեպի Ապարան: Հոյակապ ճանապարհ է: Դա շեշտվում է հատկապես հնի հարևանությամբ: Շինարարության բարձր որակի մասին է վկայում այն, որ վարչության կառուցած ճանապարհների հիմնական նորոգման անհրաժեշտությունը շատ ավելի ուշ է ծագում, քան նախատեսված է նորմայով: Եվ դա որակի ու արդյունավետության ուղղակի կապի լավագույն ապացույցն է:

Վերադարձին, ասես լիցքաթափվելու համար, նա միայն պոեզիայից ու արվեստից էր խոսում: Իսկ այդ թեմաներով զրուցել նա սիրում է և կարողանում: Հետո, երբ խոսքն ավարտեց, ժպտալով ցույց տվեց զարմանալիորեն գեղեցիկ ճանապարհը և ասաց. «Սա էլ մեր ստեղծագործությունն է»: Կավելացնեի միայն՝ գերազանց ստեղծագործությունը: Խառնվածքով նա իրոք ստեղծագործող է և իր այդ հրաշալի ունակությունը այս ճանապարհների մեջ է մարմնավորում:

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## Արժեքավոր ուսումնասիրություն

ՀՐԱՊԱՐԱԿԻ ՎՐԱ Է Վարդան Ավետիսյանի երկարամյա գիտահետազոտական աշխատանքի արգասիքը՝ Հայ հասարակական մտքի զարգացման մարքս-լենինյան փուլի սկզբնավորումը* մենագրությունը, որի լույսընծայումը, ցավոք, չտեսավ հեղինակը: Ուսումնասիրությունը հիմնականում ընդգրկում է XIX դարի վերջի և XX դարի սկզբի (1900—1907 թվականների) ժամանակաշրջանը:

Աշխատությունը բաղկացած է հինգ գլուխներից, ունի ծավալուն ներածություն և վերջաբան: Վերջում զետեղված են անվանացանկը և 1891—1907 թվականների ընթացքում հայերեն լույս տեսած մարքսիստական սոցիալ-դեմոկրատական գրականության մատենագրությունը:

Ներածականում հեղինակը համառոտակի անդրադարձել է Անդրկովկասում մարքսիզմի տարածման ու պրոպագանդման հարցերին:

Մարքսիզմ-լենինիզմը,— գրել է Վ. Ավետիսյանը,— հայ հասարակական մտքի հոսանք է դառնում Անդրկովկասում զարգացող արդյունաբերական պրոլետարիատի (այդ թվում և հայ պրոլետարիատի) դասակարգային պայքարի հիմքի վրա, սերտորեն կապված ամբողջ Ռուսաստանի պրոլետարիատի հեղափոխական շարժման հետ: Այն տարածվեց ու արմատավորվեց բուրժուանացիոնալիստական և ռևիզիոնիստական գաղափարախոսությունների դեմ անհաշտ պայքարում (տե՛ս էջ 4):

Հայ իրականության մեջ մարքս-լենինյան ուսմունքի առաջին տարածողները, սոցիալ-դեմոկրատական բոլշևիկյան կազմակերպությունների ստեղծողները եղան Լենինի աշակերտները՝ Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը և ուրիշներ. նրանք գաղափարական անհաշտ պայքար ծավալեցին ազգայնական կուսակցությունների, ամենից առաջ, բուրժուանացիոնալիստական դաշնակցություն կուսակցության դեմ, որն Անդրկովկասում բանվորական շարժման, դասակարգային պայքարի առաջին իսկ քայլերից թշնամական դիրք գրավեց դրա հանդեպ՝ ցանկանալով հայ աշխատավորությանը կտրել համառուսական հեղափոխական շարժումներից, հակադրվել պրոլետարիատի գաղափարախոսությանը: Սակայն հակառակ թշնամիների հարուցած բոլոր արգելքներին, մարքսիստական գաղափարները ծավալվեցին հայ աշխատավորների շրջանում, ստեղծվեցին սոցիալ-դեմոկրատական բոլշևիկյան կազմակերպություններ, որոնք լուսավորեցին հայ ժողովրդի սոցիալական ու ազգային ազատագրության համար մղվող պայքարի ուղին ու նրան հաղթանակի առաջնորդեցին:

Անդրկովկասում բանվորական հեղափոխական շարժումների, սոցիալ-դեմոկրատական բոլշևիկյան կազմակերպությունների պատմությանը նվիրված ընդհանրացնող գիտական ուսումնասիրություններ սկսել են լույս տեսնել սովետական կարգերի հաստատումից հետո:

Ներածականում ըստ արժանվույն ներկայացված է լուսաբանվող պրոբլեմի վերաբերյալ ստեղծված գրականությունը: Օգտագործված փաստական հարուստ նյութերի և արխիվային վավերագրերի մի մասն առաջին անգամ է գիտական շրջանառության մեջ դրվում. հանգամանք, որն անհամեմատ բարձրացնում է աշխատության արժանիքները:

Աշխատության առաջին գլուխներում տեսական ընդհանրացումներով լուսաբանված են Հայաստանի սոցիալ-տնտեսական ու քաղաքական վիճակը, հայ հասարակական մտքի զարգացման ընթացքը, ներկայացված են քաղաքական հոսանքները XIX դարի երկրորդ կեսին: Անդրադառնալով Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացման պրոգրեսիվ նշանակությանը, հեղինակը նշում է, որ դրանով հայ ժողովրդի մի մեծ հատված ազատվեց շահական Պարսկաստանի ծանր լծից, ներգրավվեց կապիտալիստական հարաբերությունների ոլորտը, հայ ժողովրդի համար ստեղծվեցին տնտեսական զարգացման համեմատաբար բարենպաստ պայմաններ. նա հաղորդակից դարձավ ռուս մեծ ժողովրդի քաղաքական-հասարակական կյանքին, թևակոխեց հասարակական զարթոնքի, ազգային համախմբման շրջանը, իսկ դարավերջին իր բախտը սերտորեն կապեց ռուսական պրոլետարիատի ազատագրական պայքարին:

Հետռեֆորմյան շրջանում Անդրկովկասը ներգրավվեց կապիտալիստական զարգացման ոլորտը, ուժեղացավ աշխատավորության շահագործումը, ազգային-գաղութային ճնշումը: Հայաստանի հողազրկված գյուղացիությունը մասսայաբար արտագաղթում էր արդյունաբերական քաղաքները՝ Բաքու, Թիֆլիս, Բաթումի և այլուր: 1870—1880 թթ. հայ բանվորների թիվն Անդրկովկասում հասավ 25 հազարի, որոնք, համալրելով Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատի շարքերը, մաքառում էին այլազգի բանվորների հետ ուս ուսի:

Գրքում ուշագրավ փաստեր և վիճակագրական տվյալներ են բերված կալվածատերերի, վաշխառուների, բուրժուազիայի և ցարական պաշտոնյաների դեմ գյուղի ու քաղաքի աշխատավորների տարերային ընդվզումների մասին: Այդ շարժումներն արտացոլվել են ժամանակի հայ գրողների երկերում և մամուլում:

Անդրկովկասի ճնշված ժողովուրդների սոցիալական ու ազգային-ազատագրական պայքարը միշտ էլ պաշտպանություն է գտել ռուս հեղափոխականների, նրա պրոլետարիատի և աշխատավոր գյուղացիության կողմից, համընկել նրանց նպատակներին:

Հեղափոխական դեմոկրատները՝ Ն. Չերնիշևսկին, Ա. Գերցենը, Վ. Բելինսկին, Ն. Դոբրոլյուբովը, լինելով ռուս մարքսիստների, սոցիալ-դեմոկրատների նախորդները, մեծ ազդեցություն գործեցին նաև կովկասահայ հասարակական, հոգևոր կյանքի վրա:

Հիմնականում անդրադառնալով հայ իրականության մեջ տեղի ունեցող իրադարձություններին՝ հեղինակը ներկայացրել է կապիտալիզմի զարգացումը Անդրկովկասում և արդյունաբերական հայ բուրժուազիայի դերը 50—60-ական, ապա 70—80-ական թվականներին: Նա վերլուծել է առաջ եկած կղերաֆեոդալական, լիբերալ-բուրժուական և հեղափոխական դեմոկրատական հոսանքների գաղափարաքաղաքական սուր պայքարը հայ հասարակական կյանքում: Բնութագրելով հայ հեղափոխական դեմոկրատական միտքը՝ Ավետիսյանը հանգամանորեն լուսաբանել է ականավոր հեղափոխական-դեմոկրատ Միքայել Նալբանդյանի կյանքն ու հասարակական գործունեությունը:

Նալբանդյանը հեղափոխական մարտիկ էր, նա հետևողական պայքար էր մղում գյուղացիությանը ճորտական վիճակից և աղքատությունից ազատելու, հողային հարցը նրանց օգտին լուծելու համար: Խորապես գիտակցելով ռուսական հեղափոխական շարժման պատմական նշանակությունը՝ հայ ժողովրդի ազատագրումը նա կապում էր ռուս ժողովրդի, Ռուսաստանի դեմոկրատական հեղափոխության հետ: Նալբանդյանը պայքարում էր հայ կղերաֆեոդալական հոսանքի դեմ, ողջունելով հայ հասարակական առաջավոր մտքի զարթոնքը, քննադատում, մերժում էր բուրժուական լիբերալ ռեֆորմիստական ուղղությունը, նրանց պահպանողականությունը: Լինելով հայ հասարակական կյանքի նախամարքսյան սոցիալիստական մտքի առաջին ներկայացուցիչը՝ Նալբանդյանը մեծ ազդեցություն գործեց առաջավոր երիտասարդության վրա, խթանեց հեղափոխական-դեմոկրատական միտքը:

Ուշագրավ են աշխատության 80—90-ական թվականներին հայ իրականության մեջ տեղի ունեցող բարդ իրադարձություններին, արևմտահայ ազգային-ազատագրական շարժմանը, դրանում կովկասահայության մասնակցությանը նվիրված էջերը, որտեղ ցույց է տրված լիբերալ հայ բուրժուազիայի և ազգայնական քաղաքական կուսակցությունների հակամարքսիստական էությունը, ռեակցիոն դիրքորոշումը: Ցարական ինքնակալության հովանավորությամբ զարգացող, ռուսական բուրժուազիայի հետ սերտորեն կապված հայ բուրժուազիան, նահանջելով Նալբանդյանի և հեղափոխական նարոդնիկների ավանդներից՝ հայ ժողովրդի ազատագրումը կտրում էր Ռուսաստանից և միջազգային հեղափոխական շարժումներից: Մինչհեղափոխական հայ նարոդնիկներից լավագույնները մարքսիստական գրականության և բանվորական հեղափոխական աճող շարժումների ազդեցությամբ դարձան ՌՍԴԲԿ կուսակցության անդամներ, քաջ գիտակցելով, որ սոցիալ-դեմոկրատիան ո՛չ միայն ռուս, այլև ամբողջ Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատի դասակարգային շահերի պաշտպանն է, առաջավոր հեղափոխական ջոկատը, որ նա ճնշված բոլոր աշխատավորների ու ժողովուրդների, այդ թվում հայ ժողովրդի սոցիալական ու ազգային-ազատագրական պայքարը վարում է ճիշտ հունով:

Այստեղ ճշմարտացի ու հանգամանորեն բա-

* *Վ. Ավետիսյան, Հայ հասարակական մտքի զարգացման մարքս-լենինյան փուլի սկզբնավորումը, «Հայաստան», Երևան., 1976 թ.։*

ցահայտված է ազգայնական կուսակցությունների հակաժողովրդական քաղաքականությունը և հատկապես դաշնակցության բուրժուանացիոնալիստական էությունը: Դաշնակները թուրքահայության ազատագրական շարժումները և հայկական հարցի լուծումը կապում էին արևմտյան տերությունների միջամտության հետ: Ժխտելով դասակարգային պայքարը՝ նրանք ձգնում էին կովկասահայ աշխատավորությանը հեռու պահել համառուսական հեղափոխական շարժումներից, ձախողել աշխատավորության գործադուլները, խանգարել մարքսիստական գաղափարների տարածումը:

Աշխատության հաջորդ գլուխները նվիրված են գիտական սոցիալիզմի տարածմանը և ՌՍԴԲԿ առաջին կազմակերպությունների ըստեղծմանը Հայաստանում: Այդ ժամանակաշրջանում թարգմանվում էին Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի, ինչպես և մյուս ականավոր սոցիալիստների աշխատությունները: Գիտական կոմունիզմի գաղափարների տարածումը, Ռուսաստանի բանվորական շարժման ծավալումն իրենց ազդեցությունը գործեցին նաև հայ հասարակական կյանքի վրա: 80—90-ական թվականներից հայկական լեգալ պարբերական մամուլի էջերում հրապարակվում են Եվրոպայում ու Ռուսաստանում ուսանող, մարքսիստական գրականությանն իրազեկ հայ երիտասարդների թղթակցությունները, հոդվածները եվրոպական հեղափոխական և բանվորական շարժումների վերաբերյալ: Այդ երիտասարդներից ոմանք կապված էին արտասահմանում գործող ռուս ականավոր մարքսիստ Գ. Վ. Պլեխանովի գըլխավորած «Աշխատանքի ազատագրություն» խմբի ու գերմանական սոցիալ-դեմոկրատների հետ:

90-ական թվականներին, կապիտալիստական արդյունաբերության արագ զարգացմանը զուգընթաց, Անդրկովկասում ծավալվում էր բանվորական շարժումը: Ձևավորվում են մարքսիստական սոցիալ-դեմոկրատական խմբեր: Իրենց հասարակական-քաղաքական ակտիվ գործունեությունն են ծավալում այնպիսի ականավոր մարքսիստ լենինյաններ, ինչպես՝ Ք. Լալայանը, Ա. Ծուլուկիձեն, Վ. Կեցխովելին, Բ. Կնունյանը, Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Ի. Ստալինը, Մ. Ցխակայան և ուրիշներ: Անդրկովկաս աքսորված ականավոր ռուս հեղափոխական սոցիալ-դեմոկրատների՝ Վ. Կուռնատովսկու, Ի. Լուզինի և այլոց հետ մեկտեղ նրանք հիմնադրեցին Անդրկովկասի ՌՍԴԲԿ կազմակերպությունները: Կարճ ժամանակամիջոցում այդ կազմակերպությունները գաղափարակազմակերպական լայն գործունեություն ծավալեցին Անդրկովկասի աշխատավորության շրջանում:

Այստեղ իրավացի շեշտված է, որ հայ մարքսիստական միտքը, սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները սկզբնավորվել ու զարգացել են գերազանցապես Անդրկովկասի կենտրոններում՝ Թիֆլիսում և Բաքվում, որտեղ մինչև հեղափոխությունը կենտրոնացված էր հայ արդյունաբերական պրոլետարիատը:

Հայ բանվորների մարքսիստական առաջին խումբն ստեղծվել է Թիֆլիսում 1898 թ.: Նրա անդամներն են եղել առաջավոր հեղափոխական բանվորներ Մ. Մելիքյանը, Հ. Ադամյանը, Ա. Կախոյանը, Ժնևի նախկին ուսանող, հին սոցիալ-դեմոկրատ Գ. Ղարաջյանը և ուրիշներ: Մեկ տարի հետո 1899 թ. բուն Հայաստանի տերիտորիայում՝ Ջալալօղլիում առաջին մարքսիստական խումբ է կազմակերպում Ստ. Շահումյանը և ղեկավարում այն, որը մեծ դեր խաղաց Հայաստանում մարքսիստական սոցիալ-դեմոկրատական գաղափարների տարածման գործում: Շուտով խմբեր են ստեղծվում նաև Երևանում, Ալեքսանդրապոլում, Սանահինում, Ալավերդում, Հաղպատում և այլն:

Բանվորների շրջանում հեղափոխական աշխատանքն ուժեղացնելու, նրանց ՌՍԴԲԿ շուրջը համախմբելու համար, Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի և Ա. Զուրաբյանի նախաձեռնությամբ, Թիֆլիսի ՌՍԴԲԿ կոմիտեի հավանությամբ 1902 թ. կազմակերպվում է «Հայ սոցիալ-դեմոկրատների միություն»-ը:

Ղազարոս Աղայանի գրական գործունեության 40-ամյակին նվիրված հոբելյանական հանդեսում արտասանած իր ճառում Շահումյանը հեղափոխական մեծ կրքով ներկայացրեց հայ մարքսիստ-լենինյանների հայացքները հասարակական խնդիրների մասին, լուսաբանեց նրանց գործունեության ծրագիրն ու նպատակները: Անուհետև նա մերկացնում է ժամանակի հայ լիբերալների և ազգայնական կուսակցությունների մտավոր դատարկությունն ու երկչոտությունը: Շահումյանի անավարտ մնացած ճառը տպագրվեց Ջալալօղլու մարքսիստական խմբակի խմորատիպով ու տարածվեց: «Ազգային կուլտուրական գործունեության փոխարեն...,— ասված է ճառի վերջաբանում,— մենք քաղաքական-հեղափոխական կռիվ ենք քարոզում. բուրժուական «ազգասիրության» ու «ազատամտության» փլատակների վրա մենք կարմիր պրոլետարական դրոշակ ենք պարզում, որի վրա գրում ենք առայժմ.

«Կռիվ բռնակալության դեմ:

Կեցցե՛ քաղաքական ազատությունը» (էջ 359):

1902 թ. հոկտեմբերի 1-ին Թիֆլիսում Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի և մյուս սոցիալ-դեմոկրատների ջանքերով լույս է ընծայվում հայ սոցիալ-դեմոկրատների միության անլեգալ օրգան «Պրոլետարիատ» թերթը: Լինելով համառուսաստանյան բանվորական սոցիալ-դեմոկրատական շարժման տեղական օրգան՝ «Պրոլետարիատ»-ը պրոպագանդում էր լենինյան գաղափարները, բանվոր դասակարգի քաղաքական պայքարի խնդիրները, մերկացնում «էկոնոմիստների» տարերայնության օպորտունիստական տեսությունը, կոչ էր անում Անդրկովկասի պրոլետարիատին՝ սոցիալական ու ազգային ազատագրության պայքարն անխզելիորեն կապել համառուսաստանյան բանվորական հեղափոխական պայքարի հետ:

Ուշագրավ են Վ. Ի. Լենինի Անդրկովկասյան սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների հետ ունեցած կապերին, ինչպես և հայ սոցիալ-դեմոկրատների միության ցույց տված ղեկավար օգնությանն ու ցուցումներին նվիրված էջերը: Հայտնի է Վ. Ի. Լենինի ջերմ վերաբերմունքը հայ սոցիալ-դեմոկրատների միության և «Պրոլետարիատ» թերթի նկատմամբ:

Վ. Ի. Լենինի կապերը Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների հետ առավել սերտացան ՌՍԴԲԿ II համագումարից հետո: Անդրկովկասի բոլշևիկները մշտապես հանդես են եկել լենինյան դիրքերում, վճռական հակահարված տվել մենշևիկներին, դաշնակներին, մուսավաթականներին և ամեն կարգի օպորտունիստներին:

Հայ հասարակական մտքի վրա բոլշևիկյան գաղափարների ազդեցությունն ավելի արգասավոր եղավ 1905—1907 թթ. ռուսական առաջին հեղափոխության տարիներին: Հայաստանում՝ Երևանում, Ալեքսանդրապոլում, Կարսում և այլուր ստեղծվեցին սոցիալ-դեմոկրատական բոլշևիկյան կազմակերպություններ: «Պրոլետարիատի կռիվը» թերթի հետ միասին Անդրկովկասում սկսում են լույս տեսնել բոլշևիկյան նոր թերթեր՝ «Կայծ», «Նոր խոսք», «Բանվորի ձայն», «Օրեր» և այլն, որտեղ հրապարակվում էին Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Ս. Սպանդարյանի, Ս. Կասյանի և մյուս հայ բոլշևիկների հոդվածները: Դրանցում պրոպագանդվում էին սոցիալիստական հեղափոխության, պրոլետարական դիկտատուրայի հրատապ պրոբլեմները, մերկացվում մենշևիկների հակամարքսիստական դիրքորոշումը՝ հեղափոխական պայքարի ստրատեգիական ու տակտիկական հարցերում:

Հայ բոլշևիկները Լենինի անմիջական ղեկավարությամբ համառ պայքար էին մղում ամեն գույնի բուրժուական, մանր բուրժուական ազգայնական կուսակցությունների և հոսանքների դեմ, բացահայտում այդ կուսակցությունների բոլոր մեքենայությունները, հակաժողովրդական քաղաքականությունը, աշխատավորներին հեղափոխական պայքարի կոչում:

Ուսումնասիրելով մենագրությունը՝ ընթերցողը հանգում է այն համոզման, որ բոլշևիզմը Հայաստանում խոր արմատներ է ձգել դեռևս մեր դարասկզբին: Հայ ժողովուրդը, ընթանալով կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ձեռք բերեց սոցիալական և ազգային ազատագրություն, դարձավ սովետական ժողովուրդների մեծ և հզոր ընտանիքի իրավազոր անդամ:

Վարդան Ավետիսյանի Հայ հասարակական մտքի զարգացման մարքս-լենինյան փուլի սկզբնավորումը ստվարածավալ աշխատությունը գիտական լուրջ ներդրում է Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուսումնասիրության մարզում, օգտակար ձեռնարկ:

Ցանկալի է այս արժեքավոր մենագրության ռուսերեն հրատարակությունը:

**Ե. Մ. ԽԱԼԵՅԱՆ**

Պատմական գիտությունների թեկնածու

# ՀՐԱՏԱՐԱԿԵԼ Է «ԳԻՏԵԼԻՔ» ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆԸ

## Հ. Լ. Մակինյան— ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՀՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն իրավական և փաստական հավասարություն բերեց մեր երկրի բոլոր ազգերին ու ազգություններին: Անցյալում ճնշված շատ ժողովուրդներ փրկվեցին ֆիզիկական բռնաջնջումից, պետականություն հաստատեցին և ուս-ուսի ձեռնամուխ եղան տնտեսական ու կուլտուրական հետամնացության հաղթահարմանը: Մեր երկրում վաղուց են վերացել ազգային հակամարտության օբյեկտիվ նախադրյալները, ձևավորվել է միասնական սովետական ժողովուրդ:

Սույն գրքույկում, շեշտելով սովետական ժողովուրդների անսասան, ամրակուռ բարեկամության վիթխարի նշանակությունը, հեղինակն իրավամբ գրում է, որ անհրաժեշտ է առավելագույնս համակել մեր մարդկանց համազգային ոգով. իսկ այդ նշանակում է զերծ պահել նրանց նացիոնալիզմի ազդեցությունից:

Սոցիալիզմը բոլոր ժողովուրդներին իրենց ազգային էկոնոմիկան ու կուլտուրան զարգացնելու լայն հնարավորություններ ընձեռեց: Այժմ սովետական ամեն մի քաղաքացի հայրենիք ասելով չի հասկանում միայն իր ծննդավայրը կամ հանրապետությունը, այլ ողջ Սովետական Միությունը: Յուրաքանչյուր ազգի նվաճում ողջ սովետական ժողովրդի համատեղ, ընդհանուր ջանքերի արգասիքն է:

Սովետական մարդու համազգային հպարտությունը, ջերմ հայրենասիրությունը նոր ուժով դրսևորվեցին հատկապես Հայրենական մեծ պատերազմի տարիներին, երբ սովետական ռազմիկներն իրենց կյանքի գնով սպարտության մատնեցին թշնամուն: Հայրենական պատերազմում հաղթեց ո՛չ միայն սովետական հզոր զենքը, այլև սովետական մարդկանց հայրենասիրությունն ու համազգային հպարտության ոգին: Հայրենիքը մեկն էր, բազմազգ բազում զինվորների կամքը՝ մեկ, և հաղթանակն ամենքինն էր ու ամենքի ազատարար հայրենիքինը:

Մեր անծայրածիր երկրում ժողովրդինն է ժողովրդի ստեղծածը: Ահա ինչու պատմական կարճ ժամանակամիջոցում ՍՍՀՄ-ը դարձել է հզորագույն, ամենազարգացած երկրներից մեկը: Առանց ժողովուրդների լենինյան եղբայրության ու համատեղ ջանքերի միութենական հանրապետությունները չէին ունենա այսօրվա վիթխարի հասույթները:

Սովետական իշխանության տարիներին ստեղծվեցին կուլտուրական զարգացման լայն հնարավորություններ: 40 ազգություններ առաջին անգամ ունեցան իրենց գիրն ու գրականությունը: Ժողովուրդների կուլտուրաների փոխազդեցությունն ու փոխհարստացումը նպաստում են բոլոր ազգերի ու ազգությունների կուլտուրական կյանքի հարստացմանը: Սովետական գրողների, գիտնականների ու արվեստագետների ստեղծագործությունները դարձել են բոլոր ազգերի սեփականությունը: Աստիճանաբար հաստատուն, բազմապիսի են դառնում նրանց միջև եղած կապերը: Եվ հեղինակն իրավամբ եզրակացնում է. «Որքան ամուր դառնան մեր երկրի ազգերի ու ազգությունների համագործակցությունը, տնտեսական, կուլտուրական կապերը, այնքան ուժեղ ու վառ կարտահայտվի սովետական մարդու համազգային հպարտությունը»:

## Հ. Մ. Խաչատրյան— ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

«Եթե հեղափոխական դասակարգերի ժողովրդական ստեղծագործությունը չստեղծեր սովետները,— գրել է սովետների առաջին երկրի առաջնորդը՝ Վ. Ի. Լենինը,— ապա պրոլետարական հեղափոխությունը Ռուսաստանում անհուսալի մի գործ կլիներ, որովհետև հին ապարատն ունենալով՝ պրոլետարիատն իշխանությունն իր ձեռքին պահել չպիտի կարողանար, անկասկած, իսկ նոր ապարատ մեկեն ստեղծել չի կարելի» (Երկեր, հ. 26, էջ 110):

Զարգացած սոցիալիստական հասարակարգում այժմ ընդլայնվել է սովետների սոցիալական բազան: Այն սոցիալիստական դեմոկրատիզմի ձևերից մեկն է, որի շնորհիվ աշխատավորները զանգվածաբար մասնակցում են պետական գործերի կառավարմանն ու տնօրինմանը:

Հ. Խաչատրյանն իր վերոբերյալ գրքույկում համառոտակի դրվատել է ժողովրդի ամենազանգվածային, համապարփակ կազմակերպությունների՝ սովետների դերն ու էությունը:

Մեր երկրում գյուղական, ավանային, քաղաքային սովետներից սկսած մինչև ՍՍՀՄ Գերագույն սովետը լիակատար դեմոկրատական, ժողովրդական ներկայացուցչական մարմիններ են, աշխատավորների պետական իշխանության ուղղակի կրողները: Սովետական պետական մարմինների համակարգում սովետներն առաջին տեղն են գրավում. նրանք կարևոր դեր են խաղում ՍՍՀՄ-ում ժողովրդական իշխանության իրականացման գործում:

ՍՍՀՄ-ում առավել մեծաթիվ, ամենազանգվածային մարմինները տեղական ժողովրդական դեպուտատների սովետներն են, որոնց համակարգը կազմված է միութենական հանրապետության վարչատերիտորիալ կառուցվածքին համապատասխան: Սովետների կազմում ընտրվում են լավագույն բանվորները, կոլտնտեսականները, մտավորականության ներկայացուցիչները: Նրանց մեծ մասը պրոֆեսիոնալ քաղաքական գործիչներ չեն և իրենց դեպուտատական պարտականությունը կատարում են առանց արտադրությունից կտրվելու: Սովետներում ընդգրկված անձինք աշխատում են տնտեսական, պետական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում: Դեպուտատներ են ընտրվում և՛ կուսակցականները, և՛ անկուսակցականները: Մեծ տեղ է հատկացվում կանանց ու երիտասարդությանը:

Տեղական սովետները հաստատում են ժողովրդատնտեսական պլանն ու բյուջեն, ղեկավարում պետական, տնտեսական, սոցիալ-կուլտուրական շինարարությունը, իրենց ենթակա կառավարման մարմինների, կազմակերպությունների, հիմնարկությունների գործունեությունը, ապահովում օրենքների, պետական ու հասարակական կարգի, քաղաքացիների իրավունքների անշեղ կիրառումը, նպաստում երկրի պաշտպանունակության ուժեղացմանը: Նրանք քննարկում են ընտրողների ժողովների հավանությանն արժանացած նակազները, կազմակերպում դրանց իրագործումը և այլն:

ՍՄԿԿ-ն է ղեկավարում սովետների գործունեությունը: Պետական իշխանության մարմիններին ցույց տված նրա ամենօրյա ղեկավարման շնորհիվ տեղական սովետները մեծ հաջողությունների են հասել տնտեսական ու սոցիալ-կուլտուրական շինարարության ղեկավարման մարզում:

Տեղական սովետները սերտորեն կապված են իրենց ընտրողների՝ ժողովրդի հետ: Դրանով են պայմանավորված սոցիալիստական պետության ուժն ու հզորությունը: Ժողովրդական դեպուտատների սովետները պայմաններ են ստեղծում, որպեսզի ժողովրդական զանգվածները մասնակցեն ո՛չ միայն իրենց ներկայացուցիչների՝ ժողովրդական դեպուտատների ընտրությանը, այլև սովետի կողմից ընդունվող ակտերի քննարկմանն ու կենսագործմանը, այդ մարմինների գործունեության վերահսկողությանը:

Սովետական ողջ պետական ապարատի գործունեությունը խարսխված է դեմոկրատական ցենտրալիզմի վրա, որն ապահովում է համապետական շահերի զուգակցումը բնակչության շահերին:

ՍՄԿԿ-ն մեծ ուշադրություն է նվիրում տեղական մարմինների ինքնուրույնության, ստեղծագործական նախաձեռնության զարգացման հարցերին: Դրանք արտացոլված են ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների, տեղական սովետների աշխատանքի բարելավմանը նվիրված՝ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներում:

Մեր երկրում սովետները լիակատար ինտերնացիոնալ բնույթ ունեն:

Սովետների համաժողովրդական գործունեության նոր, առավել զարգացող դեմոկրատիայի մի փուլի մարմնավորում հանդիսացավ ՍՍՀՄ նոր Սահմանադրության հռչակումն ու դրա արգասաբեր կիրառումը մեր անծայրածիր հայրենիքի բոլոր բնակավայրերում:

## Փ. Ի. Ենգոյան— ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՈՒՂԻՆԵՐՈՎ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն ազատության ուղի բացեց դարերով ճնշված ու կեղեքված հայ ժողովրդի համար: 1920 թ. սոցիալիստական հեղափոխությունը հաղթանակեց և Հայաստանում. սկսվեց հայ ժողովրդի իրական վերածնունդը: Տանջը ժառանգություն էր ստացել նա դաշնակցական ավանտյուրիստական կառավարությունից: Քայքայվել էին երկրի էկոնոմիկան, գյուղատնտեսությունը. պարենային ճգնաժամ էր, սովն ու համաճարակային հիվանդությունները տարածվել էին Հայաստանով մեկ:

1920 թ. դեկտեմբերի 21-ի դեկրետով վերացվեցին հին պետական ապարատի բոլոր տեղական մարմինները, ստեղծվեցին սովետական իշխանության տեղական ու կենտրոնական մարմիններ: 1922 թ. հունվարին հանրապետության սովետների I համագումարում ըն-

դունված առաջին Սահմանադրությամբ վավերացվեցին հայ ժողովրդի քաղաքական ու սոցիալական նվաճումները:

Անցած տարիներին ինչպես ՍՍՀՄ բոլոր ազգային հանրապետություններում, Հայկական ՍՍՀ-ում ևս սոցիալ-տնտեսական, հասարակական-քաղաքական արմատական տեղաշարժեր կատարվեցին: Կոմունիստական կուսակցության և սովետական պետության ամենօրյա օգնության շնորհիվ կարճ ժամանակամիջոցում Սովետական Հայաստանը դարձավ ՍՍՀՄ զարգացած ինդուստրիայի, սոցիալիստական, առաջավոր տեխնիկայով զինված հանրապետություն: Ոռոգելի հողերի ընդլայնման, արտադրապրոցեսների էլեկտրիֆիկացման ու մեքենայացման, ինչպես և գիտության նվաճումների ներդրման շնորհիվ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, աճել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Ինտենսիվ տեմպերով զարգացան նաև թեթև և սննդի արդյունաբերությունը:

Կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ Հայաստանը դարձել է գրագիտության, զարգացած գիտության, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական, արվեստի ու գրականության, կուլտուրայի երկիր:

Սոցիալիզմի կառուցման տարիներին արագ զարգացել է և Հայաստանի առողջապահությունը: Բուժհիմնարկությունների, առողջապահական հաստատությունների ցանցի ընդլայնմամբ վաղուց վերացել են համաճարակները ու վարակիչ հիվանդությունները: Ընդարձակվել է մսուր-մանկապարտեզների ցանցը:

Տարեցտարի բարձրանում է հանրապետության աշխատավորության կենսամակարդակը: Վերացել են գյուղի և քաղաքի միջև եղած էական տարբերությունները: Արագ թափով ծավալվում է բնակարանային շինարարությունը:

Իրականացել է հայ ժողովրդի երազանքը, նա դարձել է իր բախտի տերը: «Սովետական Հայաստանի պատմական փորձը,— ասել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության Նախագահ ընկ. Լ. Ի. Բրեժնևը Երևանում կայացած հանդիսավոր նիստում,— կրկին ու կրկին համոզում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ո՛չ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ»:

Այս փոքրածավալ գրքույկում հեղինակն աշխատել է փաստերի, թվերի միջոցով ցույց տալ, որ հայ ժողովուրդն իրոք վերածնվեց ու անմնացորդ նվիրվեց նոր կյանքը դարբնելու, պայծառ գալիքի կերտման գործին:

## Հ. Մ. Աբրահամյան— ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

Պատմական խոր վերափոխությունների, մեծագործությունների ժամանակաշրջան ապրող մեր երկրի համար կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ XXV համագումարը: Այն աշխարհին ցույց տվեց կոմունիստների կուռ միասնությունն ու հաստատակամ վճռականությունը՝ պայքարելու հանուն աշխարհում կայուն խաղաղության պահպանման, աշխարհի բոլոր առաջադեմ ուժերի համախմբման, ժողովուրդների ազատության, անկախության ու առաջընթացի:

Համագումարում քննարկված հարցերի, որոշումների լուսաբանմանն է նվիրել Հ. Մ. Աբրահամյանն իր այս գրքույկը:

Անառարկելի է այն փաստը, որ սոցիալիստական, կոմունիստական կարգը ստեղծում է գիտատեխնիկական հեղափոխության, գիտատեխնիկական առաջընթացի ավելի նպաստավոր պայմաններ, քան իր դարն ապրած կապիտալիստական հասարակարգը: Տասներորդ հնգամյակում կուսակցության ու ժողովրդի առջև դրված են մեծ ու կարևոր խնդիրներ, որոնց կենսագործմամբ մեր երկիրը մի նոր վճռական քայլ կկատարի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին, խթանելով մեր երկրի սոցիալական առաջընթացը: Ահա ինչու ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ այդ «հնգամյակը հսկայական մասշտաբների և տնտեսական մեծ հնարավորությունների հնգամյակ է»:

Նշելով մեր երկրի առջև ծառացած նոր կարևոր խնդիրները, որոնք անհրաժեշտ է լուծել գիտատեխինակական առաջընթացն արագացնելու համար, գրքույկում շեշտվում է գիտական մտահղացումների իրականացման հնարավորություններ ընձեռելու, այդ ընթացքն արգելակող խոչընդոտները վերացնելու անհրաժեշտությունը: Գիտատեխնիկական առաջընթացը պահանջում է ավելի բարձրացնել բանվոր դասակարգի, գյուղացիության, ողջ աշխատավորության կրթական, գիտական և կուլտուրտեխնիկական մակարդակը:

Մեր երկրի սոցիալական առաջընթացում իր զգալի ավանդն ունի նաև մեր հանրապետությունը: Հայ աշխատավորներն ակնբախ հաջողությունների են հասել, լուծել ժողովրդատնտեսական վիթխարի խնդիրներ, նպաստել երկրի հզորացմանը:



Սովետական Միության աշխատավորները, համախմբված լենինյան կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի շուրջը, հանդես են բերում հայրենանվեր աշխատանքի նորանոր նախաձեռնություններ մեր երկրի տնտեսական հզորությունն ամրապնդելու, հասարակության սոցիալական կառուցվածքը կատարելագործելու, ժողովուրդների բարեկամությունն առավել խորացնելու, աշխարհի սոցիալ-տնտեսական, քաղաքական վերափոխումներն ու առաջընթացն արագացնելու նպատակով:

## Ս. Ա. Հարությունյան— ՈՒՍՈՒՑՄԱՆ ԵՎ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ ԲՈՒՀ-ՈՒՄ

Բուհում սովորողների հիմնական նպատակը հմուտ մասնագետ դառնալն է, որը պայմանավորված է ուսումնադաստիարակչական պրոցեսի գիտական կազմակերպմամբ:

Մեր օրերում հետզհետե մեծանում է իբրև ապագա մտավորականության, մասնագետ կադրերի պատրաստման դարբնոցի՝ բարձրագույն ուսումնական հաստատությունների դերը: Համառոտակի դրանց անելիքներին ու խնդիրներին է անդրադարձել Ս. Հարությունյանն իր այս գրքույկում:

Ծրջանավարտը կյանքում հանդես է գալիս ո՛չ միայն որպես մասնագետ, այլև՝ հասարակական գործիչ, ունակ ղեկավարելու աշխատանքային տեղամաս, վարելու գաղափարադաստիարակչական աշխատանք: Այս ամենի հիմքը դրվում է բուհում: Այսօրվա ուսանողը վաղվա մասնագետն է, որը փոխարինելու է ավագ սերնդին, շարունակելու կոմունիզմի կառուցման պատասխանատու գործը: Դրան հասնելու համար անհրաժեշտ են խոր գիտելիքներ, լայն մտահորիզոն, բարձր կուլտուրա, համակողմանի զարգացում:

Ուսանողական միջավայրում հաստատված հարաբերություններն անմիջականորեն ազդում են ուսանողի անհատականության ձևավորման վրա: Կարևոր են կամային հատկությունները, ինքնուրույն որոշումներ ընդունելու ունակությունը, սոցիալական հասունությունը, բարոյական վարքագիծը:

Ուսման պրոցեսի ոչ գիտական կազմակերպման հետևանքով ուսանողները, հատկապես առաջին կուրսեցիները, գերծանրաբեռնված են լինում, որը պատճառ է դառնում գերհոգնածության, բացասաբար անդրադառնում աշխատունակության, առողջության վրա:

Ուսանողը բուհական կյանքին հարմարվում է աստիճանաբար, հաղթահարելով հոգեբանական, նյութական ու ֆիզիկական մի շարք դժվարություններ: Այստեղ շատ կարևոր է դասախոսի ուսումնադաստիարակչական աշխատանքը: Դասախոսը պարտավոր է ուսանողներին սովորեցնել ճիշտ ու սիստեմատիկաբար պլանավորել ինքնուրույն աշխատանքը, հաշվի առնել նաև այլ առարկաներից տրվող հանձնարարությունները:

Հարկավոր է այնպես կազմակերպել գործը, որ ապագա մասնագետը բուհում ինչպես հարկն է տիրապետի ընտրած մասնագիտությանը, ձեռք բերի որոշակի փորձ ու հմտություն: Կարևոր է նաև ուսանողության ակտիվ ներգրավումը հասարակական գործունեության ոլորտը, ուր նա ռեալ հնարավորություն ունի տեսնելու, խորապես զգալու իր աշխատանքային գործունեության արդյունավետությունը: Մեր բուհերն իրենց ուսումնադաստիարակչական ողջ գործունեությունը պետք է կազմակերպեն այնպես, որ շրջանավարտն ընտրած մասնագիտության վերաբերյալ ստանա կայուն, խոր գիտելիքներ, դառնա նոր հասարակարգի նախաձեռնողիր կերտող: Հեղինակը տեղին է ընտրել իր գրքույկի վերջաբանը. «Եթե մենք ընտրել ենք այնպիսի մասնագիտություն, — գրել է Կ. Մարքսը իր վաղ շրջանի մի ստեղծագործությունում,— որի շրջանակներում ավելի շատ կարող ենք աշխատել մարդկության համար... ապա մեր երջանկությունը կըպատկանի միլիոններին, մեր գործերը կապրեն խաղաղ, բայց հավերժ կենդանի կյանքով: Իսկ մեր աճյունի վրա կթափվեն ազնիվ մարդկանց տաք արցունքները»:

## Բ. Թ. Վարդանյան— ՀԱՆՈՒՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ԱՐՄԱՏԱՎՈՐՄԱՆ

Հեղափոխությունն իր հետ բերեց այնպիսի վերափոխումներ, որոնք տնտեսական, հասարակական հարաբերությունների, գաղափարախոսության ու բարոյականության, մարդկանց կենցաղի ու վարքագծի բնագավառում ստեղծեցին սոցիալիստական սկզբունքների վրա խարսխված նոր ապրելակերպ, որն իր բնույթով բուրժուականի հակապատկերն է: Սոցիալիզմի ժամանակ հասարակության բոլոր խավերի համար ձևավորվում է միասնական ապրելակերպ: Ապրելակերպը մարդու նիստուկացն է հասարակության մեջ, նրա տեղը սոցիալական, քաղաքական հարաբերությունների սիստեմում: Այն ընդգրկում է նյութական ու հոգևոր արժույթների, հասարակական ու անհատական կյանքի լայն շրջանակ— աշխատանքը, հասարակական-քաղաքական գործունեությունը, անհատի սոցիալ-իրավական դիրքը, մարդկանց կենցաղը, հանգիստը, վարքագծի ոլորտը, անձնական հարաբերությունները:

Երևանի Սովետականի շրջանի կուսակցական,

սովետական, տնտեսական կազմակերպությունների գործունեությանն է անդրադարձել Բ. Վարդանյանն իր այս գրքույկում: Նա նշում է, որ այս շրջանի ձեռնարկություններում ստեղծվել են սոցիալիստական մրցության կազմակերպման հանձնաժողովներ, որոնց գործունեությունը տալիս է դրական արդյունք, խթանում աշխատանքային նախաձեռնությունների, հերոսագործությունների ծավալմանը: ՀԿԿ շրջկոմը, շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները ջանում են այնպես անել, որ չլինի արտադրական առաջադրանքները չկատարող որևէ ձեռնարկություն, մշտապես առաջնորդվելով այն սկզբունքով, որ միայն հասարակության համար համընդհանուր օգտակար աշխատանքի բուրայում է հնարավոր կյանքի կոչել մարդկային բարոյական վեհ հատկանիշները, նրանց վարքի նորմերն ու հարաբերությունները: Չէ՛ որ մեր հասարակարգում մարդկանց հաղորդակցությունը համատեղ աշխատանքն է, իսկ անհատին հասարակության հետ կապող հիմնական օղակը՝ աշխատանքային կոլեկտիվը:

Սոցիալիստական հասարակության արդի փուլում դեռևս ոչ բոլորն են սովորել իրենց պահանջմունքները ներդաշնակել պարտականությունների և հանրօգուտ գործունեության հետ: Անդրադառնալով շրջանում նկատվող հակահասարակական երևույթներին, դրանց դեմ տարվող պայքարին՝ հեղինակը նշում է, որ կուսակցական, սովետական կազմակերպությունները, վարչական օրգանները պետք է ավելի ծավալուն պայքար կազմակերպեն վերացնելու նման երևույթներն ու փաստերը: Մեր հասարակությանը խորթ երևույթների դրսևորումների դեմ մղվող հետևողական պայքարը մեծապես կնպաստի սովետական ապրելակերպի կանոնների արմատավորմանը:

Շատ բան է արված աշխատավորների ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության ոլորտում: Վերջին տարիներս ՀԿԿ շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն զգալի միջոցներ են ձեռնարկել՝ արմատապես բարելավելու աշխատավորության ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության գործը, սովետական ժողովրդի բարեկեցության հետագա աճը: Հասարակական և անձնական կյանքում կոմունիստական բարոյականության նորմերի արմատավորումը որակական նոր աստիճանի կբարձրացնի սովետական մարդկանց ապրելակերպը, հանդիսանալով ապացույցն այն բանի, որ միայն սոցիալիզմի պայմաններում է հնարավոր ստեղծել իրոք մարդկային ապրելակերպ:

## Ս. Ա. Մելքումյան— ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ ՍՍՀՄ ԱՐՏԱՔԻՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՍԻՍՏԵՄՈՒՄ

Աշխարհագրական գիտությունների դոկտոր Ս. Մելքումյանն իր գրքույկում հանգամանորեն ներկայացնում է Սովետական Հայաստանի տեղը ՍՍՀՄ արտաքին առևտրատնտեսական կապերի ընդհանուր համակարգում:

Հեղինակը հետազոտել է ՍՍՀՄ արտաքին տնտեսական կապերն արտահայտող բազում ձևերը— արտադրանքի արտահանում, ձեռնարկությունների համատեղ կառուցում, տեխնիկական աջակցություն նախագծերի ու փաստաթղթերի կազմման գործում, առաջավոր փորձի փոխանակում, կադրերի պատրաստում, վարկատրում, ցուցահանդեսների ու տոնավաճառների կազմակերպում և այլն:

ՍՍՀՄ արտաքին տնտեսական կապերի ընդհանուր համակարգում, տնտեսական փոխհարաբերությունների բոլոր ձևերում յուրահատուկ տեղ ունեն միութենական հանրապետությունները:

Հեղինակը հիշատակում է մեր հանրապետության այն բազմաթիվ ձեռնարկությունները, որոնք արդյունաբերական կապեր ունեն արտասահմանյան երկրների հետ:

Հայկական ՍՍՀ-ն արտաքին տնտեսական կապերի մեջ է աշխարհի 80 երկրների հետ, որին մասնակցում են հանրապետության արդյունաբերական 80 ձեռնարկություններ: Սովետական Հայաստանը համաշխարհային շուկա է հանում ժամանակակից վերամշակվող արդյունաբերության գրեթե բոլոր ճյուղերի ավելի քան 200 տեսակի պատրաստի արտադրանք: Արտահանման ընդհանուր սիստեմում առավելագույնս ընդլայնվում է ճշգրիտ մետաղահատ հաստոցների, էլեկտրաճշգրիտ չափիչ սարքերի, ժամացույցների, գեներատորների, տրանսֆորմատորների, շարժական էլեկտրակայանների արտահանությունը:

Այնուհետև հեղինակը նշում է, որ Սովետական Միության մյուս հանրապետությունների հետ Հայաստանը ևս մասնակցում է սոցիալիզմի լագերի և, հատկապես, զարգացող երկրների սեփական ինդուստրիայի ստեղծման գործին: Հայ մասնագետները ևս ակտիվ մասնակցում են Հնդկաստանի, Կուբայի, Շրի-Լանկայի, Իրանի, Իրաքի, Նեպալի, Սիրիայի, Ալժիրի, Եմենի և ՍՍՀՄ-ի հետ բարեկամական հարաբերությունների մեջ գտնվող այլ երկրների արդյունաբերական ձեռնարկությունների, հիդրոկայանների, նավահանգիստների, օդանավակայանների, հիվանդանոցների և դպրոցների կառուցման աշխատանքներին:



Սովետական Հայաստանը ո՛չ միայն մասնակցում է ՍՍՀՄ օգնությամբ արտասահմանյան երկրներում արդյունաբերական օբյեկտների կառուցմանը, այլև զգալի դեր է խաղում այդ երկրների համար ազգային կադրերի պատրաստման գործում:

Երևանի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են ԳԴՀ-ից, Վիետնամից, Սիրիայից, Իրաքից, Լիբանանից և այլ երկրներից ժամանած 1.000-ից ավելի ուսանողներ և ասպիրանտներ:

Մոտ տասնհինգ տարվա ընթացքում փորձի փոխանակման նպատակով Հայաստանի արդյունաբերական ձեռնարկություններն են այցելել Չեխոսլովակիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Հունգարիայի, Չինաստանի, Գ.Դ.Հ-ի, Լեհաստանի, Հարավսլավիայի, Ֆրանսիայի, Իտալիայի, ԳՖՀ-ի, ԱՄՆ-ի, Ֆինլանդիայի, Ճապոնիայի, Հնդկաստանի և բազմաթիվ այլ երկրների մասնագետներ: Նույն նպատակով Հայաստանի շատ մասնագետներ եղել են սոցիալիստական և կապիտալիստական բազմաթիվ երկրներում:

Միջազգային ցուցահանդեսներն ու տոնավաճառները մեծ դեր են խաղում երկրների միջև տնտեսական կապերի հաստատման, դրանց ընդլայնման գործում:

Սովետական Հայաստանը ևս, որպես ՍՍՀՄ անբաժանելի մաս, աշխարհի տարբեր երկրներում կազմակերպված ցուցահանդեսներին և տոնավաճառներին ներկայացրել է իր տնտեսության և կուլտուրայի հասումները: Հեղինակը հանգամանորեն անդրադառնում է Հայաստանի մասնակցությանը այդ միջոցառումներին: Հայաստանը, ընդհանուր առմամբ, մասնակցել է ավելի քան 200 ցուցահանդեսների և տոնավաճառների: Հայ գիտնականների և ինժեներների նորաստեղծ ճշգրիտ հաստոցները, հայկական գորգերը, կոնյակներն ու գինիները աշխարհի տարբեր ցուցահանդեսներում արժանացել են ոսկե մեդալների և առաջին կարգի դիպլոմների:

## Վ. Հ. Ղազանչյան— ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ԵՎ ՍՈՎԵՏԱՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՎԵՐԵԼՔԸ

«Ընդություն դասախոսին» մատենաշարով հրատարակված այս գրքույկում պատմական գիտությունների թեկնածու Վ. Ղազանչյանը համառոտակի ներկայացրել է Սովետական Հայաստանի հասումներն ու նվաճումները մշակույթի բնագավառում: Կուլտուրական հեղափոխությունը մեր երկրի ժողովուրդների հոգևոր վերածննդի սկիզբը դրեց. մեր հայրենիքում ստեղծվեց նոր սոցիալիստական մշակույթ, որը բնորոշվում է խոր կուսակցականությամբ, հեղափոխական հումանիզմով, հայրենասիրական և ինտերնացիոնալիստական իդեալների ներդաշնակ զուգակցությամբ:

Մեր երկրի տարբեր ազգերի մշակույթի բոլոր բնագավառները խարսխվեցին մի ընդհանուր հիմքի՝ մարքս-լենինյան աշխարհայացքի, բարոյականության կոմունիստական սկզբունքների, սոցիալիստական ռեալիզմի սկզբունքի, սովետական հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի վրա:

«Մեզանում ո՛չ միայն իրավաբանական, այլ փաստական է դարձել ազգերի հավասարությունը»— նշեց Լ. Ի. Բրեժնևը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության նախագծի մասին զեկուցման մեջ: Սոցիալիստական ազգերի փոխադարձ կապն ու փոխներգործությունը, ինչպես կանխատեսում էր Վ. Ի. Լենինը, ժամանակի ընթացքում վերանեցին նրանց բարեկամության:

Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը շրջադարձային էր Միության բոլոր ազգերի, նույնպես և հայերի համար. հիմնովին փոխվեցին հայ ժողովրդի քաղաքական և տնտեսական գոյապայմանները: Պատմական կարճ ժամանակամիջոցում Հայաստանը դարձավ բարձր զարգացած ինդուստրիալ ագրարային հանրապետություն, ժամանակակից գիտության, կուլտուրայի երկիր:

Հանրապետության աշխատավորները ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործմամբ, եղբայրական ժողովուրդների անշահախնդիր օգնությամբ հնարավորություն ստացան լայնորեն դրսևորելու իրենց ստեղծագործական ունակությունները, պատմական վիթխարի նվաճումների հասան բոլոր ասպարեզներում, այդ թվում և կուլտուրական հեղափոխության բնագավառում:

Սոցիալիստական մշակույթի ուժը նրա կոմունիստական գաղափարայնությունն է, հավատարմությունն ազգային դեմոկրատական ակունքներին, նշում է հեղինակը, որոնք դրսևորվում են ազգային մշակույթների փոխմերձեցման ստեղծագործական պրոցեսում:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում ակընբախ վերելք ունեն ժողովրդական կրթության սիստեմը, գիտությունը, գրականությունն ու արվեստը: Այսօր Հայաստանում գործում են 1535 հանրակրթական դպրոց՝ 43.600 ուսուցիչներով, 13 բարձրագույն ուսումնական հաստատություն, 64 տեխնիկում, 1.324 մասսայական գրադարան՝ 12 միլիոնից ավելի գրքաֆոնդով, 1.180 ակումբային հիմնարկություններ, 14 պետական թատրոն, 35 թանգարան և այլն: Հայաստանում գործում են ավելի քան 220 հիվանդանոց, 25 առողջարան:

Այնուհետև հեղինակն անդրադառնում է Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորվելու հսկայական դերին ու նշանակությանը հայ ժողովրդի կյանքում: Պատմական բախտորոշ մի իրադարձություն, որով ո՛չ միայն հաստատվեց հայերի գոյատևելու, իրենց նախնիների հողում ապրելու իրավունքը, այլև հայ աշխատավորների համար բարենպաստ պայմաններ ստեղծվեցին միանալու ռուսական պրոլետարիատի ազատագրական շարժմանը:

Սովետական Միությունը գրահրատարակչությամբ աշխարհում առաջինն է: ՍՍՀՄ-ում հրատարակվում է 89 լեզուներով գրականություն: Հայաստանում տպագրվում է գրականություն հայերեն, ռուսերեն, ադրբեջաներեն, քրդերեն, ինչպես և օտար լեզուներով: Մեր հանրապետությունում տարեկան լույս է ընծայվում ավելի քան 1.100 անուն գիրք և գրքույկ՝ 10,5 միլիոն օրինակ ընդհանուր տպաքանակով:

Սովետական Միության մյուս բոլոր հանրապետությունների նման, շնորհիվ սովետական կուլտուրաների ծաղկման ու մերձեցման, Հայաստանը դարձել է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական հարուստ մշակույթի հանրապետություն: Սոցիալիստական մշակույթը, ստեղծվելով և ամրապնդվելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության և եղբայրության ոգով, ներառնում է մարդկության գոյության ընթացքում կուտակած կուլտուրայի գանձերը:

## Մ. Պ. Մչեդլով— ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր **Մ. Պ. Մչեդլովի**՝ Ապրելակերպը և գաղափարական պայքարը բրոշյուրում բացահայտվում է «ապրելակերպ» հասկացության բովանդակությունը: Նշվում է, որ ապրելակերպի բնութագրումն անհնար է առանց սոցիալական կենցաղի ամենաբազմազան ոլորտների՝ աշխատանքային, արտադրական, քաղաքական, հասարակական, ինչպես նաև հանգստի, կենցաղի, ընտանեկան հարաբերությունների, հասարակական գիտակցության, հասարակական հոգեբանության վերլուծության:

Ապրելակերպի էությունը բացահայտելիս հեղինակը նախ հիմնավորում է դրա՝ որպես տվյալ սոցիալական պայմաններում մարդկանց կենսագործունեության բնորոշ ձևերի ամբողջության, նրանց սոցիալական ակտիվության, նյութական ու հոգևոր արժույթների ստեղծմանն ու սպառմանը նրանց մասնակցության առանձնահատկության ըմբռնում:

Միայն ապրելակերպի քանակական ու որակական կողմերի համադրությունն է հնարավորություն ընձեռում, եզրակացնում է հեղինակը, ներկայացնելու սոցիալական իրականությունն իր ողջ կոնկրետությամբ, իր բոլոր կարևորագույն բնութագրերով:

Գրքույկում շեշտվում է, որ միասնական ապրելակերպ չկա և չի կարող լինել նաև բուրժուական հասարակության մեջ, որը բաժանված է տարբեր նպատակներ հետապնդող, գաղափարական տարբեր սկզբունքներով ղեկավարվող, իրենց ընդունակությունների դրսևորման ու զարգացման, իրենց պահանջմունքների բավարարման համար տարբեր հնարավորություններ ունեցող հակամարտ դասակարգերի: Միաժամանակ ցույց է տրվում, որ մեր օրերում՝ սոցիալիստական ու կապիտալիստական հասարակական-քաղաքական սիստեմների խաղաղ գոյակցության պայմաններում, ապրելակերպը դարձել է գաղափարական սուր պայքարի օբյեկտ: Այսպես. հաշվի առնելով, որ սոցիալիզմի և դեմոկրատիայի գաղափարները լայնորեն տարածվել են, որ ժողովուրդների գիտակցության մեջ անխզելիորեն արմատավորվում են «հումանիզմ» և «սոցիալիզմ» հասկացությունները, բուրժուական պրոպագանդիստները ձգտում են հարմարվել նոր իրադրությանը, թաքնվում օբյեկտիվության, դեմոկրատիայի ու անհատի իրավունքների պաշտպանների դիմակի տակ, աքողում իրենց որդեգրած գաղափարների բուն էությունը:

Անդրադառնալով «կյանքի որակի» թեմատիկային, հեղինակը նշում է, որ, առանց հասարակական իրական կյանքի որակական փոփոխությունների, չի կարելի հասնել մարդկային կատարյալ կյանքի: Միաժամանակ ընդգծվում է, որ բուրժուական գաղափարախոսները, աղավաղված ներկայացնելով սոցիալիզմի պրակտիկան ու էությունը, խեղաթյուրելով «կյանքի որակ» հասկացության իմաստը, ջանում են ապացուցել մասնավոր սեփականատիրական հարաբերությունների կարգի, բուրժուական ապրելակերպի առավելությունները:

Փաստական հարուստ նյութի հիման վրա գրքույկում շարադրված է սոցիալիստական ապրելակերպի առավելությունները կապիտալիստականի նկատմամբ, քննադատված են բուրժուական կոնցեպցիաները: Սոցիալիզմն ստեղծում է հասարակության և անհատի փոխհարաբերության նոր սկզբունքներ, բնորոշում հասարակական կեցության տարբեր ոլորտներում մարդու կենսագործունեության նոր բովանդակությունը: Սոցիալիզմն իր բուն էությամբ գիտականորեն կազմակերպված հասարակություն է, և նրա ապրելակերպն ստեղծվում է ոչ թե տարերայնորեն, այլ ժողովրդի



նպատակասլաց գործունեությամբ: «Մեր կարգերի ուժը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում տված հաշվետու զեկուցման մեջ,— մասսաների գիտակցականությունն է: Եվ կուսակցությունն իր մշտական հոգսն է համարում կոմունիստական գիտակցականության, կոմունիզմ կառուցելու պատրաստակամության, կամքի ու հմտության դաստիարակումը»:

Բազմազան ու վճռական է կոմունիստական աշխարհայացքի ազդեցությունը սովետական ժողովրդի ապրելակերպի զարգացման վրա: Սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի նպատակն է անհատի ազատագրումը սոցիալական ու հոգևոր կապանքներից, լավագույն պայմանների ստեղծումը աշխատավոր մարդու հասարակական ակտիվության զարգացման համար, նրա բոլոր ընդունակությունների, հոգևոր հնարավորությունների դրսևորումը: Գրքույկում հեղինակը բացահայտում է նաև կոմունիստական դաստիարակության դերը սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման խնդրում:

Սոցիալիստական ապրելակերպը ենթադրում է յուրաքանչյուր մարդու հոգում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ձևավորում: Սոցիալիստական ապրելակերպի կարևոր առանձնահատկությունը, շեշտում է հեղինակը, սոցիալիստական լավատեսության, կենսուրախության, լավագույն ապագայի նըկատմամբ ունեցած հավատի գաղափարների մասսայական տարածումն է: Մեր ժամանակներում պատմական լավատեսության կրողն է մարքսիզմ-լենինիզմը, որը հիմնավորում է կապիտալիզմը սոցիալիզմով փոխարինելու անխուսափելիությունը, հասարակության վերընթաց զարգացման անկասելիությունը:

Գրքույկում հեղինակը հանգամանորեն անդրադարձել է այն հարցին, թե սովետական մարդկանց համար որքան կարևոր են արտաքին քաղաքական բարենպաստ պայմանների ստեղծումը, ժողովուրդների միջև խաղաղության լենինյան հայացքների տարածումը:

**Մ. Պ. Մչեդլովի** Ապրելակերպը և գաղափարական պայքարը գրքույկը օգտակար է քաղինֆորմատորների, դասախոսների, պրոպագանդիստների և գաղափարական բնագավառի այլ աշխատողների համար:

## Ս. Ա. Սիմոնյան— ԸՆԴԴԵՄ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԱԴԻՈՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ

Կուսակցության XXV համագումարն ընդունեց խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության ու անկախության համար մղվող պայքարի ծրագիր, որը հետևողականորեն կենսագործվում է: Իր արտաքին քաղաքականության մեջ սովետական պետությունը ձգտում է սոցիալիստական համագործակցության երկրների հետ համատեղ այսուհետ ևս ապահովել միջազգային բարենպաստ պայմաններ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման, ժողովուրդների առաջադիմության համար: Սակայն կապիտալիստական աշխարհում տակավին գոյություն ունեն ուժեր, որոնք ձգտում են միջազգային կյանքի զարգացումը ետ շրջել դեպի «սառը պատերազմի» ժամանակները, ամեն կերպ խանգարել լարվածության թուլացմանը, Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների դեմ կազմակերպում են գաղափարական դիվերսիաներ, հակասովետական, հակակոմունիստական կամպանիաներ:

Այս հարցերին է անդրադարձել **Ս. Ա. Սիմոնյանն** իր գրքույկում: Հեղինակն ընթերցողների ուշադրությունն է հրավիրում այն բանի վրա, որ, չնայած միջազգային հարաբերություններում կատարված էական փոփոխություններին, իմպերիալիզմը բնավ չի հրաժարվել իր գործելակերպից՝ հակակոմունիզմից, որի հիմնական էությունը սոցիալիստական կարգերի զրպարտումն է, կոմունիստական կուսակցությունների քաղաքականության ու նպատակների, մարքսիզմ-լենինիզմի կեղծումը:

Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում ասաց. «Երկու աշխարհայացքների պայքարում չի կարող տեղ լինել չեզոքության ու կոմպրոմիսների համար: Այստեղ հարկավոր է քաղաքական բարձր զգոնություն, ակտիվ, օպերատիվ և համոզիչ պրոպագանդիստական աշխատանք, հարկավոր է ժամանակին հակահարված հասցնել թշնամական գաղափարական դիվերսիաներին»:

Հեղինակը գրում է, որ կապիտալիստական պետությունների արտաքին քաղաքական պրոպագանդայի վրա ծախսվում են հարյուրավոր միլիոններ, դրանով են զբաղված տասնյակհազարավոր մարդիկ: Նա ներկայացրել է Անգլիայում, Ֆրանսիայում, Ճապոնիայում և այլուր գործող այն կազմակերպությունները, որոնք զբաղված են սոցիալիզմի աշխարհի դեմ գաղափարական դիվերսիաներ ծրագրելով ու դրանց արդյունքների ուսումնասիրմամբ. միայն ԱՄՆ-ում այժմ կան մոտ 170 հետազոտական կենտրոններ ու ինստիտուտներ, ԳՖՀ-ում գործում են ավելի քան հարյուր նման կենտրոններ: Օտարերկրյա հետախուզական ծառայություններում իրենց քայքայիչ աշխատանքն են շարունակում նախկին ֆաշիստական հանցագործները, պատժիչները, սպիտակ վտարանդիները և բուրժուական նացիոնա-

լիստների բազմաթիվ կազմակերպություններ:

Հակասովետիզմը և իմպերիալիզմին ծառայելը իրենց գործունեության գլխավոր նպատակն են համարում սոցիալիզմի երդվյալ թշնամիները՝ դաշնակցական թափթփուկները: «Հայկական հարցի» տխրահռչակ դիվանագետներն ամեն ինչ անում են՝ սփյուռքահայությանը խեղաթյուրված ներկայացնելու Սովետական Հայաստանի կյանքը, իրավիճակը ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում:

Իմպերիալիստական պետությունների ղեկավար շրջանները, ինչպես գրում է հեղինակը, «հոգեբանական պատերազմ» են մղում Սովետական Միության և սոցիալիստական համագործակցության երկրների դեմ, ուժեղացնում գաղափարական դիվերսիաները: Այդ պայքարում նրանց հուսալի զենքը մասսայական ինֆորմացիայի միջոցներն են և, մասնավորապես՝ ռադիոն:

Անդրադառնալով պրոպագանդիստական կենտրոնների գործունեությանը, հեղինակը բացահայտում է այդ ծառայությունների նպատակները. այն է՝ կասեցնել սոցիալիստական պրոգրեսիվ գաղափարների ներգործությունը «երրորդ աշխարհի» վրա, սեպ խրել սոցիալիստական համագործակցության երկրների միջև և, ի վերջո, նացիոնալիզմ ու ազգային թշնամանք սերմանել Սովետական Միության ժողովուրդների միջև: Բուրժուական գաղափարախոսները ջանք չեն խնայում խեղաթյուրելու սոցիալիստական հասարակարգի առավելությունները, սոցիալիզմի պայմաններում ազգային հարցի լուծման փորձը և նրա համաշխարհային-պատմական նշանակությունը: Ավելին, նրանք ձգտում են աղավաղված ներկայացնել լենինյան ազգային քաղաքականության տեսությունն ու պրակտիկան, խեղաթյուրել ազգային հարցի վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի հիմնական դրույթները:

Սոցիալիստական երկրների դեմ ուղղված իմպերիալիստական պրոպագանդայի իրականացման գործում առաջնությունը «Ամերիկայի ձայն» կառավարական ռադիոկայանինն է, որը ՅՈՒՍԻԱ-ի կարևոր օղակներից մեկն է:

Հեղինակը միաժամանակ անդրադառնում է այն հանգամանքին, որ բուրժուական պրոպագանդան աղավաղված է ներկայացնում Հելսինկիի խորհրդակցության հիմնական փաստաթղթերը, հատկապես դրա եզրափակիչ ակտը, զրպարտում սոցիալիստական երկրներում տիրող ազատությունն ու դեմոկրատիան, տարածում է այն առասպելը, որ իբր սոցիալիստական երկրներում ոտնահարվում են մարդու իրավունքները:

Ս. Ա. Սիմոնյանի նշված գրքույկը, մերկացնելով իմպերիալիստական ռադիոպրոպագանդայի հերյուրանքները ընդդեմ Սովետական Միության, ներկայացնում է սովետական ժողովրդի կոմունիստական շինարարության բնագավառի հաջողությունները, որոնք վերստին հաստատում են մարքսիզմ-լենինիզմի կենսունակությունն ու ճշմարտացիությունը, սովետական ապրելակերպի ու դեմոկրատիայի առավելությունները:



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04920 Պատվեր 1793 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 15.700 Գինը՝ 20 կոպ.։*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 23/VIII-1978 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Երևանի զարգացումը Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալուց հետո (փաստաթղթերի ժողովածու, 1801— 1917 թթ.): *Հայերեն և ռուսերեն բնագրերով: ԵՊՀ հրատ., 1978:*

Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալու արձագանքները հայ գրականության մեջ: *Ե., ԳԱ հրատ., 1978:*

Հ. ԼԻԼՈՅԱՆ— Սովետական ականավոր դիվանագետը: *Դրվագներ Լ. Մ. Կարախանյանի կյանքից: «Հայաստան» հրատ., 1978:*

Գ. ԲՈՐՅԱՆ— Բաքվի կոմունայի պատմությունից: *Ե., «Լույս» հրատ., 1978:*

Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Արևելահայ մանկավարժական միտքը XIX դարի երկրորդ կեսին: *«Հայաստան» հրատ., 1978:*

Գ. ԽՐԼՈՊՅԱՆ— Հայ սոցիալական իմաստասիրության պատմություն *(հելլենիստական և վաղ ֆեոդալական շրջան): ԵՊՀ հրատ., 1978:*

Ա. ՍՈՒՔԻԱՍՅԱՆ— Կիլիկիայի հայկական պետության և իրավունքի պատմություն *(XI—XIV դարեր): ԵՊՀ հրատ., 1978:*

ՍՏ. ՄԿՐՏՉՅԱՆ— Գիտատեխնիկական առաջընթացի ուղիով: *Ե., «Գիտելիք» հրատ., 1978:*

Ջ. ՂՈՒԿԱՍՅԱՆ— Հայ կին գրողներ: *Ե., «Գիտելիք» հրատ., 1978:*

Վ. ԿՈՒՐԵՂՅԱՆ— Հայկական ՍՍՀ աշխատանքային ռեսուրսների օգտագործումը արդի փուլում: *«Հայաստան» հրատ., 1978:*

Ա. ՀԱՅՐԻՅԱՆ, Լ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ— Ժամանակակից գյուղի հիգիենայի մի քանի հարցեր: *«Հայաստան» հրատ., 1978:*

**Б. ПОНОМАРЕВ—Живое и действенное учение марксизма-ленинизма.** М., Политиздат, 1978.

**М. СОЛОМЕНЦЕВ—Ленинизм—наука революционной борьбы и коммунистического созидания.** М., Политиздат, 1978.

**М. ИСКРОВ—В борьбе за мир и социальный прогресс.** (Из истории участия КПСС в разработке стратегии и тактики международного коммунистического движения). М., Политиздат, 1978.

**Борьба Коммунистической партии Советского Союза против оппортунизма и национализма.** Изд. Ленингр. ун-та, 1978.

**А. ТИТОВ — Борьба партии за ленинскую чистоту национальной политики в период строительства социализма в СССР.** М., «Знание», 1978.

**Б. ПАСТУХОВ—Отчет ЦК ВЛКСМ и задачи комсомола по формированию у молодежи коммунистической сознательности, готовности, воли и умения строить коммунизм.** М., «Молодая гвардия», 1978.

**Пролетарский, социалистический интернационализм.** Традиции, современный опыт, творческое развитие. М., «Мысль», 1978.

**Проблемы комплексного осуществления задач коммунистического воспитания в свете решений XXV съезда КПСС.** М., Политиздат, 1978.

**И. ПРУСАНОВ—Руководство КПСС государственными и общественными организациями.** М., «Знание», 1978.

**К. ЧЕРНЕНКО—Некоторые вопросы творческого развития стиля партийной и государственной работы.** Изд. 2-е, доп. М., Политиздат, 1978.

Գինը՝ 20 կ Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՈՒԼՏՐԱՁԱՅՆԸ ԵՎ ԱՎՏՈԴՈՂԸ

*Օմսկի ավտոդողային արդյունաբերության կոնստրուկտորատեխնոլոգիական գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցները Օմսկի պոլիտեխնիկական ինստիտուտի մի խումբ գիտնականների հետ համատեղ մշակել են ավտոմոբիլային դողերի պատրաստման յուրատեսակ տեխնոլոգիա՝ հիմնված ուլտրաձայնի օգնությամբ կարերի զոդման վրա։ Օմսկ—Ալմա-Աթա—Օմսկ երթուղիով ավտովազքը ցույց տվեց, որ նոր մեթոդով պատրաստված ավտոդողերը սովորականից ավելի դիմացկուն են և ամուր։ Հետազոտական աշխատանքների համար հիմնվել է պրոբլեմային «Ուլտրաձայն» լաբորատորիա, իսկ դրա բազային ձեռնարկություններն են դարձել Մոսկվայի և Օմսկի ավտոդողերի գործարանները։*

## ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԱԿՆԱԲՅՈՒՐԵՂ

*Մոսկվայի աչքի փորձարարական և կլինիկական վիրաբուժության գիտահետազոտական լաբորատորիայի դիրեկտոր, պրոֆեսոր Ս. Ն. Ֆեոդորովը ստեղծել է արհեստական ակնաբյուրեղ։ Պլաստմասսայից պատրաստված փոքր, գրեթե անկշռելի ոսպնյակը դրվում է կատարակտից վնասված ակնաբյուրեղի փոխարեն և... 70—100 տոկոսով վերադարձնում է տեսողությունը։*

*Արհեստական ակնաբյուրեղի արտադրության յուրացմանն օգնել են ինժեներները։ Այն մեծ ճանաչում է ստացել ո՛չ միայն Միությունում, այլև ողջ աշխարհում։ Միայն մեր երկրում վերջին տարիներին արհեստական ակնաբյուրեղների շնորհիվ գրեթե 5.000 մարդ վերադարձել է սիրած մասնագիտությանը և ապրում է լիարժեք կյանքով։*

## ՄԻԱՆԳԱՄԱՅՆ ԵՐԿՈՒ ԾՐԱԳԻՐ

*«Գրունդիգ» (ԳՖՀ) ֆիրման հեռուստատեսության սիրահարներին առաջարկել է հեռուստացույց, որը հնարավորություն է ընձեռում միանգամից դիտելու երկու ծրագիր։*

*Մեկ ծրագիրը հաղորդվում է գունավոր՝ ձայնով, իսկ մյուսը, որ սև-սպիտակ է, պատկերվում է էկրանի ներքևում։ Լրացուցիչ ծրագիրը չի ուղեկցվում ձայնով, պատկերը փոստային բացիկի չափ է, իսկ պարզորոշությունը՝ սովորականից նվազ։*

*Այդ սիստեմը հնարավորություն է ընձեռում հիմնական ծրագիրը դիտելիս միաժամանակ մյուսի վրա հետևել դեպքերի ընթացքին և անհրաժեշտ պահին փոխել ծրագիրը։*

## ՄԱՂՈՎ ԿԱՐԲՅՈՒՐԱՏՈՐ

*Մթնոլորտն արտանետվող գազերից պաշտպանելու նպատակին ուղղված տեխնիկական նորույթների մեջ ուշադրության է արժանացել ինժեներ Ա. Քաոնկի (ԱՄՆ) առաջարկած կարբյուրատորը։ Պարզ ու փոքրաչափ այդ սարքը հնարավորություն է ընձեռում տնտեսելու վառելիքը և նպաստում է դրա լրիվ այրմանը։ Հիմնական գաղտնիքն այն է, որ բենզինը նախ ոչ մեծ ճնշման տակ անցկացվում է բազմաթիվ չափազանց մանր անցքեր ունեցող մաղի միջով, հետո այն մանր կաթիլների տեսքով հանդիպում է օդի հոսքին։ Վառելանյութի խառնուրդը ստանում է համասեռ բնույթ և, այրվելով, պակաս վնասակար օքսիդներ է տալիս։*

## ՄԵԿ ԾԽԱԽՈՏԸ 15 ՐՈՊԵՈՎ ԿՐՃԱՏՈՒՄ Է ԿՅԱՆՔԸ

*ԳՖՀ-ի՝ ծխելու պրոբլեմով զբաղվող հետազոտողները պարզել են, որ ամեն տարի ծխելու հետևանքով առաջացած կամ դրա պատճառով բարդացած հիվանդություններից երկրում մահանում է 140 հազար մարդ։ Մինչև այսօր ծխախոտի ծխում հայտնաբերվել է մոտ 600 վնասակար նյութ։ Մեկ* սմ3 *ծուխը պարունակում է մրի 200—500 միլիոն մասնիկ։ Օրական 20 ծխախոտ ծխող մարդու թոքերում 20 տարում գոյանում է 6* կգ *մուր։ Նույն ժամանակարնթացքում ծխողի հետ ապրող և աշխատող մարդկանց թոքերում ևս հավաքվում է մի քանի* կգ *մուր։*